## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելի- ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակություններից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։



ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԴԻՄՈՒՄԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆԸ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Թանկագին ընկերնե՛ր։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը ամփոփեց հնգամյակի երրորդ տարվա արդյունքները, քննարկեց առաջիկա տարվա պլանի նախագիծը և հավանություն տվեց դրան։ ՍՍՀ Միության Գերագույն սովետը ընդունեց օրենքներ ժողովրդական տնտեսության զարգացման 1974 թվականի պետական պլանի և բյուջեի մասին։

Այժմ, երբ սահմանված են տնտեսական, սոցիալական ու կուլտուրական շինարարության հերթական խնդիրները, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն դիմում է կուսակցությանը, սովետական ժողովրդին՝ կոմունիստներին ու կոմերիտականներին, բոլոր բանվորներին ու բանվորուհիներին, կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, արդյունաբերության ու գյուղատնտեսության մասնագետներին, գիտության ու կուլտուրայի գործիչներին՝ կոչ անելով հնգամյակի չորրորդ տարին նշանավորել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարման նոր հաջողություններով։

1973 թվականը սովետական ժողովրդի հերոսական գործերի տարեգրության մեջ կմտնի որպես հարվածային աշխատանքի տարի։ Այն նշանավորվեց աշխատանքային բարձր պաթոսով, մեծ ու բեղմնավոր աշխատանքի տարի եղավ կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում։

1973 թվականը նշանավորվեց համաշխարհային ասպարեզում կատարված դրական կարևոր տեղաշարժերով, մեր լենինյան կուսակցության, սոցիալիստական հայրենիքի միջազգային հեղինակության հետագա բարձրացմամբ։ Խաղաղության ծրագրի գաղափարները, ՍՄԿԿ-ի միջազգային ակտիվ, ձեռներեց քաղաքականությունը, որն իրականացվում է եղբայրական երկրների հետ սերտ միասնությամբ, ավելի ամրապնդեցին սոցիալիստական համագործակցության համախմբվածությունը, բարերար ներգործեցին մոլորակի ամբողջ քաղաքական մթնոլորտի վրա։ Առկա է միջազգային հարաբերությունների զարգացման շրջադարձ՝ լարվածությունից և «սառը պատերազմից» դեպի լարվածության թուլացում և սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ համագործակցություն։

Սովետական մարդիկ, ամբողջ առաջադեմ մարդկությունը բարձր են գնահատում խաղաղության և ժողովուրդների անվտանգության գործում այն





հսկայական ավանդը, որը մուծում են մեր լենինյան կուսակցությունը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, անձամբ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը, ջերմորեն պաշտպանում ու հավանություն են տալիս ՍՄԿԿ-ի ու սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականությանը։

Կենտրոնական կոմիտեն, հենվելով այդ աջակցության վրա, այսուհետև ևս հետևողականորեն, հաստատակամությամբ ու եռանդուն կերպով պայքար կմղի ժողովուրդների անվտանգության ու միջազգային համագործակցության համար, խաղաղության, ազատության և սոցիալական պրոգրեսի հաղթանակի համար։

Սովետական Միության արտաքին քաղաքականության հաջողությունները միջազգային բարենպաստ պայմաններ են ստեղծում կոմունիստական շինարարության համար, սովետական ժողովրդի խաղաղ ստեղծարար աշխատանքի համար։

Ընկերնե՛ր։

1973 թվականին ձեռք բերվածը լիովին գնահատելու համար վերհիշենք, թե որքան դժվարին էր այդ տարվա սկիզբը։ 1972 թվականի տարերային աղետները քիչ վնաս չհասցրին գյուղատնտեսությանը, բարդացրին ողջ էկոնոմիկայի վիճակը, որոշակի դժվարություններ հարուցեցին հնգամյակի կատարման համար։ Այդ կապակցությամբ պահանջվեց ոչ միայն կատարել 1973 թվականի հիմնական պլանային առաջադրանքները, այլև զգալիորեն գերազանցել դրանք։ Այսպիսին էր դժվարին խնդիրը։ Դրա լուծման համար սովետական մարդիկ շատ բան արեցին և շատ բանի հասան։

**Բանվոր դասակարգի, ինժեներա-տեխնիկական աշխատողների անձնվեր աշխատանքով, գիտության համագործակցությամբ ապահովվեց սովետական ինդուստրիայի հետագա զարգացումը։** Արդյունաբերական արտադրանքի ծավալը, տարեկան առաջադրանքով նախատեսված 5,8 տոկոսի փոխարեն ավելացավ 7,3 տոկոսով։ Պլանից դուրս թողարկվեց ավելի քան 7 միլիարդ ռուբլու արտադրանք։ Արտադրվել է ավելի քան 915 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, արդյունահանվեց 420 միլիոն տոննա նավթ, 670 միլիոն տոննա ածուխ, արտադրվեց 131 միլիոն տոննա պողպատ, 91 միլիոն տոննա գլանվածք, 72 միլիոն տոննա հանքային պարարտանյութ։ Կարևոր է նշել, որ արդյունաբերական արտադրության ամբողջ աճի ավելի քան չորս հինգերորդականը ստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Գերակատարված է բեռնաշրջանառության պլանը։

Աճում է արտադրության տեխնիկական մակարդակը, կատարելագործվում են նրա տեխնոլոգիան ու կազմակերպումը։ Ավելացվում է առաջավոր գիտության ու տեխնիկայի պահանջներին համապատասխանող մեքենաների, սարքավորումների, սարքերի, նյութերի թողարկումը։

**Շինարարների, մոնտաժողների և շահագործայինների աշխատանքային ջանքերով** կառուցվել ու գործարկվել են իններորդ հնգամյակի բազմաթիվ կարևորագույն օբյեկտներ։ Դրանց թվում են Սամոտլոր-Ալմետևսկ մագիստրալային նավթամուղը՝ ավելի քան երկու հազար կիլոմետր երկարությամբ, «Ազովստալ» մետալուրգիական գործարանի հաստաթերթ գլանաստանը, Օրսկ-Խալիլովսկի կոմբինատի դոմնային վառարանը, հանքային պարարտանյութերի արտադրության կոմպլեքսներ «Ուրալկալիում» կոմբինատում, Պավ-

լողարի տրակտորի գործարանի, Դոնեցկի բամբակե գործվածքների կոմբինատի նոր կարողությունները, Նովոգորկովսկի սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատների գործարանը: Մեկ տարում շահագործման են հանձնվել նոր ձեռնարկություններ, արտադրամասեր, ֆերմաներ, մելիորատիվ սիստեմներ, կառուցվել են բնակելի տներ, դպրոցներ, ակումբներ, հիվանդանոցներ և այլ օբյեկտներ ավելի քան 90 միլիարդ ռուբլու արժողությամբ:

**Մեծ հաղթանակով պսակվեցին գյուղատնտեսության աշխատավորների հերոսական ջանքերը:** 1973 թվականը դարձավ հացի համար մղված հիրավի համաժողովրդական ճակատամարտի տարի: Կոլտնտեսականների, սովխոզների աշխատողների հետ ուս-ուսի տված, այդ ճակատամարտին ակտիվորեն մասնակցում էին արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի բանվորները, սովետական բանակի ռազմիկները, ուսանողները, քաղաքների և բանվորական ավանների բնակիչները:

Ինչպես յուրաքանչյուր գործում, հանրապետությունները, երկրամասերն ու մարզերը իրար եղբայրական օգնություն էին ցույց տալիս բերքահավաքի տեխնիկայով, տրանսպորտով, մեխանիզատորական կադրերով: Աշխատավորների կոլեկտիվների նախաձեռնությամբ գյուղի համար լրացուցիչ կերպով պատրաստվեցին տրակտորներ, կոմբայններ, տրանսպորտային միջոցներ, պահեստամասեր, պլանից ավելի արտադրվեց ավելի քան մեկ միլիոն տոննա հանքային պարարտանյութ: Դրանում վերստին դրսևորվեցին բանվոր դասակարգի և գյուղացիության անխախտ դաշինքի հզոր ուժը, մեր ժողովուրդների մեծ բարեկամությունը:

Արդյունքը եղավ ռեկորդային բերքը: Հացահատիկի համախառն բերքը կազմեց ավելի քան 222 միլիոն տոննա: Պետության շտեմարանները լցվեց ավելի քան 90 միլիոն տոննա, կամ 5,5 միլիարդ փութ հացահատիկ: Հացահատիկի գնումների ժողովրդատնտեսական պլանը կատարեցին բոլոր միութենական հանրապետությունները:

Խոշոր ավանդ մուծեցին Ռուսաստանի Ֆեդերացիայի դաշտերի աշխատավորները, նրանք հայրենիքին տվեցին 3 միլիարդ 180 միլիոն փութ հացահատիկ: Առատ հացով ուրախացրին Ուկրաինայի հողագործները, որոնք պատվով կատարեցին իրենց խոսքը՝ պետությանը վաճառեցին ավելի քան մեկ միլիարդ փութ: Խոպան հողերում 20-րդ հունձը արժանավայել ավարտեց Ղազախստանը. երկիրը հանրապետության կոլտնտեսություններից ու սովխոզներից ստացավ ավելի քան մեկ միլիարդ փութ հացահատիկ:

Իրենց պարտավորությունները հաջողությամբ կատարեցին երկրի բամբակագործները: Մթերվեց ավելի քան 7,6 միլիոն տոննա «սպիտակ ոսկի»: Ուզբեկստանի կոլտնտեսություններն ու սովխոզները տվեցին 4,9 միլիոն տոննա, Թուրքմենիայինը՝ ավելի քան մեկ միլիոն տոննա բամբակ: Անցյալ տարիների համեմատությամբ շատ ավելի է հավաքվել ու մթերվել կարտոֆիլ, բանջարեղեն, թեյ և հողագործության այլ մթերքներ:

Աշխատանքային արիություն ցուցաբերեցին անասնապահության աշխատողները: Չնայած անցյալ ձմեռման բացառիկ բարդ պայմաններին, նրանք թույլ չտվեցին անկում, ապահովեցին արտադրության աճը: Կոլտնտեսություններում ու սովխոզներում ավելացել է անասունների և թռչունների բոլոր տեսակների գլխաքանակը: Կատարվել է անասնապահական մթերքների գնումների պլանը:



Նոր հաջողությունների հասան գիտության աշխատողները, սովետական գիտնականները: Նրանց անձնվեր ստեղծագործական աշխատանքը բարձր է գնահատում սովետական ժողովուրդը: Գիտության նվաճումները նպաստում են արտադրության հետագա կատարելագործմանն ու ինտենսիվացմանը, փոփոխություններ են առաջ բերում նրա կազմակերպման ու տեխնոլոգիայի ասպարեզում, ի հայտ են բերում գիտատեխնիկական առաջընթացի նոր ուղիներ ու հնարավորություններ, ծառայում կոմունիզմի կառուցման գործին:

**Այն ամենը մեր երկրում, ինչ ստեղծվել է ժողովրդի աշխատանքով, պատկանում է ժողովրդին:** Արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության աճը հնարավորություն ընձեռեց իրագործելու սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման մի շարք կարևոր միջոցառումներ: Ավելացան բնակչության ռեալ եկամուտները, բանվորների ու ծառայողների աշխատավարձը, կոլտնտեսականների աշխատավարձը, աճեցին սպառման հասարակական ֆոնդերը: Հնգամյակի երեք տարում կառուցվել ու գործարկվել է ավելի քան 320 միլիոն քառակուսի մետր ընդհանուր բնակելի տարածություն, ավելի քան 34 միլիոն մարդ բնակարանամուտ է նշել: Միջոցներ են ձեռնարկվել ժողովրդական կրթության սիստեմը կատարելագործելու համար, մշտապես բարելավվում է բժշկական սպասարկումը, ընդլայնվում է սպասարկման ոլորտը, աճել է ժողովրդական սպառման ապրանքների վաճառքը, բարձրացվում է դրանց որակը: Սովետական մարդիկ զգում են, թե ինչպես են լավանում նրանց աշխատանքի և կյանքի պայմանները:

Հնգամյակի երրորդ տարվա տնտեսական և կուլտուրական շինարարության հաջողությունները սոցիալիստական հասարակարգի անվիճելի առավելությունների և կենսական ուժի նոր ապացույցն են, ամբողջ սովետական ժողովրդի ստեղծագործական աշխատանքի արդյունքը, մեր լենինյան կուսակցության համակողմանի գործունեության, սովետների, արհմիությունների, կոմերիտմիության ակտիվ աշխատանքի արգասիքը:

**Այն ամենը, ինչ այսօր ձեռք է բերված, թանկագին ընկերներ, հիրավի, ձեր ոսկե ձեռքերի, ձեր որոնող մտքի և ստեղծագործական ջանքերի արգասիքն է:** Ածխահանքերում և նավթային աշտարակների վրա, գլանահաստոցների մոտ, ֆաբրիկաներում ու գործարաններում, ինստիտուտներում ու լաբորատորիաներում, դաշտերում ու ֆերմաներում՝ յուրաքանչյուր քաղաքում ու գյուղում սովետական մարդիկ անձնվիրաբար աշխատեցին պլանային առաջադրանքների, ստանձնած պարտավորությունների և հանդիպական պլանների կատարման համար, ամրապնդելով սոցիալիստական հայրենիքի հզորությունը:

Սոցիալիստական մրցության հուժկու հոսանքը երկնեց նոր, հրաշալի նախաձեռնություններ, հայտնվեցին աշխատանքի հազարավոր ու հազարավոր հարվածայիններ և հերոսներ: Ժողովրդի մեջ նրանց իրավամբ անվանում են նորարարներ, առաջավորներ: Նրանք նոր տեխնիկային տիրապետած մարդիկ են, նրանք ցույց են տալիս բարձր արտադրողական աշխատանքի նմուշներ, իրենց օրինակով փոխում հնացած պատկերացումները արտադրական նորմաների, արտադրության կազմակերպման ձևերի ու մեթոդների մասին: Նրանց նվաճումները ոգեշնչման աղբյուր են ստեղծարար աշխատանքում նոր մեծագործությունների և մասսայական հերոսության համար:

Կուսակցությունը և սովետական կառավարությունը բարձր գնահատեցին առաջավոր կոլեկտիվների, երկրի լավագույն մարդկանց ծառայությունները: Արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի առաջավորների մի մեծ խումբ պարգևատրվել է շքանշաններով ու մեդալներով, նրանցից շատերին շնորհված է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում: Փա՛ռք ու պատիվ մեր հիանալի աշխատավորներին:

Երկիրը իրավամբ հպարտանում է արտադրության նորարարների և առաջավոր կոլեկտիվների հաղթանակներով: Դրա հետ մեկտեղ, պատշաճը հատուցելով հաջողություններին, մենք չենք կարող հանգստանալ ձեռք բերածով: Ամենայն անկեղծությամբ պետք է ասել, որ տնտեսության զարգացման գործում դեռևս կան մի շարք թերություններ և չլուծված պրոբլեմներ: Ոչ քիչ թվով ձեռնարկություններ, կառույցներ, կոլտնտեսություններ և սովխոզներ չեն կատարում պլանային առաջադրանքները, որը նվազեցնում է ոչ միայն ետ մնացողների տնտեսավարման ցուցանիշները, այլև շոշափում տասնյակ, երբեմն էլ հարյուրավոր այլ հարակից կոլեկտիվների աշխատանքը, բացասաբար անդրադառնում ամբողջ ճյուղերի աշխատանքի վրա: Լինում են հումքի և նյութերի կորուստներ, չեն վերացվել աշխատանքային կարգապահության խախտումները, դեռևս մեծ է աշխատուժի հոսունությունը: Հաճախ ձգձգվում են արտադրակարողությունների գործարկումն ու յուրացումը, անբավարար են օգտագործվում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները: Մի խոսքով, մենք դեռ շատ բան պետք է անենք, որպեսզի մեզանում չլինեն ետ մնացող ձեռնարկություններ ու աշխատամասեր, որպեսզի բոլոր աշխատանքային կոլեկտիվների աշխատանքը հասցվի սոցիալիստական տնտեսավարման նոր, ավելի բարձր մակարդակի:

Թանկագին ընկերնե՛ր:

1973 թվականի դրական արդյունքները անհրաժեշտ պայմաններ են ստեղծում հնգամյակի չորրորդ տարվա առավել հաջող աշխատանքի համար: Մենք պետք է ապահովենք էկոնոմիկայի աճի արագ տեմպեր, էապես բարելավենք աշխատանքի բոլոր որակական ցուցանիշները, բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը և հանրային արտադրության արդյունավետությունը:

**1974 թվականի պլանի կատարումն ու գերակատարումը որոշիչ նշանակություն կունենան ոչ միայն այս հնգամյակի հաջող ավարտման համար, այլև կարևոր քայլ կլինեն եկող հնգամյակում տնտեսական պոտենցիալի հետագա աճի և ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման ամուր հիմք ստեղծելու համար:**

Նախատեսվում է 1974 թվականին ազգային եկամուտը ավելացնել 20 միլիարդ ռուբլով, իսկ արդյունաբերական արտադրության ծավալը՝ գրեթե 31 միլիարդ ռուբլով, կամ 1973 թվականի համեմատությամբ՝ 6,8 տոկոսով: Բացարձակ ցուցանիշներով դա գերազանցում է հնգամյակի առաջին երեք տարվա տարեկան միջին աճը: Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը նախատեսված է ավելացնել 7 միլիարդ ռուբլով, կամ 7,3 տոկոսով: Հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին պետք է ստացվի ազգային եկամտի աճի 87 տոկոսը:

Ավելի լրիվ կսկսեն բավարարվել աշխատավորների նյութական և հոգևոր պահանջմունքները, կբարելավվեն միլիոնավոր մարդկանց բնակարա-



նային պայմանները: Առավել կզարգանան գիտությունը, ժողովրդական կըրթությունը, առողջապահությունը, ինչպես նաև բնակչության սոցիալ-կուլտուրական և կենցաղային սպասարկման ամբողջ ոլորտը: Զգալիորեն կընդլայնվի ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը:

1974 թվականի համար ընդունված պետական պլանի առաջադրանքները լարված են և խիստ պատասխանատու: Բայց նույնիսկ ամենամանրամասն պլանը չի կարող լիովին հաշվի առնել սոցիալիստական էկոնոմիկայի այն բոլոր բազմահարուստ ռեզերվները, որոնք կարող են լրացուցիչ կերպով հայտնաբերվել և օգտագործվել աշխատանքի նկատմամբ ցուցաբերվող ստեղծագործական մոտեցմամբ, նախաձեռնության լայն զարգացմամբ, յուրաքանչյուր կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատողի կազմակերպվածության ու պատասխանատվության բարձրացմամբ:

Եթե մենք վաղը ավելի լավ աշխատենք, քան այսօր, ապա մեր պլանները ոչ միայն կկատարվեն, այլև կգերակատարվեն: Տարվա առաջին իսկ օրերից հստակ ու ճշգրիտ աշխատանքը, ներթափոխային, ամսական և եռամսյակային պլանային առաջադրանքների կատարումն ու գերակատարումը պետք է դառնան ամեն մի կոլեկտիվի, ամեն մի աշխատողի օրենքը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն դիմում է ամբողջ կուսակցությանը, ամբողջ սովետական ժողովրդին՝ կոչ անելով 1974 թվականին բազմապատկել աշխատանքային ջանքերը ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների հաջող կենսագործման պայքարում, պլանային առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար, ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը հետևյալ լոզունգով՝ **տալ ավելի շատ և լավորակ արտադրանք, ավելի նվազ ծախսումներով:**

Այժմ երկրում առաջավոր ձեռնարկությունների նախաձեռնությամբ ընդլայնվում է հանդիպական պլաններ ստանձնելու շարժումը: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հսկայական նշանակություն է տալիս այդ նախաձեռնությանը: Յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում ներքին ռեզերվների մոբիլիզացմամբ կարելի է զգալիորեն ավելացնել արտադրանքի թողարկումը և բարելավել դրա որակը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատողներին կոչ է անում սոցիալիստական մրցության մեջ առանձնահատուկ ուշադրություն կենտրոնացնել **աշխատանքի արտադրողականության աճի արագացման, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման վրա:**

Պայքարել արտադրության արդյունավետության բարձրացման համար՝ նշանակում է ամենուրեք ու եռանդուն կերպով արմատավորել նորագույն տեխնիկան, առաջադիմական տեխնոլոգիական պրոցեսներն ու նախագծային լուծումները: Այն ամենն նորը, ինչ ծնունդ է առնում ինստիտուտներում, կոնստրուկտորական բյուրոներում, գործարաններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, ինչ ստեղծվում է նորարարների ու գյուտարարների կողմից, պետք է արագորեն արմատավորվի հանրային արտադրության մեջ: Հարկավոր է եռանդուն կերպով հասնել այն բանին, որ սովետական ձեռնարկությունների արտադրանքն իր որակով և տեխնիկական մակարդակով ոչ միայն չզիջի, այլև գերազանցի արտասահմանյան լավագույն նմուշներին:

Պայքարել արտադրության արդյունավետության բարձրացման համար՝

նշանակում է առավելագույն չափով օգտագործել բանող ագրեգատները, մեքենաները, մեխանիզմները, խիստ կրճատել դրանց պարապուրդները, խնայել աշխատաժամանակի յուրաքանչյուր ժամը, յուրաքանչյուր րոպեն, անշեղորեն ամրապնդել աշխատանքային կարգապահությունը:

Պայքարել արտադրության արդյունավետության բարձրացման համար՝ նշանակում է ավելի արագ գործարկել և յուրացնել նոր արտադրությունների նախագծային կարողությունները, բարձրացնել դրանց ֆոնդահատուցումը:

Պայքարել արտադրության արդյունավետության բարձրացման համար՝ նշանակում է իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, նվազեցնել նրա նյութատարությունը, խստիվ կիրառել խնայողության ռեժիմը, խնամքով և խնայողաբար ծախսել նյութերը, հատկապես մետաղը, վառելիքը, էներգիան, կապիտալ ներդրումների յուրաքանչյուր ռուբլին, ավելացնել տնտեսված նյութական ռեսուրսներից արտապլանային արտադրանքի թողարկումը:

Մեր առջև կանգնած խնդիրների լուծումը պահանջում է ավելի բարձր մակարդակի հասցնել էկոնոմիկայի ղեկավարման ամբողջ աշխատանքը: Մինիստրություններն ու գերատեսչությունները, պլանային, մատակարարող և ֆինանսական մարմինները պետք է բոլոր անհրաժեշտ պայմաններն ստեղծեն, որպեսզի աշխատավորները կատարեն հանդիպական պլանները, ընդունած սոցիալիստական պարտավորությունները: Նրանք կոչված են ապահովելու կառավարման սիստեմի բարելավումը, աշխատանքի պլանավորման, նրա կազմակերպման ու արտադրության տնտեսական խթանման կատարելագործումը բոլոր օղակներում:

Գործի հաջողությանը կնպաստեն աշխատավորների ավելի լայն ներգրավումը էկոնոմիկայի կառավարման գործում, կադրերի պատասխանատվության և նրանց նկատմամբ պահանջկոտության բարձրացումը:

Ընկերնե՛ր:

Այն ամենը, ինչ մենք ունենք այսօր և ինչին կհասնենք վաղը, կախված է հենց մեզանից, ստեղծագործաբար աշխատելու՝ յուրաքանչյուր սովետական մարդու կարողությունից, բարձր գիտակցականությունից, պրոֆեսիոնալ պատրաստականությունից, պատասխանատվության զգացումից և կարգապահությունից:

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ սովետական հասարակության առաջատար ուժը հանդիսացող մեր հերոսական բանվոր դասակարգը, ինժեներները, տեխնիկներն ու կոնստրուկտորները, ինդուստրիայի բոլոր աշխատողները** այսուհետև ևս կընթանան նախատեսված պլանները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության ավանգարդում, կոնկրետ գործերի կվերածեն իրենց ուժերը, գիտելիքները, փորձը և կրկին, ինչպես միշտ, ցույց կտան բարձր գիտակցականության, կազմակերպվածության ու գործարարության օրինակ:

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահ է, որ մեր պանծալի կոլտնտեսային գյուղացիությունը, սովխոզների աշխատողները, գյուղատնտեսության մասնագետները** կամրապնդեն ձեռք բերած հաջողությունները և 1974 թվականին հայրենիքին կուրախացնեն լավ բերքով, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ու մթերումների ավելացմամբ, առավելագույն արդյունավետությամբ կօգտագործեն հողի յուրաքանչյուր հեկտարը, յուրաքան-



չյուր մեքենան, կերի յուրաքանչյուր ցենտները, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննան, բանվոր դասակարգի հետ մեկտեղ նոր քայլ կկատարեն գյուղատնտեսության հետագա ինտենսիվացման և նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդման ուղիով:

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ մեր սովետական մտավորականությունը** ավելի մեծ եռանդով, հաստատակամությամբ կզարգացնի գիտությունը, տեխնիկան ու կուլտուրան, կհասնի գիտական աշխատանքների արդյունավետության բարձրացման, ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական կարևորագույն նվաճումների շուտափույթ արմատավորման, կստեղծի սովետական մարդկանց կյանքը հարստացնող հոգևոր արժեքներ:

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահ է, որ մեր սովետական կանայք,** որոնք իրենց անձնվեր աշխատանքով և երեխաների դաստիարակության նկատմամբ ամենօրյա հոգատարությամբ հասարակական բարձր ճանաչման են արժանացել, ծանրակշիռ ավանդ կմուծեն հնգամյակի չորրորդ տարվա պլանների հաջող կատարման համար մղվող համաժողովրդական պայքարում:

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ մեր հիանալի երիտասարդությունը** նոր ուժով կապացուցի իր հավատարմությունը լենինյան պատգամներին, կոմունիստական կուսակցության գործին, հնգամյակի չորրորդ տարին կնշանավորի հարվածային աշխատանքով և գերազանց ուսմամբ: Հայրենիքը հավատում է երիտասարդ սերնդին, նրա աշխատասիրությանը, հաստատակամությանն ու անձնվիրությանը:

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն դիմում է կուսակցական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին՝ կոչ անելով** գլխավորել հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքների հաջող կատարման համար սովետական մարդկանց հզոր շարժումը, ավելի լրիվ օգտագործել կուտակված փորձը, կատարելագործել իրենց գործունեությունը, միշտ լինել առջևում, լինել այնտեղ, որտեղ ավելի դժվար է, ժողովրդին, նրա շահերի և երջանկության համար մղվող պայքարին նվիրաբերել իրենց գիտելիքներն ու ունակությունները: Սովետների, արհմիությունների և կոմերիտմիության հետ միասին մարտականորեն ձեռնամուխ լինել ծառացած խնդիրների պրակտիկ լուծմանը, տարվա տնտեսական պլանները հուսալիորեն ամրապնդել կազմակերպչական, քաղաքական և գաղափարա-դաստիարակչական աշխատանքով: Լավագույն կոլեկտիվները, արտադրության առաջավորներն ու նորարարները, մրցության հաղթողները պետք է արժանանան համաժողովրդական պատվի ու հարգանքի, խրախուսվեն նյութապես և բարոյապես:

Առջևում բարդ ու պատասխանատու շատ գործեր կան: Լենինյան կուսակցությունը խորապես հավատում է մեր ժողովրդի ստեղծագործական մեծ եռանդին, որն ունակ է իր նպատակի ճանապարհին հաղթահարելու ամեն.

տեսակ դժվարություններ: Իսկ մեր նպատակները ազնիվ են ու մարդասիրական— հայրենիքի բարգավաճում, բոլոր սովետական մարդկանց բարօրություն ու երջանկություն:

Սոցիալական ու տնտեսական մեր նոր նվաճումները հսկայական ինտերնացիոնալ նշանակություն կունենան, ավելի կմեծացնեն սոցիալիզմի ձգողական ուժը, կնպաստեն Սովետների երկրի միջազգային հեղինակության հետագա բարձրացմանը: Կոմունիստական հասարակարգի հաջող կառուցումը սովետական ժողովրդի արժանի ավանդն է սոցիալիստական համագործակցության ամրապնդման, խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրակայման, մարդկության սոցիալական առաջադիմության գործում:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն համոզված է, որ սովետական մարդիկ ավելի կբարձրացնեն համաժողովրդական սոցիալիստական մրցության դրոշը և իրենց անձնվեր, հարվածային աշխատանքով ժամկետից շուտ կկատարեն 1974 թվականի պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները:

Դեպի աշխատանքային նոր հաղթանակնե՛ր, թանկագին ընկերներ, դեպի աշխատանքային նոր սխրանքներ, հանուն մեր հայրենիքի հզորության հետագա ամրապնդման, հանուն մեր երկրում կոմունիստական շինարարության:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ
ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

# ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴԻ ՊԱՏԳԱՄՆԵՐՈՎ

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 50-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻ ԱՌԹԻՎ

## ՍՄԿԿ ՊԱՅՔԱՐԸ ԼԵՆԻՆԻԶՄԻ ԱՆԱՂԱՐՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Բ. Հ. ԱՆԱՆԻԿՅԱՆ

*Մեր անհանգիստ ու դինամիկ դարաշրջանում, լենինիզմի հարաճուն ներգործությամբ, աշխարհն ապրում է հեղափոխական նորացման մի անկասելի պրոցես։ «Լենինիզմը,— ասված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի, գաղութատիրության խորտակման և ազգային-ազատագրական շարժումների հաղթանակի դարաշրջանի, մարդկության՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու և կոմունիստական հասարակարգ կառուցելու դարաշրջանի մարքսիզմն է»։*

*Այստեղ տրված է լենինիզմի խոր, գիտական, բազմակողմանի բնութագրությունը, նրա օրգանական միասնությունը մարքսիզմի հետ։*

*Լենինը պատմական ասպարեզ իջավ այն ժամանակ, երբ կապիտալիզմը թևակոխում էր զարգացման վերջին՝ իմպերիալիզմի փուլը, երբ մոտենում էր հեղափոխական փոթորիկների ու սոցիալական ցնցումների դարաշրջանը։ Մարքսիզմի տեսության հիման վրա, պաշտպանելով այն ամեն կարգի թշնամիների ու ռևիզիոնիստների հարձակումներից, նոր պայմաններին համապատասխան զարգացնելով աշխարհը վերափոխող այդ ուսմունքը, Լենինը խորապես արտահայտեց դարաշրջանի պահանջմունքները, պատասխան տվեց պատմական զարգացման օբյեկտիվ ընթացքով հասունացած և անհրաժեշտաբար լուծում պահանջող խնդիրներին։*

*Անցած ժամանակաշրջանի հեղափոխական պրակտիկան լենինիզմի ճըշմարտացիության ու հաղթանակի հաստատումը եղավ։ Իր համապարփակության, հասարակական զարգացման տենդենցները ճշտորեն կանխատեսելու, ապագայի խորքը թափանցելու կարողության, իր խոր գիտականության ու կենսունակության շնորհիվ, այսօր հաղթականորեն ընդլայնվում է լենինիզմի ներ-*

գործունեության ոլորտը, իր մեջ ընդգրկելով այն ողջ լավագույնը, ինչ երկնել էր մարդկության առաջավոր միտքը դարերի ընթացքում՝ անլուր տանջանքների ու զոհերի գնով։ Լենինի մեծ ուսմունքի ճշմարտացիությունը հաստատված է կյանքով, փոթորկալից XX դարի աշխարհացունց իրադարձություններով, քաղաքական զարգացման ամբողջ փորձով։

* * *

Լենինիզմը եղել և մնում է բովանդակ աշխարհի առաջադեմ մարդկության հաղթական դրոշը՝ խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարում, ՍՄԿԿ ու սովետական ժողովրդի հուսալի կողմնացույցը՝ մեր երկրում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում։ ՍՄԿԿ-ն, որպես Լենինի կուսակցություն, իր գործունեության բոլոր փուլերում աչքի լույսի պես պահպանել է լենինիզմի անաղարտությունը, անհաշտ ու անողոք պայքար մղել նրա նկատմամբ բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի ու օպորտունիզմի ամեն կարգի ոտնձգությունների, այդ ուսմունքից կատարված բոլոր շեղումների դեմ։

Կռվով է նվաճվել հեղափոխական ուսմունքների ամեն մի առաջընթաց։ Մարքսիզմ-լենինիզմը, որպես աշխարհը վերափոխող հեղափոխական ուսմունք, իր ուղին հարթեց, ձևավորվեց ու ամրապնդվեց հանուն գիտական կոմունիզմի, բուրժուական գաղափարախոսության, նարոդնիկության, «լեգալ մարքսիզմի», «էկոնոմիզմի», սուբյեկտիվ իդեալիզմի, ռևիզիոնիզմի ու օպորտունիզմի, դոգմատիզմի ու աղանդավորության դեմ մղված անհաշտ պայքարում։

Երկու հակադիր գաղափարախոսությունների՝ մարքսիզմ-լենինիզմի և բուրժուական գաղափարախոսության պայքարի պայմաններն արմատապես փոխվեցին Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո։ Սոցիալիզմի, կոմունիզմի պրոբլեմները տեսական ոլորտից անցան միլիոնների պրակտիկ գործունեության բնագավառ։ Դրան զուգընթաց հակակոմունիզմը, որը բուրժուական ու մանրբուրժուական գաղափարախոսության ռեակցիան էր գիտական կոմունիզմի նկատմամբ, վերաճեց հակասովետիզմի, որն այլ բան չէ, քան աշխարհում առաջին սոցիալիստական տերության դեմ ուղղված համաշխարհային ռեակցիայի կազմակերպված շարժում։ Հոկտեմբերից հետո միջազգային իմպերիալիզմը մեր երկրի, իսկ ապա նաև սոցիալիստական սիստեմի դեմ սանձազերծեց գաղափարական մի անդադրում պատերազմ՝ օգտագործելով ամենանրբին եղանակներ ու տեխնիկական հզոր միջոցներ։

Լենինից հետո, անցած կես դարում, մեր կուսակցությունը հարկադրված էր ո՛չ միայն մահու և կենաց կռիվ մղել ահավոր քայքայվածության, հետամնացության, աղքատության ու խավարի դեմ, տիտանական ջանքեր գործադրել սոցիալիզմի կառուցման լենինյան ծրագրի իրագործման համար, այլև պաշտպանել լենինիզմի անաղարտությունը, հարվածն ուղղել բոլոր նրանց դեմ, ովքեր փորձում էին կուսակցությանն ու ժողովրդին շեղել լենինյան ուղուց։ Այդ բնագավառում ՍՄԿԿ պայքարի կարևոր էտապն էր տրոցկիզմի գաղափարական ու քաղաքական ջախջախումը։

Տրոցկիզմը, հատկապես Լենինի մահից հետո, աշխուժացրեց իր թշնամական գործունեությունը և բացահայտ հանդես եկավ սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի դեմ։ Այն աշխատավորական մասսաների շրջանում թե-



րահավատություն էր սերմանում բանվոր դասակարգի ուժերի նկատմամբ, կանգնած էր Լենինի կողմից արդեն խորտակիչ հարված ստացած այն դիրքերում, թե առանց նախապես արևմուտքում պրոլետարական հեղափոխության հաղթանակի անկարելի է սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։ Տրոցկիզմը ճգնում էր ժխտել մեր երկրում սոցիալիզմի կառուցման նշանակությունը համաշխարհային հեղափոխական շարժման համար։

Լենինիզմը միշտ էլ անողոք է եղել ուլտրահեղափոխական, ավանտյուրիստական այն թեքումների նկատմամբ, որոնք պահանջում են հեղափոխությունների «ներմուծում» կամ «արտահանում»։ Քողարկվելով «ձախ» ծայրահեղ հեղափոխական ֆրազներով, լիովին հեռանալով լենինիզմից ու հակադրվելով նրան, տրոցկիստները փորձում էին հեղափոխական շարժման գիտականորեն հիմնավորված մարքս-լենինյան գիծը նենգափոխել բացահայտ ավանտյուրիզմով։ Նրանք աշխատում էին մեր կուսակցությանն ու ժողովրդին պարտադրել մյուս երկրներում հեղափոխությունները արհեստականորեն «առաջ հրելու» ավանտյուրիստական կուրսը․ պահանջում էին երկրի ներսում անցնել մասսաների ղեկավարման հակադեմոկրատական, ռազմականացված մեթոդների, ժխտում էին դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը։ պահանջում էին կուսակցության մեջ ֆրակցիոն պայքարի «ազատություն», դրանով իսկ գլորվելով հակասովետիզմի ճահիճը։

Կուսակցությունը վճռական հակահարված տվեց տրոցկիստների մանրբուրժուական ավանտյուրիզմին, լենինիզմը տրոցկիզմով նենգափոխելու՝ Տրոցկու և նրա կողմնակիցների փորձերին և երկիրն ու ժողովուրդը վստահորեն տարավ լենինյան ուղիով։ Այդ առումով պակաս կարևոր չէր նաև աջ օպորտունիզմի դեմ մղվող պայքարը, օպորտունիստներ, որոնք փորձում էին ամլացնել լենինյան ուսմունքը, պաշտպանում էին գյուղի շահագործող, կուլակային խավերի գաղափարախոսությունը, հանդես գալիս ինդուստրացման բարձր տեմպերի, գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլակության՝ որպես դասակարգի, վերացման դեմ։

ՍՄԿԿ-ն տրոցկիզմի, մանրբուրժուական ավանտյուրիզմի, աջ օպորտունիզմի, նացիոնալ-ուկլոնիստների և հակալենինյան մյուս հոսանքների ու խմբավորումների դեմ անհաշտ պայքարում վճռականորեն պաշտպանեց սոցիալիզմի կառուցման լենինյան կուրսը՝ չվախենալով ժամանակավոր անհաջողություններից ու նահանջներից, նվաճված արդյունքների քննադատական ինքնաստուգումից։

Հանրահայտ է, իհարկե, որ ռահվիրայի ճանապարհը անծանոթ է ու դժվարին։ Այն պահանջում է անընդհատ որոնումներ, ծագող դժվարագույն խնդիրների ինքնուրույն լուծում, հակասությունների ու խոչընդոտների հաղթահարում։ Ահա թե ինչու Լենինը գտնում էր, որ հենց կոմունիստների «...պարտականությունն է լռության չտալ իրենց շարժման թուլությունները, այլ բացահայտորեն քննադատել դրանք, որպեսզի շուտով և արմատականորեն ազատվեն դրանցից» (Երկեր, հ. 31, էջ 216)։

ՍՄԿԿ-ն հետևողականորեն կենսագործել է Լենինի այդ ցուցումները։ Նա միշտ էլ համարձակ ու բացահայտ քննադատել և քննադատում է սեփական սխալներն ու թերությունները։ Այսպես, կուսակցությունը խստագույնս դատապարտեց անհատի պաշտամունքը, որը հանգեցնում էր կուսակցական ու պետական կյանքի լենինյան նորմերի, սոցիալիստական օրինականության ու

դեմոկրատիայի խախտումների: Նա միաժամանակ վճռականորեն մերժեց սուբյեկտիվիզմը, որը հասարակական կյանքի զարգացման պրոցեսների նկատմամբ գիտական մոտեցումը փոխարինում էր վոլյունտարիզմով:

Ընդհանրացնելով այդ բնագավառներում կուսակցության պայքարի արդյունքները, ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց. «Անցած տարիների փորձը համոզիչ կերպով հաստատեց, որ անհատի պաշտամունքի հետևանքների, ինչպես նաև սուբյեկտիվիստական սխալների հաղթահարումը բարերար կերպով անդրադարձավ երկրի ընդհանուր քաղաքական և ամենից առաջ գաղափարախոսական իրադրության վրա: Մենք հավատարիմ ենք եղել ու հավատարիմ կմնանք մարքսիզմ-լենինիզմի արմատական սկզբունքներին և երբեք ոչ մի զիջում չենք անի գաղափարական հարցերում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ

* * *

Մարքս-լենինյան հեղափոխական ուսմունքի գլխավոր թշնամին եղել և մնում է բուրժուական գաղափարախոսությունը: Պաշտպանելով մարքսիզմը նրա հակառակորդների հարձակումներից՝ Լենինը վճռականորեն գրում էր. «Մենք պետք է անդադրում պայքար մղենք ամեն տեսակի բուրժուական գաղափարախոսության դեմ, ինչպիսի մոդայական ու շլացուցիչ համազգեստով էլ այն պճնազարդված լինի» (Երկեր, հ. 5, էջ 452): Իսկ բուրժուական գաղափարախոսությունը, ինչպես ցույց է տալիս մարքսիզմ-լենինիզմի դեմ նրա տևական պայքարի պրակտիկան, զգեստափոխվելու, դիմակավորվելու մեծ փորձ ու հմտություն ունի: Նրան դիմակազրկելու, բուրժուական, ինչպես նաև ամեն կարգի հակակոմունիստական տեսությունների, կոնցեպցիաների, հայացքների ջախջախիչ քննադատության արմատական սկզբունքները մշակեց հենց ինքը՝ Լենինը, սկզբունքներ, որոնք մտել են մեր կուսակցության գաղափարական զինանոցը, որպես պայքարի հատու զենք: Բուրժուական գաղափարախոսության քննադատությանը նվիրված Լենինի յուրաքանչյուր աշխատություն, ամենից առաջ, աչքի է ընկնում իր խոր գիտականությամբ, հասարակական-քաղաքական պրակտիկայի ռեալիստական գնահատմամբ, կուսակցականությամբ, քննարկվող խնդիրների նկատմամբ դասակարգային մոտեցմամբ:

Լենինիզմի անաղարտության համար մղվող պայքարում, իր գաղափարական գործունեության բոլոր փուլերում ՍՄԿԿ-ն մշտապես պաշտպանում է լենինյան այն տեսակետը, որ բուրժուական գաղափարախոսության, հակակոմունիզմի ու հակասովետիզմի դեմ պայքարում չեզոքություն չկա և չի էլ կարող լինել, որովհետև դա դասակարգային անհաշտ պայքար է, պայքար հանուն մարդու, հանուն մարդկության ազատության ու առաջադիմության: Բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարն առավել հրատապ է դարձել մեր ժամանակներում, քանի որ շատ դեպքերում արդի ռևիզիոնիզմն ու օպորտունիզմը սերտաճում են այդ գաղափարախոսության հետ: Եվ բոլորովին էլ պատահական չէր Լենինի այն չափազանց որոշակի հարցադրումը, որ «...պայքարն իմպերիալիզմի դեմ, եթե այն (պայքարը) անխզելիորեն կապված չէ օպորտունիզմի դեմ մղվող պայքարի հետ, դատարկ և կեղծ ֆրազ է» (Երկեր, հ. 22, էջ 405):

Իր գաղափարական գործունեության ընթացքում ՍՄԿԿ-ն միշտ էլ խստագույնս հաշվի է առել մարքսիզմ-լենինիզմի դեմ բուրժուական գաղափարախոսության հարձակումների բազմապլանայնությունը, գլխավոր ուղղությունները,



գործադրած նրբին եղանակները, այդ գաղափարախոսության անվերջ զգեստափոխումն ու դիմակավորումը:

Մարքսիզմ-լենինիզմի դեմ բուրժուական գաղափարախոսության պայքարի էժանագին, սակայն չափազանց տարածված մեթոդներից մեկը հեղափոխական այդ ուսմունքի մեջ, այսպես կոչված, «հակասությունններ» որոնելն է: Մարքսիզմի երևան գալուց հետո և մինչև այժմ բուրժուական գաղափարախոսների բազում սերունդներ հսկայական, սակայն անպտուղ, ջանքեր գործադրեցին այդ մարզում: Ցանկալին ընդունելով իրականի տեղ, նրանք իրենց համար ստեղծեցին, այսպես կոչված, «երկու Մարքսի» պատրանքը՝ երիտասարդ Մարքսին հակադրելով հասուն Մարքսին, միտումնավոր կերպով աղճատելով մարքսիստական ուսմունքը, հակասություններ որոնեցին Մարքսի և Էնգելսի միջև և, վերջապես, անօգուտ փորձեր կատարեցին և այժմ էլ կատարում են Լենինին հակադրելու Մարքսին, լենինիզմը՝ մարքսիզմին:

Բուրժուական գաղափարախոսության ստահոդությունը լիովին կբացահայտվի, եթե բերենք նրա «հայտնագործած» այդ կարգի «հասարակություններից» թեկուզ և մեկը: Հայտնի է, որ մարքսիզմի թշնամիները ժամանակին Մարքսին մեղադրում էին, այսպես կոչված, «տնտեսական մատերիալիզմի» մեջ, պնդելով, թե իբր նա ժխտում է սուբյեկտիվ գործոնի դերը պատմության մեջ, ամբողջովին հարում է «տնտեսական դետերմինիզմին»: Դրան հակառակ, բուրժուական գաղափարախոսները Լենինին մեղադրել և այժմ էլ մեղադրում են վոլյունտարիզմի մեջ, թե իբր նա հաշվի չէր առնում հասարակական պրոցեսների օբյեկտիվ պայմանները, այլ նկատի ուներ միայն սուբյեկտիվ գործոնը, մարդկանց կամքն ու ցանկությունները:

Սա, իհարկե, էժանագին միջոց է՝ նախատեսված մարքս-լենինյան ուսմունքից լիակատար անտեղյակ մարդկանց համար: Համոզվելու համար բավական է դիմել Լենինի թեկուզ և մի դրույթին: «Մարքսիզմը,— գրում է նա,— մյուս բոլոր սոցիալիստական տեսություններից տարբերվում է նրանով, որ նա իրերի օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի վերլուծման մեջ լիակատար գիտական լրջությունը երևելի կերպով միացնում է մասսաների հեղափոխական եռանդի, հեղափոխական ստեղծագործության, հեղափոխական ձեռներեցության նշանակության ամենավճռական ճանաչման հետ, ինչպես նաև, իհարկե, այն առանձին անհատների, խմբերի, կազմակերպությունների, կուսակցությունների նշանակության ճանաչման հետ, որոնք կարողանում են շոշափել և իրացնել կապն այս կամ այն դասակարգի հետ» (Երկեր, հ. 13, էջ 29):

Ո՞ւր է այստեղ վոլյունտարիզմը: Ընդհակառակը, այստեղ խորապես բացահայտված է պատմության օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների դիալեկտիկական փոխհարաբերության ու դերի գիտական ըմբռնումը:

Մարքսիզմ-լենինիզմը միասնական ինտերնացիոնալ ուսմունք է: Կյանքը, անցած ժամանակաշրջանի հասարակական-քաղաքական, հեղափոխական պրակտիկան լիովին բացահայտեցին բուրժուական և ռևիզիոնիստական գաղափարախոսների՝ Լենինին, Մարքսին, լենինիզմը՝ մարքսիզմին հակադրելու, լենինիզմը որպես զուտ «ռուսական ազգային երևույթ» դիտելու փորձերի սնանկությունը:

Հակասովետիզմի «հավերժական» թեման եղել և մնում է սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսության և, մասնավորապես, Հոկտեմբեր-

յան հեղափոխության գնահատման հարցը։ Անտեսելով ու շրջանցելով այն հանրահայտ փաստը, որ ավելի քան կես դարի ընթացքում Հոկտեմբերի գործն անցավ բազմակողմանի պրակտիկ ստուգում, վիթխարի ներգործություն ունեցավ համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման վրա, բուրժուական պատմաբանները, փիլիսոփաներն ու սոցիոլոգները շարունակում են այն համարել զուտ «ռուսական երևույթ», «դավադիրների վերնախավային հեղաշրջում»։ Հակակոմունիզմի ոչ անհայտ գաղափարախոսներ Վ. Շարնդորֆը, Ջ. Լիխտհեյմը, Ա. Մայերը, Ի. Դեյչերը և շատ ուրիշներ ոչ միայն ճգնում են հակասություններ գտնել մարքսիզմի ու լենինիզմի միջև, պսակազերծել Հոկտեմբերի միջազգային նշանակությունը, այն համարել զուտ «ռուսական երևույթ», այլև փորձում են լենինիզմը հանգեցնել տրոցկիզմի, օպորտունիզմի ու լասսալականության։

Սոցիալիստական հեղափոխությունը, ինչպես այդ ապացուցվել է Հոկտեմբերի և մյուս սոցիալիստական հեղափոխությունների փորձով, ոչ թե դավադրություն է, ոչ թե «ակտիվ հեղափոխականների» մի խմբի վերնախավային հեղաշրջում, այլ միլիոնների ու միլիոնների շարժում՝ բանվոր դասակարգի գլխավորությամբ, մարքս-լենինյան կուսակցությունների ղեկավարությամբ։ Հոկտեմբերյան հեղափոխության համաշխարհային պատմական նշանակությունն էլ հենց այն է, որ ցույց տվեց հեղափոխական վերափոխության այն ուղիները, ձևերն ու մեթոդները, որոնք ինտերնացիոնալ բնույթ ստացան։ Հանգամանք, որը խիստ զայրացրեց բուրժուական գաղափարախոսներին։

Երկու հակադիր գաղափարախոսությունների պայքարը նոր փուլ թևակոխեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումից հետո։ Որքան բազմապատկվում են սոցիալիզմի հաջողությունները և ավելի խորանում համաշխարհային կապիտալիզմի հակասությունները, այնքան նրբին և միաժամանակ բազմապլան են դառնում կոմունիզմի դեմ իմպերիալիզմի պայքարի մեթոդները։ Հակասովետիզմը, որը կապիտալի աշխարհում բարձրացված է պետական քաղաքականության աստիճանի, դրսևորվում է նորանոր ձևերով։ Հենց այդ «գաղափարական պլատֆորմի» վրա է, որ միմյանց հետ ընդհանուր լեզու են գտնում բուրժուական գաղափարախոսները, աջ և «ձախ» օպորտունիստները, ռևիզիոնիստները։

Համաշխարհային զարգացման ժամանակակից փուլում, հակասովետիզմի այդ ընդհանուր բանակի հարվածի գլխավոր ուղղություններից մեկը բանվոր դասակարգի, որպես հասարակության հեղափոխական վերափոխման, հակաիմպերիալիստական պայքարի գլխավոր շարժիչ և մոբիլիզացնող ուժի, դերի մարքս-լենինյան ըմբռնման խեղաթյուրումն է։ Հենվելով զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների վրա, ռեալիստորեն գնահատելով դարաշրջանի էությունն ու բնորոշ գծերը, ՍՄԿԿ-ն, եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունները գտնում են, որ արդի դարաշրջանի կենտրոնում են բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ Միջազգային ասպարեզում պատմական տեղաշարժերը, կապիտալի աշխարհում դասակարգային մարտերը, երիտասարդ պետություններում սոցիալ-տնտեսական վերափոխումները, սոցիալիզմի համաշխարհային նվաճումները, ամենից առաջ, բանվոր դասակարգի ստեղծագործական եռանդի դրսևորումն են։ Եվ, պատահական չէ, որ հատկապես մեր օրերում, բուրժուական գաղափարախոսները, աջ ու «ձախ» ռևիզիոնիստներն այնքան մեծ ճիգեր



են գործադրում՝ խեղաթյուրելու դասակարգերի լենինյան ըմբռնումը, յուրովի մեկնաբանելու նրանց տեղն ու դերը արդի հասարակական կյանքում, մասնավորապես ժխտելու բանվոր դասակարգի վճռական ներգործությունը հասարակական պրոցեսների վրա, նսեմացնելու, իսկ ապա նաև բացառելու նրա պատմական միսիան։

Հակառակ ռեալ իրականության, բուրժուազիայի գաղափարախոսները համառորեն զարգացնում են այն տեսակետը, թե արդի աշխարհում բանվոր դասակարգի դերը երբեք էլ քիչ թե շատ վճռական չէ, որ այդ հարցի մարքս-լենինյան մեկնաբանումը «դոգմատիկ» է, «հնացած», «կյանքի կողմից հերքված», թե զարգացած կապիտալիստական երկրներում տեղի է ունենում «ապապրոլետարականացման», տարբեր դասակարգերի կյանքի պայմանների ու եկամուտների «համահարթման», բանվոր դասակարգի «ինտեգրացման» պրոցես։

Փորձելով հերքել բանվոր դասակարգի հեղափոխական դերի, նրա պատմական միսիայի վերաբերյալ լենինյան ուսմունքը, բուրժուական ու ռեֆորմիստական սոցիոլոգները (Ռ. Արոն, Ժ. Մոկ, Ե. Նորդլինգեր և ուրիշներ) ճգնում են ապացուցել արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում բանվոր դասակարգի անհեռանկարայնությունը, հիմնավորել նրա, իբրև դասակարգի, անհետացումը։

Բանվոր դասակարգի, հասարակության զարգացման գործում նրա որոշակի դերի լենինյան ըմբռնման դեմ իրենց հարձակումներում առանձնահատուկ կրքոտություն են դրսևորում աջ ու «ձախ» ռևիզիոնիստները (Ռ. Գարոդի, Է. Ֆիշեր և ուրիշներ)։ Եթե բուրժուազիայի գաղափարախոսները արդի գիտատեխնիկական հեղափոխության հետ են կապում կապիտալիզմի հիմնական հակասությունների հաղթահարման, հեղափոխական պայթյունների կանխման՝ իրենց հույսերը, ապա ռևիզիոնիստները հենց այդ հեղափոխության ներգործությամբ կատարվող սոցիալական տեղաշարժերն են դարձնում իրենց հակագիտական հարցադրումների հենարանը։

Գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ կատարվում են որոշ սոցիալական տեղաշարժեր, աճում է բանվոր դասակարգը, այդ թվում նաև ի հաշիվ նոր պրոֆեսիաների։ Միաժամանակ կապիտալիզմի պայմաններում այդ հեղափոխությունը արագացնում է ինտելիգենցիայի տարրալուծումը, նրա զգալի մասին վերածելով վարձու աշխատավորների։ Վերջիններս, ենթարկվելով կապիտալիստական շահագործման, իրենց շահերով ու սոցիալական պայմաններով ավելի ու ավելի են մերձենում բանվոր դասակարգին։ Սոցիալական փոփոխությունների այդ կողմի բացարձականացումը, սակայն, ծնում է «նոր պատմական բլոկի» ռևիզիոնիստական կոնցեպցիա, բլոկ, որի մեջ իբր թե ձուլվում են բանվոր դասակարգը և ինտելիգենցիան։ Ռևիզիոնիստները հաստատում են, թե հենց այդ բլոկն է կոչված ժամանակակից պայմաններում ստանձնելու հեգեմոնի դերը։ Մինչդեռ, իրականում, այդ դերը պատկանում է միայն բանվոր դասակարգին։

Հակառակ վերը նշված և այլ հորինվածքների, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների՝ 1969 թ. Մոսկվայի միջազգային խորհրդակցությունը կրկին հավաստեց բանվոր դասակարգի դերի մարքս-լենինյան ըմբռնման խոր գիտականությունն ու ճշմարտացիությունը՝ ամբողջ ուժով ընդգծելով, որ **«Կապիտալիզմի միջնաբերդում բանվոր դասակարգը, ինչպես**

որ վերստին հաստատեցին վերջին ժամանակների իրադարձությունները, հեղափոխական պայքարի, դեմոկրատական հակաիմպերիալիստական ամբողջ շարժման գլխավոր շարժիչ և մոբիլիզացնող ուժն է» («Հիմնական փաստաթուղթը», էջ 30)։ Իսկ մեր կուսակցության ծրագրում ուղղակի նշված է. «Հասարակության ղեկավարի իր դերի կատարումը բանվոր դասակարգը կավարտի կոմունիզմի կառուցմամբ, երբ կվերանան դասակարգերը» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 523)։

Բուրժուական գաղափարախոսները, ինչպես նաև աջ ու «ձախ» ռևիզիոնիստները, տրոցկիստները, իրենց գաղափարական դիվերսիայում ձգտում են վերանայել այնպիսի սկզբունքային խնդիրների լենինյան գնահատումները, ինչպիսիք են արդի հեղափոխական պրոցեսի շարժիչ ուժերն ու բովանդակությունը, սոցիալիզմի զարգացման ընդհանուր օրինաչափություններն ու գծերը, հասարակական առաջադիմության գործում մարքս-լենինյան կուսակցությունների դերի բարձրացումը և այլն։

* * *

Ժամանակակից իմպերիալիզմն առաջադրել է ավանտյուրիստական լոզունգ՝ գաղափարների պատերազմը տեղափոխել սոցիալիզմի երկրները, կոմունիստական շարժման մեջ։ Ավելի քան կես դար է, ինչ աշխարհում ծավալվում է կոմունիստական շարժումը։ Այդ շարժման ուժը, ինչպես հաստատել է պրակտիկան, նրա միասնության մեջ է, մարքսիզմ-լենինիզմին նրա ջոկատների հավատարմության մեջ։ Այդ միասնության համար առանձնապես կարևոր է կոմունիստների մեծ բանակի ազգային ու ինտերնացիոնալ խնդիրների ճիշտ զուգորդումը։ Մեր կուսակցությունը պաշտպանում է լենինյան այն տեսակետը, որ ազգային կեղեքումը իմպերիալիստական կապիտալիզմի բնորոշ հատկանիշներից մեկն է, ուստի և ազգային խնդրի վերջնական լուծումը կարող է իրագործվել միայն սոցիալիստական հեղափոխության հաղթության պայմաններում, սոցիալական ու ազգային ճնշման վերացման հետևողական առաջամարտիկների՝ կոմունիստների կուսակցության լենինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման շնորհիվ։ Սա վաղուց ապացուցված իրականություն է։

Կոմունիստների ինտերնացիոնալ միասնությունն էլ հենց կոփվել ու ամրապնդվել է իմպերիալիզմի, օպորտունիզմի ու աղանդավորության բոլոր տարատեսակությունների, բուրժուական նացիոնալիզմի դեմ մղված անհաշտ պայքարում։ Պրակտիկան միաժամանակ ցույց է տվել, որ այստեղ մարքս-լենինյան գծից շեղումները առանձնապես վտանգավոր են դառնում, երբ դրանք զուգորդվում են նացիոնալիզմի, մեծապետական շովինիզմի ու հեգեմոնիզմի հետ։ Դրանց ապացույցն են Չինաստանում ծավալվող իրադարձությունները։

Հիսնական թվականների վերջերից չինական ղեկավարությունը միջազգային կյանքի և համաշխարհային կոմունիստական շարժման հիմնական հարցերում հանդես եկավ լենինիզմի հետ բոլորովին անհամատեղելի գաղափարա-քաղաքական պլատֆորմով։ Մաո Ցզե-դունի ռազմա-բյուրոկրատական խմբավորումն սկսեց իրագործել մի գիծ, որի մեջ միաձուլվեցին «ձախ» ֆրազներով քողարկված մանրբուրժուական ավանտյուրիզմը և մեծապետական շովինիզմն ու հեգեմոնիզմը, բացահայտորեն բռնեց սոցիալիստական համագործակցության միասնությունը ջլատելու, համաշխարհային կոմունիստական շարժումը պառակտելու ուղին։



Չինաստանի ղեկավարության հակալենինյան կուրսը ջուր է լցնում իմպերիալիզմի ջրաղացին։ Լեհ հայտնի հրապարակախոս-միջազգայնագետ Ստանիսլավ Գլոնբինսկին իր «Ամերիկան նայում է Չինաստանին» գրքում բերում է տակավին 1954 թվականին Չինաստանի հարցերով ամերիկյան փորձագետի հետևյալ խոսքերը. «Մենք պետք է բոլոր ջանքերը գործադրենք, որպեսզի մեր քաղաքական ազդեցությունը տարածենք չինական կոմունիստների վրա... Եթե մենք իսկապես ցանկանում ենք շահել պայքարը սովետական աշխարհի դեմ, մեզ անհրաժեշտ է հիշել, որ սովետա-չինական բլոկում պառակտումը հսկայական նշանակության իրադարձություն կլինի հօգուտ մեզ» («Проблемы мира и социализма», 1973, № 10, стр. 88)։

Չինական ղեկավարությունը, փաստորեն, հագուրդ տվեց ամերիկյան իմպերիալիզմի ձգտումներին։ Մաոյի խմբի ավանտյուրիստական գործունեությունը ոչ միայն ջլատում է հակաիմպերիալիստական ուժերի միասնությունը, այլև խորացնում է Չինաստանում սոցիալիստական կարգի դեֆորմացիան։

Չինաստանում շարունակում է իշխել Մաո Ցզե-դունի անձի պաշտամունքը։ Երկրի գաղափարական ու հոգևոր կյանքը խարսխվում է նրա «գաղափարների» վրա, մարդկանց ներարկվում է այն միտքը, թե դրանք «նոր ներդրում» են մարքսիզմի մեջ։ Իրականում մաոիզմը խորապես թշնամի է գիտական սոցիալիզմին և նրա հակոտնյան է։ Չինական ղեկավարության հեռացումը մարքսիզմ-լենինիզմից և պրակտիկայում Մաոյի դոգմաների կիրառումը հանգեցրին ծանր հետևանքների երկրի տնտեսական ու կուլտուրական զարգացման մարզում։

Մաոիզմը առատ սնունդ է տալիս ռևիզիոնիստներին ու ռենեգատներին, որոնք ամեն կերպ մեծարելով Մաոյին ու նրա քաղաքականությունը, ճգնում են «սոցիալիզմի չինական մոդելը» հակադրել գիտական սոցիալիզմի ինտերնացիոնալ փորձին։ Աշխարհին հայտնի են Չինաստանում իրագործված, այսպես կոչված, «կուլտուրական հեղափոխության» արդյունքները։ Սակայն մարքսիզմի ռենեգատ Ռ. Գարոդին գտնում է, որ «Անձամբ Մաո Ցզե-դունի կողմից ծավալված ու անցկացված կուլտուրական հեղափոխությունը, որը լիովին տարբերվում է անարխիայից ու վանդալիզմից, եղավ սոցիալիզմի բյուրոկրատական վերասերումից դեմոկրատիայի պաշտպանության մեծագույն ակտ»։ Գարոդին այդ համարում է «նոր մանդարինատի վտանգի դեմ պայքարում Մաո Ցզե-դունի գծի» հետագա զարգացում։ Այդ ամբողջ խժդժության մեջ նա նույնիսկ տեսնում է «մասսաների պատմական նախաձեռնության իրականացում»։

Պեկինի ժամանակակից լիդերները բացահայտորեն հետևում են չինական բոգդիխանների այն տրամաբանությանը, թե արտաքին թշնամու գոյությունը նպաստում է ազգի համախմբմանը և, եթե այդպիսի թշնամի չկա, նրան անհրաժեշտ է ստեղծել։ Եվ չինական ղեկավարներն ստեղծեցին։ Չինաստանի կոմկուսի IX և հատկապես վերջերս տեղի ունեցած X համագումարները պաշտոնապես վավերացրին Սովետական Միության նկատմամբ թշնամական կուրսը։ Առաջադրելով սովետական «վտանգի» ուրվականը, մաոիստները ձգտում են երկրի ներսում ռազմական մոլուցքի իրադրություն ստեղծելով ժողովրդի ուշադրությունը շեղել ներքին այրող պրոբլեմներից ու դժվարություններից։ Չինաստանի կոմկուսի X համագումարը միաժամանակ ցուցադրեց լիակա-

տար անտարբերություն՝ ազգային ազատագրական շարժման շահերի նկատմամբ:

Իմպերիալիզմի գաղափարախոսների ու քաղաքագետների արդի ընդհանուր խաչակրաց արշավանքին մասնակցում է նաև երկրից վտարված, ազգային հենարանն իսպառ կորցրած դաշնակցություն կուսակցությունը: Թշնամաբար լցված ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության նկատմամբ, կամովին կույր ձևանալով ռեալ իրականության հանդեպ, կես դար անընդհատ նա պնդել և այսօր էլ շարունակում է պնդել, որ լենինյան ազգային «քաղաքականությունը չի բերել և չի բերում ազգային հարցերի լուծում» (տե՛ս «Ազդակ», 19 մայիսի 1973 թ.): Ավելին, «կես դարու ընթացքին Հայաստանում տեղի ունեցան և շարունակում են տեղի ունենալ խոշոր իրադարձություններ ու ցընցումներ, որոնք վտանգել են ու շարունակում են վտանգել հայ ժողովրդի ազգային-քաղաքական գոյությունը» («Ալիք», № 114, 1964 թ.):

Անցած ավելի քան կես դարի ընթացքում, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամական ընտանիքում ու նրանց անշահախնդիր օգնությամբ հայ ժողովուրդը, իրոք, ապրել է խոշոր իրադարձություններ, որոնք, սակայն, ոչ թե վտանգել են նրա գոյությունը, այլ եղել են ազգահաստատման, ազգային իսկական վերածննդի իրադարձություններ:

Սակայն դաշնակցությանն ի՞նչ փույթ. նա կամավոր ծառայագրվել է իմպերիալիզմին և հլու հնազանդ կատարում է նրա պատվերը: Պարոնայք դաշնակցականները մոռանում են, որ իրենց տրամաբանությունից բացի, կա նաև իրերի, հանգամանքների, օբյեկտիվ իրականության շատ ավելի զորեղ տրամաբանությունը, որի հետ երբեք հաշվի չնստեց և չի էլ ցանկանում նստել դաշնակցությունը: Իսկ այդ տրամաբանությունն ասում է, որ դաշնակցության ահազանգն այլ բան չէ, եթե ոչ հավասարակշռությունից դուրս եկած, իրերի տրամաբանության դեմ գազազած կուսակցության ջղաձգություն:

Այդ ամենի հետ մեկտեղ ՍՄԿԿ-ն, եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունները հաշվի են առնում, իհարկե, նացիոնալիստական ու շովինիստական նախապաշարումներ ծնող նախադրյալների վերացման դժվարությունները, քանի որ այստեղ խոսքը տարբեր դասակարգերի ու սոցիալական խմբերի, տարբեր ազգերի ու ազգությունների շահերը շոշափող դարավոր ավանդույթների արմատական հեղաբեկման, միանգամայն նոր տիպի հասարակական կապերի ստեղծման, նոր հոգեբանության, նոր աշխարհայացք ունեցող մարդկանց դաստիարակության մասին է: Իսկ դա տևական ու դժվարին գործ է, որը պահանջում է ժամանակ, երկարատև ու համբերատար աշխատանք:

Այդ բնագավառում կոմունիստական կուսակցությունների տիտանական գործունեության գրանիտյա պատվանդանը մարքսիստական-լենինյան ամենահաղթ ուսմունքն է, որի անաղարտության պաշտպանությունը եղբայրական բոլոր կուսակցությունների, յուրաքանչյուր կոմունիստի սրբազան պարտքն է:

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**

«Մատերիալիստական այն ուսմունքը, թե մարդիկ արգասիք են հանգամանքների և դաստիարակության, որ, հետևաբար, փոփոխված մարդիկ այլ հանգամանքների և փոփոխված դաստիարակության արգասիք են,— այս ուսմունքը մոռանում է, որ հանգամանքները հենց մարդիկ են փոխում, և որ դաստիարակությունը հենց ինքը պետք է լինի դաստիարակված»:

**Կ. ՄԱՐՔՍ**

Յուրաքանչյուր հասարակարգ, վերափոխելով գոյության նյութական պայմանները և հասարակական հարաբերությունները, ստեղծում է որոշակի, հենց իրեն հատուկ ապրելակերպ և գաղափարական ու բարոյական սկզբունքներ, որոնք դրսևորվում են մարդկանց հոգևոր կերպարի և ամբողջ կենսագործունեության մեջ: Պատմության էվոլյուցիան պայմանավորում է անընդհատ առաջադիմություն ո՛չ միայն արտադրաուժերի զարգացման ու հասարակական կազմակերպության կատարելագործման բնագավառում, այլև մարդու ամբողջ հոգևոր աշխարհում. նա քայլ առ քայլ ազատագրվում է կենդանական աշխարհի վայրենությունից և այն բացասական գծերից՝ գաղափարներից, նպատակներից, ավանդույթներից, սովորույթներից ու ձգտումներից, որ նրա մեջ արմատացրել է մասնավոր սեփականության ու շահագործման բազմադարյա տիրապետությունը: Այդ բնագավառում ամենաարմատական քայլը, ամենախոշոր թռիչքը կատարվում է կապիտալիզմից կոմունիզմին անցնելու պրոցեսում, երբ մասնավոր սեփականության և դասակարգային հակամարտության հաղթահարման հիման վրա հնարավորություն է ստեղծվում հաստատել սոցիալական պայմաններ, ուր, ըստ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի, «յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, երեք հատորով, հ. I, Երևան, 1972, էջ 164):

Այդպիսի հասարակության կառուցումը հնարավոր դարձավ արդյունաբերական բանվոր դասակարգի կազմավորումով ու զարգացումով միայն: Բացահայտելով բանվոր դասակարգի համաշխարհային-պատմական դերը, Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը միաժամանակ ցույց տվեցին, որ իր մեծ նպատակին՝

անդասակարգ հասարակությանը պրոլետարիատը կարող է հասնել միայն գործնական շարժման, հեղափոխության միջոցով, որն անհրաժեշտ է ո՛չ միայն տնտեսական ու քաղաքական հեղաշրջման, այլև կոմունիստական գիտակցության մասսայական ծննդի համար, մարդկանց, այդ թվում հենց բանվոր դասակարգի հոգևոր կերպարի արմատական փոփոխության համար։ «...Հեղափոխությունն անհրաժեշտ է,— նշում էին նրանք,— ո՛չ միայն նրա համար, որ ուրիշ ոչ մի եղանակով հնարավոր չէ տապալել տիրապետող դասակարգը, այլև նրա համար, որ տապալող դասակարգը միայն հեղափոխությամբ կարող է իր վրայից դեն շպրտել ամբողջ հին աղտեղությունը և ընդունակ դառնալ ստեղծելու հասարակության նոր հիմք» (Ընտիր երկեր, հ. I, էջ 41)։

Շարունակելով ու հետևողականորեն զարգացնելով մարքսիստական ուսմունքը, Վ. Ի. Լենինն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց կապիտալիզմից կոմունիզմին անցման պրոցեսում մարդկանց հոգևոր կերպարի, նրանց ամբողջ գիտակցության մասսայական վերափոխման հարցին, դիտելով այն որպես սոցիալիստական հեղափոխության և կոմունիզմի կառուցման պրոցեսի կարևորագույն պայմաններից մեկը։

Ելնելով մարքսիզմի կլասիկների հիմնադրույթներից, Վ. Ի. Լենինն առանձնապես ընդգծեց այն միտքը, որ նոր հասարակարգը կառուցվելու է ոչ թե ինչ-որ «...հատուկ ջերմոցներում աճեցված առանձնապես առաքինի մարդկանցից», ինչպես կարծում էին սոցիալ-ուտոպիստները, այլ «...մարդկային նյութի մասսայական այն ներկայացուցիչներից, որոնք ստեղծվում են արյունալի, կեղտոտ, կողոպտչական, խանութպանական կապիտալիզմի կողմից» և որոնք փչացվել են «...դարերի ու հազարամյակների ստրկությամբ, ճորտությամբ, կապիտալիզմով, մանր մասնատված տնտեսությամբ, շուկայում տեղ գտնելու համար, արտադրանքի կամ աշխատանքի ավելի բարձր գնի համար բոլորի կողմից բոլորի դեմ մղվող պատերազմով» (Երկեր, հ. 28, էջ 502)։

Սոցիալիստական հեղափոխության պրոցեսում և մասնավորապես դրա հաղթանակից հետո աշխատավոր մասսաների ողջ գիտակցությունը լայնորեն վերափոխվում է, մի կողմից, հասարակական հարաբերությունների արմատական փոփոխության և, մյուս կողմից, պրոլետարիատի ու նրա հեղափոխական կուսակցության ազդեցության ու նպատակադիր դաստիարակչական աշխատանքի շնորհիվ։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցման սկզբում, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, կոմունիստական գիտակցությամբ համակվելու և այն իր համոզմունքը դարձնելու ընդունակ է միայն արդյունաբերական բանվորների դասակարգը։ Սակայն նա այդ գիտակցությանը հանգում է ո՛չ միանգամից և ոչ էլ հեշտ ու ինքնաբերաբար. դրա համար անհրաժեշտ է տասնամյակների համառ ու դժվարին պայքար, որի ընթացքում կոմունիստական գիտակցությամբ, կոմունիզմի գաղափարներով տոգորվում է բանվոր դասակարգի առաջավոր մասը, նրա ավանգարդը հանդիսացող կոմունիստական կուսակցության մեջ համախմբվող հատվածը, որն այնուհետև կազմակերպում, վերադաստիարակում և մեծ նպատակի համար պայքարի է հանում բանվորական հոծ մասսաներին։ Կոմունիզմի գաղափարներով տոգորված ու հեղափոխական պայքարի ելած բանվոր դասակարգը, սկսելով հասարակության արմատական վերափոխման մեծ գործը, իր կողմն է գրավում և քայլ առ քայլ վերադաստիարակում աշխատավորների ու շահագործվողների ամբողջ մասսային։



Վ. Ի. Լենինը որոշակի մատնանշել է, որ կապիտալիստներին ու մնացած բոլոր շահագործողներին հաղթելու, սոցիալիստական կարգեր ստեղծելու և ամրապնդելու համար բանվոր դասակարգը պետք է լուծի երկակի, կամ ավելի ճիշտ, երկմիասնական խնդիր. առաջին՝ կապիտալի դեմ մղվող պայքարի իր նպատակադրությամբ, նվիրվածությամբ և անձնազոհ հեղափոխական հերոսությամբ «...գրավի աշխատավորների և շահագործվողների ամբողջ մասսային, գրավի նրան, կազմակերպի նրան, ղեկավարի նրան բուրժուազիային տապալելու և նրա կողմից ամեն մի դիմադրություն լիովին ճնշելու համար. երկրորդ՝ իր հետևից տանի աշխատավորների և շահագործվողների ամբողջ մասսային, ինչպես նաև մանրբուրժուական բոլոր խավերին, դեպի նոր տնտեսական շինարարության ուղին, դեպի նոր հասարակական կապի, նոր աշխատանքային կարգապահության, աշխատանքի նոր կազմակերպության ստեղծման ուղին, որը միացնում է գիտության և կապիտալիստական տեխնիկայի վերջին խոսքը խոշոր սոցիալիստական արտադրություն ստեղծող գիտակից աշխատողների մասսայական միավորման հետ» (Երկեր, հ. 29, էջ 518)։

Աշխատավորական մասսաների նկատմամբ պրոլետարական ղեկավարության արդյունավետության երաշխիքը Վ. Ի. Լենինը համարում էր, մի կողմից, պրոլետարիատի անձնազոհությունը, կազմակերպվածությունը, համախմբումը, հեղափոխական կուսակցության ղեկավարությամբ կոմունիստական համոզմունքներ ստեղծելն ու մասնավոր սեփականատիրական կարգերի ծնած ու ամրապնդած սովորույթներից ու ձգտումներից մաքրվելը, մյուս կողմից, նրա քաղաքական նպատակների գաղափարական ու բարոյական ըմբռնումների միասնությունը։ Կոմունիստական գաղափարներով տոգորված դասակարգերի մոտ հաղթահարվում է քաղաքական ու բարոյական ըմբռնումների ու իդեալների միջև մինչ այդ եղած խզումը, ստեղծվում են միասնական քաղաքական ու բարոյական իդեալներ։ Բոլոր ազգերի ու ռասաների պատկանող աշխատավոր մարդկանց իրական հավասարություն, հասարակության մեջ մտնող բոլոր անհատների ընդունակությունների անարգել ու բազմակողմանի զարգացման իրական հնարավորություն ստեղծելու ձգտումն արմատապես անհամատեղելի է մարդու շահագործման, ընչաքաղցության, դաժանության, անշարժության, հասարակությունից մեկուսանալու ու նրան հակադրվելու, ստորաքարշության, ստրկամտության, կաշառակերության, ուրիշներին նվաստացնելու, հասարակական դիրքը չարաշահելու և նման բազմաթիվ այլ ձգտումների ու սովորույթների հետ, որ ծնել և ամրապնդել են մասնավոր սեփականատիրական կարգերը։ Վ. Ի. Լենինը վճռականորեն ընդգծում էր. «...մեր բարոյականությունն ամբողջովին ենթակա է պրոլետարիատի դասակարգային պայքարի շահերին։ Մեր բարոյականությունը բխում է պրոլետարիատի դասակարգային պայքարի շահերից» (Երկեր, հ. 31, էջ 354)։ Այն բոլոր ըմբռնումները, ավանդույթները, սովորույթներն ու ձգտումները, որոնք հակասում են արդարացի կոմունիստական հասարակարգ ստեղծելու վեհ նպատակին, բարոյական լինել չեն կարող։ Դրա համար էլ, գրում էր Լենինը «Մենք ասում ենք՝ բարոյականությունն այն է, որ ծառայում է հին շահագործողական հասարակության խորտակմանը և բոլոր աշխատավորներին միավորում է կոմունիստների նոր հասարակություն ստեղծող պրոլետարիատի շուրջը։

Կոմունիստական բարոյականությունն այն բարոյականությունն է, որը ծառայում է այդ պայքարին, որը միավորում է աշխատավորներին ընդդեմ

ամեն տեսակ շահագործման, ընդդեմ ամեն տեսակ մանր սեփականության, որովհետև մանր սեփականությունը մեկ մարդու ձեռքն է տալիս այն, ինչ ստեղծված է ամբողջ հասարակության աշխատանքով» (Նույն տեղը, էջ 357)։

Այս իսկ առումով Վ. Ի. Լենինը նոր մարդու դաստիարակության համար հավասարապես անհրաժեշտ և կարևոր էր համարում և՛ կոմունիստական գաղափարների, և՛ առաջավոր, ինչպես մարդկային ու վեհ բարոյական սկզբունքների, ըմբռնումների ու սովորույթների արմատավորումն ու ամրապնդումը ամենալայն մասսաների գիտակցության մեջ։ Մեր երիտասարդությունը, նշում էր Լենինը, պետք է սովորի կոմունիզմ, պատրաստի բանաձևերից, խորհուրդներից, դեղատոմսերից, առաջադրություններից, ծրագրերից այն վերածի իր անմիջական աշխատանքը միավորող կենդանի գործի, կոմունիզմը դարձնի իր գործնական աշխատանքի ուղեցույցը։ Նա երիտասարդական միության առաջ խնդիր էր դնում՝ «...իր պրակտիկ գործունեությունը դնել այնպես, որ, սովորելով, կազմակերպվելով, համախմբվելով, պայքարելով, այդ երիտասարդությունը դաստիարակի իրեն և բոլոր նրանց, ովքեր նրան իրենց առաջնորդն են համարում, որ նա կոմունիստներ դաստիարակի։ Ժամանակակից երիտասարդության դաստիարակության, կրթության և ուսուցման ամբողջ գործը պետք է լինի կոմունիստական մորալի դաստիարակությունը նրա մեջ» (Նույն տեղը, էջ 353)։

Բարոյականության կոմունիստական սկզբունքները դիտելով որպես կոմունիստական գիտակցության կարևոր բաղկացուցիչ մաս, Վ. Ի. Լենինը դնում էր սոցիալիստական հասարակության մարդու բարոյական կերպարի ամբողջության հարցը, նրա գիտակցության մեջ հնից եկող և, նույնիսկ, որոշ նոր հանգամանքների հետևանքով ծագող բացասական ըմբռնումների, ձգտումների ու սովորույթների հաղթահարման խնդիրը։

Նոր մարդու բարոյական կերպարի ամենաբնորոշ, ամենահիմնական գիծը Վ. Ի. Լենինը համարում էր աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքը, աշխատանքի կոմունիստական կարգապահության ստեղծումն ու զարգացումը։ Խոսելով անցման շրջանում դասակարգային պայքարի հիմնական ձևերի մասին, Վ. Ի. Լենինը, տապալված դասակարգերի դիմադրության ճնշման և քաղաքացիական պատերազմի հետ միասին, այդ շրջանի դասակարգային պայքարի գլխավոր ձևեր էր համարում բուրժուական մասնագետների օգտագործումը և մանր բուրժուազիայի չեզոքացումը, դրա մեջ մուծելով այդ խավերի աշխատանքային բարոյական վերադաստիարակության, նրանց պրոլետարական օրինականությանը և աշխատանքային կարգապահությանը ենթարկելու խնդիրը։ Եվ, վերջապես, որպես դասակարգային պայքարի ամենաերկարատև, ամենահամառ, ամենահետևողական բնագավառ նա նշում էր ամբողջ հասարակության, ինչպես և բանվոր դասակարգի համար աշխատանքային նոր կարգապահության ստեղծումն ու ամրապնդումը։

«Մենք կաշխատենք վերացնել «յուրաքանչյուրն իր համար, միայն աստված բոլորի համար» անիծյալ կանոնը, վերացնել այն սովորությունը, որի համաձայն աշխատանքը միայն պարհակ է համարվում և օրինական է միայն որոշ նորմայով վարձատրվող աշխատանքը։ Մենք կաշխատենք մասսաների գիտակցության մեջ, սովորության մեջ, նրանց ամենօրյա կենցաղի մեջ արմատավորել «բոլորը մեկի, և մեկը բոլորի համար» կանոնը, «յուրաքանչյուրն ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ իր պահանջմունքների»



կանոնը, աստիճանաբար, բայց անշեղորեն մտցնել կոմունիստական կարգապահություն և կոմունիստական աշխատանք» (Նույն տեղը, էջ 140)։ Այդ նոր կարգապահության ամրապնդմանը, կոմունիստական աշխատանքի արմատավորմանը, Լենինի կարծիքով, հնարավոր էր հասնել դասակարգային համառ պայքարով, որի էությունը, առաջին հերթին, հենց իր՝ բանվոր դասակարգի բոլոր հատվածների գիտակցության վերափոխումն է կոմունիստական սկզբունքների համաձայն, բանվորների ամբողջ դասակարգի ընդհանուր շահերի պաշտպանումը «...բանվորների այն խմբակներից, խմբերից, խավերից, որոնք համառորեն կառչում են կապիտալիզմի տրադիցիաներից (սովորություններից) և շարունակում են նայել սովետական պետության վրա առաջվա պես. տալ «նրան» ավելի քիչ, ավելի վատ աշխատանք,— պոկել «նրանից» ավելի շատ փող» (Երկեր, հ. 28, էջ 108)։

Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի առաջին սաղմերը Լենինը հանճարեղորեն նկատեց կոմունիստական շաբաթօրյակների մեջ, որոնք, նրա կարծիքով, նշանավորեցին բանվորների գիտակցական և կամավոր նախաձեռնություններն աշխատանքի արտադրողականության զարգացման, նոր աշխատանքային կարգապահության անցնելու, տնտեսության և կյանքի սոցիալիստական պայմաններ ստեղծելու ասպարեզում։

Այդ սաղմերը նա տեսավ նաև կապիտալիզմին յուրահատուկ և աշխատավորների իննսունինը հարյուրերորդականի ձեռներեցությունը, եռանդը, համարձակ նախաձեռնությունը խեղդող ու ճնշող կապիտալիստական մրցակցության փոխարեն աշխատավորական լայն մասսաների սոցիալիստական մրցության ծավալման մեջ։ Նա ցույց տվեց, որ այդպիսի մրցությունը իրական հնարավորություն է ստեղծում «...աշխատավորների մեծամասնությանը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզը, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Երկեր, հ. 26, էջ 493—494)։

Վ. Ի. Լենինը բազմակողմանիորեն լուսաբանեց աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի և աշխատանքային նոր կարգապահության արմատավորման ուղիները. դրական օրինակի պրոպագանդումը և այդպիսիները մասսաների սեփականություն դարձնելը. աշխատանքի կուլտուրայի բարձրացումը՝ դրա համար օգտագործելով գիտության ու տեխնիկայի այն բոլոր նվաճումները, որոնք ձեռք են բերվել կապիտալիզմի օրոք. աշխատանքի պրոցեսի կազմակերպման ու ղեկավարության բարձրացումը բոլորովին նոր ատիճանի՝ հասարակության բոլոր անդամներին սովորեցնելով արտադրության ու երկրի կառավարման արվեստը. սոցիալիստական կարգերի հաղթանակի շնորհիվ մասսաների մեջ առաջացած վիթխարի էնտուզիազմի զուգակցումն անձնական շահագրգռության հետ. անցյալից ժառանգություն մնացած բացասական ձգտումների ու սովորույթների, ինչպես նաև սոցիալիստական կարգերի անկատարելությունից ծնվող ու որոշ չափով տարածում գտնող հոգեբանության բացասական գծերի ու սովորույթների («կոմբյուրոկրատիզմ», «կոմսնապարծություն», պաշտոնական դիրքի, իշխանության չարաշահում, դրամի և այլ արժեքների կուտակման հնարավորություն և այլն) վճռական հաղթահարում. նոր աշխատանքային կարգապահությանը չարամտորեն չենթարկվողների նր-

կատմամբ հարկադրանքի, բռնության կիրառում՝ սոցիալիստական օրինականության խստագույն պահպանումով։

Վ. Ի. Լենինը առանձնահատուկ ուշադրություն էր նվիրում գյուղացիության և մտավորականության վերադաստիարակության խնդրին։ Եվ դա միանգամայն հասկանալի է, որովհետև կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում մասնավորապես գյուղացիությունը մանր մասնավոր արտադրության և տնտեսության հետ կապված դասակարգ էր, բաղկացած մի քանի շերտերից, որոնց (հատկապես կուլակի և միջակ գյուղացու) հոգեբանության և գիտակցության մեջ դեռևս ամուր էին մասնավոր սեփականատիրական հոգեբանության ու բարոյականության բազմաթիվ գծեր՝ անշարժություն, էգոիզմ, հարստանալու ձգտում, ժլատություն և այլն։ «Այստեղ հարկավոր է,— նշում էր Վ. Ի. Լենինը,— որ պրոլետարիատը վերադաստիարակի, վերակրթի գյուղացիների մի մասին, իր կողմը գրավի նրանց, ովքեր աշխատավոր գյուղացի են, որպեսզի ոչնչացնի այն գյուղացիների դիմադրությունը, որոնք հարուստ են և հարստանում են մնացածների կարիքի հաշվին» (Երկեր, հ. 31, էջ 356)։ Գյուղացիության վերադաստիարակության գլխավոր ուղին Վ. Ի. Լենինը համարում էր նրանց անցումը սոցիալիստական տնտեսության— գյուղացիության կոոպերացումն ու կոլեկտիվացումը, նրանց ողջ ապրելակերպի արմատական վերափոխումը, գյուղի ու քաղաքի զոդումը և նրանց միջև գոյություն ունեցող էական տարբերությունների հաղթահարումը։

Երկրի աշխատավորական մասսաների գիտակցության ու հոգեբանության վերափոխման կարևորագույն գործիքներից մեկը Վ. Ի. Լենինը համարում էր պրոլետարիատի դիկտատուրան— պրոլետարական պետությունը, նոր, սովետական օրենքները, որոնք բխում են իսկական հումանիզմի սկզբունքներից, արտահայտում են աշխատավորական ամենալայն մասսաների կամքն ու նպատակները և դրանով իսկ չեն հակասում բարոյական նորմերին։ Այդ օրենքների ճշգրիտ և արդարացի կիրառումը Լենինը համարում էր մասսաների վերադաստիարակության գլխավոր միջոցներից մեկը։ Նա նշում էր, որ արդեն տապալված և ունեզրկված կապիտալիստներն ու կալվածատերերը դեռ երկար ժամանակ դեռևս ուժեղ են ո՛չ միայն իրենց գիտելիքներով ու իրենց փորձով, ոչ միայն աշխարհի ամենահարուստ երկրների կապիտալիստների ռազմական ու նյութական օգնությամբ, այլ նաև «...լայն մասսաների սովորության և խավարի ուժով, որոնք ուզում են ապրել «հին ձևով» և չեն հասկանում Սովետական իշխանության օրենքները խստիվ և բարեխղճորեն պահպանելու անհրաժեշտությունը» (Երկեր, հ. 29, էջ 692)։ Ահա թե ինչու Լենինը գտնում էր, որ անհրաժեշտ է պրոլետարիատի դիկտատուրայի ժամանակ վերադաստիարակել միլիոնավոր գյուղացիների և մանր տնտեսատերերի, հարյուրհազարավոր ծառայողների, չինովնիկների, բուրժուական ինտելիգենտների, նրանց բոլորին ենթարկել պրոլետարական պետությանը և պրոլետարական ղեկավարությանը, հաղթահարել նրանց բուրժուական սովորույթներն ու տրադիցիաները։

Նոր դարաշրջանի՝ սոցիալիզմի դարաշրջանի մարդուն Վ. Ի. Լենինը բնորոշ էր համարում մարդկային ամենաբարձր բարոյական հատկությունները՝ հավատարմությունը կոմունիզմի գործին, անհատական և հասարակական շահերի խելացի զուգակցումը, վճռական պահերին անձնական շահը հասարակական ընդհանուր շահին ենթարկելը, հումանիզմը, կոլեկտիվիզմը, հասարա-



կական գործի, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում նվիրվածությունը, վճռականությունը, անձնազոհությունը, հերոսությունը, լավ օրինակին հետևելն ու այն պրոպագանդելը, հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի խելացի զուգակցումը, համերաշխությունը բոլոր ճնշվածների ու շահագործվողների, իրենց սոցիալական ու ազգային ազատագրության համար պայքարողների հետ, անհաշտ ատելությունը շահագործողների, պորտաբույծների հանդեպ, «մեկը բոլորի, և բոլորը մեկի համար» սկզբունքը, կարգապահությունն ու սոցիալիստական օրինականության խստիվ ու բարեխղճորեն պահպանումը, ձեռներեցությունն ու գործիմացությունը, ազնվությունը, անկեղծությունը և նվիրվածությունն իր սոցիալիստական երկրին, ժողովրդին, ընտանիքին, կոմունիստական գաղափարներին տիրապետելու և դրանք կյանքում հետևողականորեն իրականացնելու ձգտումը։ Վ. Ի. Լենինը նոր մարդու կարևոր հատկանիշներ էր համարում հասարակական ակտիվությունն ու նախաձեռնությունը, մարդկանց նկատմամբ հոգատարությունն ու հարգանքը, իր արժանապատվությունը բարձր պահելու ձգտումը, համեստությունն ու պարզությունը, հասարակական համակեցության և ընկերականության կանոնների խստագույն պահպանումը։

Ինքը Վ. Ի. Լենինը, ինչպես և կոմունիզմի գործի հաղթանակի պայքարում նրա մերձավորագույն զինակիցները՝ Յա. Մ. Սվերդլովը, Ն. Կ. Կրուպսկայան, Մ. Ի. Կալինինը, Ս. Գ. Շահումյանը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Մ. Վ. Ֆրունզեն, Ֆ. Է. Ձերժինսկին և շատ ու շատ ուրիշներ, որոնց մենք այսօր հպարտությամբ մեր կուսակցության «Լենինյան գվարդիա» ենք անվանում, իրենց հոգևոր կերպարում մարմնավորել են կոմունիստական բարոյականության այդ նշված գծերը և իրենց անբասիր կյանքով, իրենց անձնազոհ ու հերոսական հեղափոխական գործունեությամբ օրինակ ծառայել հազարների ու միլիոնների համար։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո անցած 56 տարիներին մեր երկրում իրականացված քաղաքական, տնտեսական ու մշակութային արմատական վերափոխումների արդյունքն այսօրվա մեր զարգացած սոցիալիստական հասարակությունն է, որ քայլում է մարդկային քաղաքակրթության առաջին գծում և կարող է հպարտանալ ո՛չ միայն տնտեսական ու մշակութային աննախընթաց նվաճումներով, այլև իր ներքին ու արտաքին քաղաքականության հետևողական հումանիզմով, բոլոր ճնշվող ու շահագործվող ժողովուրդների ազատագրության գործին իր վճռական ու արդյունավետ օգնությամբ, ժողովուրդների ու երկրների միջև խաղաղությունը պահպանելու և մարդկությանը կործանարար պատերազմներից զերծ պահելու գործում իր վիթխարի ավանդով։

Մեր հասարակության անհաղթահարելի ուժը պայմանավորված է ոչ միայն նրա քաղաքական, տնտեսական ու ռազմական հզորությամբ, այլև մեր դարաշրջանի միտքը, խիղճը և պատիվը հանդիսացող կոմունիստական կուսակցության գիտական ղեկավարությամբ, սովետական մարդկանց նոր, սոցիալիստական գիտակցությամբ։ Ամենաառաջավոր սոցիալական գաղափարներով և բարոյական ամենավսեմ հատկություններով, ամենաբարձր ու ամենաազնիվ մարդկային զգացմունքներով ու ձգտումներով բնորոշվող այդ նոր մարդը սոցիալիստական շինարարության ամենագլխավոր արդյունքներից մեկն է, կոմունիստական հասարակության հաջող կառուցման կարևոր երաշխիքը։ ՍՄԿԿ

XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևն արդարացիորեն նշեց, «Մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը, անկարելի է առաջ շարժել առանց իր՝ մարդու բազմակողմանի զարգացման։ Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական համապատասխան բազայի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110)։

Սովետական մարդկանց հոգևոր կերպարի նոր գծերը, նրանց բարոյական բարձր հատկությունները զանգվածաբար դրսևորվել են սոցիալիզմի կառուցման և նրա նվաճումների պաշտպանության գործում։ Առաջավոր մարդկությունը հիացմունքով է նշում անձնազոհության, հերոսության, հասարակական պարտքի բարձր գիտակցության, կուսակցության ու սովետական ժողովրդի վեհ նպատակներին անսահման նվիրվածության, նախաձեռնության ու հասարակական ակտիվության այն փայլուն դրսևորումները, որոնք երկրի ինդուստրացման ու կոլեկտիվացման, Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում, անապատների ու խոպան հողերի յուրացման, ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման ու տիեզերական տարածությունների նվաճման գործում ցուցաբերեցին միլիոնավոր ու միլիոնավոր սովետական մարդիկ։ Աշխատանքի ու կյանքի նկատմամբ նոր վերաբերմունքը, աշխատանքը ոչ թե սոսկ որպես գոյության աղբյուր, այլ որպես համահասարակական գործունեություն, պատվի ու փառքի գործ դիտելն աստիճանաբար դառնում է սովետական հասարակության, ինչպես և սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդների բարոյական նկարագրի բնորոշ կողմերից մեկը։ Այդ են վկայում խաղաղ շինարարության, գիտության ու տեխնիկայի, արվեստի ու գրականության բնագավառներում օրեցօր բազմապատկվող զանգվածային սխրանքները, մարդկային հարաբերությունների հետագա ազնվացումն ու բյուրեղացումը, մարդկանց զարգացման բազմակողմանիության անշեղ խորացումը, իսկական, կոմունիստական հումանիզմի ամենալայն դրսևորումը սոցիալիզմի երկրներում։

Այս բոլոր ակնառու և անհերքելի նվաճումները նշելիս, ճիշտ չէր լինի պատկերացնել, թե իբր լիովին ավարտվել է սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության գործը, և այդ բնագավառում այլևս խնդիրներ ու անելիքներ չկան։

Մեծ Լենինը սովորեցնում էր, որ երբեք չպետք է հանգստանալ հաջողություններով, չբավարարվել այսօրվա ձեռքբերածով, այլ ձգտել ո՛չ միայն հաղթահարելու այսօրվա թերին, այլև ձգտել նոր նվաճումների, նոր բարձունքների։ Նա մասնավորապես ընդգծում էր, «Աշխատանքի նոր կարգապահություն հաստատել, մարդկանց միջև հասարակական կապի նոր ձևեր ստեղծել, մարդկանց աշխատանքի ներգրավելու նոր ձևեր ու պրիոմներ ստեղծել,— դա շատ տարիների ու տասնամյակների աշխատանք է» (Երկեր, հ. 30, էջ 662)։

Այդ շնորհակալ և ազնիվ գործը հաստատակամորեն շարունակում է Լենինի հիմնադրած Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, որը վճռականորեն բացահայտելով մեր ժողովրդի բարոյա-քաղաքական դաստիարակության մարզում եղած թերություններն ու բացերը, մեր կյանքում դեռևս տեղ գտնող բացասական երևույթները, մշակում է դրանց հաղթահարման ուղիներն ու գործուն միջոցները։



ՍՄԿԿ XXIV համագումարին Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ ընկ. Բրեժնևը իրավացիորեն նշեց, որ «Սովետական մարդու նոր կերպարը, նրա կոմունիստական բարոյականությունն ու աշխարհայացքը հաստատվում են անցյալի մնացուկների դեմ մղվող մշտական, անզիջում պայքարով։ Չի կարող կոմունիստական բարոյականության հաղթանակ լինել, առանց վճռական պայքար մղելու նրա այնպիսի հակապատկերների դեմ, ինչպիսիք են շահամոլությունը, կաշառակերությունը, պորտաբուծությունը, զըրպարտությունը, անստորագիր նամակները, հարբեցողությունը և այլն» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 112)։

Մեր երկրում վաղուց արդեն չկան այնպիսի դասակարգեր, սոցիալական խավեր, որոնք հանդիսանային բուրժուական հոգեբանության ու բարոյականության մասսայական կրողներ։ Սակայն մեզ մոտ դեռևս փոքրաթիվ չեն ամենատարբեր բնագավառներում աշխատող մարդիկ, որոնք խախտում են աշխատանքի սոցիալիստական կարգապահությունը, չարաշահում և անձնական բարեկեցության համար օգտագործում իրենց պաշտոնական դիրքը, անձնական նեղ շահերը ավելի բարձր են դասում հասարակականից, ամբողջ սովետական ժողովրդի ու կոնկրետ կոլեկտիվի շահերից։ Կան նաև այնպիսիք, որոնք խուսափում են հասարակական աշխատանքից, փորձում են մասնավոր սեփականատիրական գործունեություն ծավալել, հարստություն կուտակել պետության և ժողովրդի հաշվին։ Այս և նման այլ երևույթների աղբյուրը այդ մարդկանց գիտակցության մեջ այս կամ այն ճանապարհով թափանցած և հոգեբանություն ու բարոյական սկզբունք դարձած բուրժուական և մանրբուրժուական ըմբռնումներն են։ Բայց հենց այդ փաստն ինքնին վկայում է, որ դրանց մասնակի պահպանման հիմնական պատճառներից մեկը մեր կազմակերպական ու դաստիարակչական աշխատանքներում եղած թերություններն են, այս կամ այն օղակներում, որոշ տեղերում մարդկանց բարոյա-քաղաքական կերպարի նկատմամբ պահանջկոտության թուլացումը, մեր հասարակության կենսագործունեության նորմերի և, մի շարք դեպքերում, պետական օրենքների ու կուսակցության կանոնադրական պահանջների խախտման նկատմամբ հանդուրժողականությունը։

Մեր հասարակությանը խորթ այդ երևույթների դեմ պայքարելիս անհրաժեշտ է մշտապես հիշել Վ. Ի. Լենինի ցուցումն այն մասին, որ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ամբողջ ժամանակաշրջանում դասակարգային պայքարի կիզակետերից մեկը մարդկանց գաղափարական ու բարոյական դաստիարակության խնդիրն է, սոցիալիստական հասարակության մարդկանց գիտակցությունը բուրժուական և մանրբուրժուական ավանդույթների, սովորույթների, ըմբռնումների մնացորդներից մաքրելու խնդիրը։ Վ. Ի. Լենինը բազմիցս զգուշացնում էր, որ չի կարելի թեթև վերաբերվել կոմունիստ և կոմունիստական բառերին, դրանք գործածել հարկի ու անհարկի։ Կոմունիստի կոչումը մարդուն պարտավորեցնում է ունենալ ո՛չ միայն որոշակի քաղաքական-գաղափարական համոզմունքներ, այլև որոշակի բարոյական սկզբունքներ, անհաշտ և անզիջող լինել սոցիալիստական հասարակության սկզբունքներն ու օրենքները, բարոյական նորմերը խախտողների նկատմամբ։ Դա, միաժամանակ, ավելի մեծ պատասխանատվություն է դնում հասարակության մեջ պետական և կուսակցական ղեկավար աշխատանքով զբաղված մարդկանց վրա, պահանջում է, որ նրանք անպայման նաև անձնական կյանքով ու անձնական

վարվելակերպով օրինակ ծառայեն հասարակության բոլոր անդամների համար։

Նոր մարդու բարոյա-քաղաքական նորմերը, որ գիտական ամենախիստ բարեխղճությամբ և կոմունիստական հետևողականությամբ հայտնաբերել և միասնական համակարգի էր բերել Վ. Ի. Լենինը, այժմ դարձել են ՍՄԿԿ անդամի, սովետական յուրաքանչյուր մարդու բարոյական բնութագրի չափանիշ և որպես կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքս ամրագրվել ՍՄԿԿ ծրագրում և կանոնադրության մեջ։ Այդ կոդեքսի կիրառումը և նրա նորմերի խստագույն պահպանումը սովետական մարդու բարոյական կերպարի հետագա զարգացման գրավականն են։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո մեր կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն և մյուս ղեկավար մարմինները մի շարք գործուն միջոցներ են ձեռնարկել սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության գործի հետագա բարելավման, մեր կյանքին, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսին անհարիր երևույթները հաղթահարելու, մեր հասարակության մեջ ստեղծելու բարոյական այնպիսի մթնոլորտ, որը նպաստեր սովետական մարդկանց կոմունիստական գիտակցության հետագա բարձրացմանը։ Այդ կլինի մեծ Լենինի ստեղծած գիտական տեսության հետագա իրագործման ու անվերապահ հաղթանակի մի նոր իրական վկայությունը։

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԾՐԱԳՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

Հ. Վ. ՀԱԿՈԲՅԱՆ

Սովետական պետության արտաքին քաղաքականության գլխավոր գիծը, նրա գոյության առաջին իսկ օրից, եղել է պայքարը համընդհանուր խաղաղության և սոցիալ-քաղաքական տարբեր սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության համար։ Խաղաղությունը եղավ անդրանիկ կոչը, որով նորաստեղծ բանվորա-գյուղացիական պետությունը դիմեց աշխարհին, իմպերիալիստական պատերազմը բնութագրելով որպես «...մարդկության դեմ ուղղված մեծագույն հանցագործություն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 297)։

Հաշտության մասին դեկրետ և ՍՄԿԿ XXIV համագումարում ընդունված խաղաղության ծրագիր— ահա միմյանց տրամագծորեն շաղկապված երկու պատմական փաստաթուղթ, որոնք եզրագծում են սովետական պետության արտաքին քաղաքականության ավելի քան հիսուն տարվա պատմությունը։ Այդ ժամանակամիջոցում ՍՄԿԿ և սովետական պետությունը, իրագործելով լենինյան պատգամները, անընդմեջ պայքարել են խաղաղության և ժողովուրդների ազատության ու անվտանգության համար։

Իրենց արտաքին քաղաքական գործունեության մեջ և, մասնավորապես, խաղաղության ու տարբեր սոցիալ-քաղաքական սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության սկզբունքն իրականացնելիս, ՍՄԿԿ և սովետական պետությունն առաջնորդվում են արտաքին քաղաքականության և դիվանագիտության խորապես դասակարգային բնույթի վերաբերյալ Վ. Ի. Լենինի դրույթներով։ Սովետական արտաքին քաղաքականության տեսական-գաղափարական հիմքը մարքսիզմ-լենինիզմի ուսմունքն է, որը հնարավորություն է ընձեռում գիտականորեն բացատրել միջազգային հարաբերությունների ամենաբարդ ու խճճված հանգույցները, բացահայտել երևույթների զարգացման տենդենցները, համակողմանիորեն վերլուծել դրանք և ընդունել հիմնավորված հեռանկարային որոշումներ։

* * *

Տարբեր հասարակական-քաղաքական սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հարցին Վ. Ի. Լենինը անդրադարձել է դեռևս առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, մասնավորապես, «Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին», «Պրոլետարական հեղափո-

խության ռազմական ծրագիրը» և «Ռուսական հեղափոխության արտաքին քաղաքականությունը» աշխատություններում:

Մեկ առանձին վերցրած երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության վերաբերյալ Վ. Ի. Լենինի գիտական հետևությունը, որը բխում էր իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի անհամաչափ (թռիչքաձև) զարգացման օրինաչափությունից, պահանջում էր պատասխանել այն հարցին, թե ինչպիսին պետք է լինեն հաղթանակած սոցիալիզմի երկրի հարաբերությունները շրջապատող կապիտալիստական պետությունների հետ:

Պրոլետարական հեղափոխության լենինյան տեսությունից հետևում էր, որ կապիտալիզմի փոխարինումը սոցիալիզմով մի ամբողջ դարաշրջան ընդգրկող երկարատև պատմական պրոցես է, որի ընթացքում երկու հակամարտ սիստեմները չեն կարող լինել միմյանցից բացարձակապես մեկուսացված, առանց որոշակի և որոշ տնտեսական, քաղաքական և մշակութային կապերի: Ինչպիսի՞ն պետք է լինի այդ կապերի բնույթը և ինչպե՞ս են նրանք համատեղվում բանվոր դասակարգի և կոմունիստական կուսակցությունների վերջնական նպատակների հետ: Ահա այն խնդիրները, որոնք ունեին ոչ միայն տեսական, այլև կենսական, գործնական նշանակություն սովետական իշխանության համար: Պետք է ասել, որ լենինիզմը այդ խնդիրները վճռեց դիալեկտիկական մտածելակերպի դիրքերից և կյանքն ապացուցեց նրա եզրահանգումների ճշտությունը:

Մարքսիզմ-լենինիզմը գտնում է, որ սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների միջև տնտեսական, քաղաքական և մշակութային հարաբերությունները, որպես խաղաղ գոյակցության գաղափարի կոնկրետ, գործնական մարմնավորում, մրցության հարաբերություններ են: Ուստի, խաղաղ գոյակցությունը դասակարգային պայքարի ուրույն ձև է, որը բացառում է երկու սիստեմների ռազմական բախումը: Վ. Ի. Լենինն իր հետհոկտեմբերյան աշխատություններում, ելույթներում և ճառերում խաղաղ գոյակցության սկզբունքը հիմնավորեց որպես սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության գլխավոր գիծը: 1922 թ. դեկտեմբերի 28-ին Սովետների համառուսաստանյան X համագումարն աշխարհի բոլոր ժողովուրդներին հղած դիմումի մեջ գրում էր. «Սովետական իշխանությունը, որը ծնվել է հեղափոխությունից, սկսել է իր գործունեությունը 1917 թվականի ընդհանուր արդարացի հաշտության կոչով: Այն ժամանակից ի վեր նա անընդմեջ ընդգծել է իր արտաքին քաղաքականության հիմնական գիծը» («Известия», 28 декабря, 1922):

Սովետական պետության խաղաղասիրական քաղաքականությունը պայմանավորված է սոցիալիստական արտադրահարաբերությունների բնույթով, բանվոր դասակարգի սոցիալական էությամբ: Բանվոր դասակարգը սկզբունքորեն մերժում է մասնավոր սեփականությունը և նրան խորթ են մարդու կողմից մարդու և մի ազգի կողմից մի այլ ազգի շահագործման ձգտումները:

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր միջազգային հարցերը վերլուծելիս փնտրել, գտնել արտադրահարաբերություններում հասարակական երևույթների արմատները և դրանք հանգեցնել որոշակի դասակարգերի շահերին: Մարքսիզմ-լենինիզմը քաղաքականությունը դիտում է որպես տնտեսության խտացված արտահայտություն, ընդ որում արտաքին քաղաքականությունը ներքին քաղաքականության շարունակությունն է: Դրանք չի կարելի անջատել միմյանցից



և առավել ևս՝ հակադրել միմյանց: Դրանք փոխադարձաբար պայմանավորում են մեկը մյուսին և կանխորոշվում տվյալ պետության հասարակարգի էությամբ, տիրող դասակարգերի գաղափարախոսությամբ ու շահերով: Արտաքին քաղաքականությունը որոշակի դասակարգային հարաբերությունների արտացոլումն է միջազգային ասպարեզում: Սոցիալիստական լագերի արտաքին քաղաքական հարաբերությունները կապիտալիստական աշխարհի հետ՝ դասակարգային պայքարի հարաբերություններ են: Դրանց նպատակն է արտաքին քաղաքական բարենպաստ պայմաններ ստեղծել սոցիալիստական և կոմունիստական շինարարության համար: Միաժամանակ սոցիալիստական պետությունն իր արտաքին քաղաքականությամբ պետք է նպաստի համաշխարհային հեղափոխական պրոցեսի հետագա զարգացմանն ու խորացմանը, որը չի սահմանափակվում սոցիալիստական լագերի ներքին հաջողություններով (տնտեսական շինարարություն, կուլտուրական հեղափոխություն, ազգային հարցի լուծում, քաղաքական վերնաշենքի ձևավորում ու գործունեություն). սրանք ինքնըստինքյան արտաքին քաղաքական մեծ նշանակություն ունեն և ներգործում են այդ պրոցեսի վրա: Սոցիալիզմի արտաքին քաղաքականության առաջնահերթ խնդիրն է՝ ամեն կերպ նպաստել հեղափոխական շարժման զարգացմանն ինչպես կապիտալիստական, այնպես էլ գաղութային ու կիսագաղութային երկրներում: Լենինյան այս դրույթը ո՛չ միայն չի հակասում խաղաղության համար մղվող պայքարին և խաղաղ գոյակցության սկզբունքին, այլև դրանց հետ գտնվում է դիալեկտիկական սերտ միասնության մեջ:

Սոցիալիստական հասարակարգում չկա մասնավոր սեփականություն և, հետևաբար, շահագործողական դասակարգեր ու խմբեր, որոնք ձգտեին պատերազմի և անեքսիաների: Սովետական Միությունը լիովին ապահովված է այն ամենով, ինչ անհրաժեշտ է տնտեսությունը հարաճուն տեմպերով զարգացնելու համար և կարիք չունի հումքի աղբյուրների ու վաճառահանման շուկաների: Նրա համար չեն գործում կապիտալիստական հասարակության յուրահատուկ օրինաչափությունները: Տնտեսության պլանաչափ զարգացումը բացառում է արտադրության անարխիան և գերարտադրության ճգնաժամերը: Հետևաբար, ՍՍՀՄ-ը կարիք չունի մասնակցելու աշխարհի վերաբաժանման պայքարին: Սոցիալիստական պետության համար խաղաղության ապահովումը կենսական խնդիր է, տնտեսական շինարարության հաջողության արտաքին քաղաքական պայմանը:

Խաղաղ գոյակցությունը ենթադրում է նորմալ առևտրա-տնտեսական և գիտա-տեխնիկական հարաբերություններ և համագործակցություն հակամարտ սիստեմների երկրների միջև, սեփականության երկու տարբեր, հակադիր ձևերի վրա կառուցված տնտեսությունների խաղաղ մրցություն: Արդի աշխարհի դեմքը որոշվում է «...երկու եղանակների, երկու ֆորմացիաների, երկու տնտեսությունների՝ կոմունիստական ու կապիտալիստական տնտեսությունների մրցությամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 574):

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի հրապարակած թեզիսներում ասված է, որ այդ մրցության ներկա փուլում առանձնապես հրատապ են հնչում Լենինի խոսքերն այն մասին, որ համաշխարհային հեղափոխության վրա սոցիալիզմի ներգործության գլխավոր լծակը նրա տնտեսական քաղաքականությունն է, կապիտալիզմի արտադրաուժերին գերազանցող նոր հասարակարգի տեխնիկա-տնտեսական հիմքի ստեղծումը: «Կլուծենք այդ

խնդիրը և այն ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով հաստատապես ու վերջնականապես» (Երկեր, հ. 32, էջ 562):

Այս խոսքերն ասվել են 1920-ական թվականների սկզբին, երբ սովետական պետությունն ապրում էր անասելի ծանր օրեր, մաքառելով անցյալից ժառանգած հետամնացության, անգրագիտության, տնտեսական քայքայվածության, սովի և համաճարակների ճիրաններում:

Սոցիալիստական պետության ծննդյան օրից անցել է 56 տարի: Շնորհիվ զարգացման բարձր տեմպերի ՍՍՀՄ-ը իր տնտեսական հզորությամբ դարձել է աշխարհի երկրորդ տերությունը, իսկ արդյունաբերական արտադրանքի մի շարք կարևոր տեսակների (քարածուխ, պողպատ, չուգուն, երկաթաքար, ցեմենտ, տրակտորներ, լոկոմոտիվներ և այլն) արտադրությամբ առաջ է անցել կապիտալիստական ամենահարուստ տերությունից՝ ԱՄՆ-ից:

1972 թ. երկու երկրների արտադրանքը կազմել է

| Արտադրանքի տեսակը | Չափի միավորը | ՍՍՀՄ | ԱՄՆ |
|---|---|---|---|
| Քարածուխ | մլն տ | 655 | 539 |
| Երկաթաքար | » | 208 | 44 |
| Չուգուն | » | 92,3 | 81 |
| Պողպատ | » | 126 | 121 |
| Պողպատի գլանվածք | » | 94,5 | 83 |
| Ցեմենտ | » | 104,3 | 71 |
| Տրակտորներ (առանց այգեբանջարանոցայինի) | հազար հատ | 478 | 218 |

Անհրաժեշտ է նշել, որ իր գոյության 56 տարիներից առնվազն 16-ը սովետական պետությունը գործադրել է քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմներում և էկոնոմիկայի հետպատերազմյան վերականգնման համար:

Փաստերն անհերքելիորեն ապացուցում են, որ կապիտալիզմի հետ խաղաղ տնտեսական մրցությունում սոցիալիզմը անպայման կհաղթի: Հետևապես, իր իդեալները տարածելու համար այն կարիք չունի պատերազմի: Սոցիալիզմի զենքը տնտեսության կազմակերպման, բնակչության կենսամակարդակի և մշակույթի բարձրացման գործում կապիտալիզմի հանդեպ ունեցած առավելությունն է, սոցիալական անհավասարության և ազգերի փաստական անիրավահավասարության վերացումը:

ՍՄԿԿ Կենտկոմի XXIV համագումարին տված հաշվետվության մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց. «Սովետական Միությունը իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը հակադրում է խաղաղության ակտիվ պաշտպանության և միջազգային անվտանգության ամրապնդման քաղաքականությունը» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 301):

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած ժամանակամիջոցում միջազգային իրադրության մեջ կատարվել են զգալի տեղաշարժեր, որոնք, ամենից առաջ, արդյունք են ՍՄԿԿ Կենտկոմի, նրա քաղբյուրոյի և սովետական կառավարության խաղաղասիրական համառ ջանքերի, համագումարի առաջադրած խաղաղության ծրագրի անշեղ իրականացման: Եվրոպայում իրադրության նորմալացման և լարվածության մեղմացման համար որոշիչ նշանակություն ունեցավ պայմանագրերի ստորագրումը ՍՍՀՄ-ի ու ԳՖՀ-ի և Լեհաստանի ու ԳՖՀ-ի միջև: Սովետա-արևմտագերմանական և լեհ-արևմտագերմանական



պայմանագրերով վերջնականապես ճանաչվեցին երկրորդ համաշխարհային պատերազմի և հետպատերազմյան զարգացման արդյունքները:

Եվրոպայում լարվածության մեղմացման և իրադրության նորմալացման համար կարևոր է սովետա-ֆրանսիական ավանդական հարաբերությունների հաջող զարգացումը: Գնալով ամրապնդվում են փոխշահավետ կապերը Իտալիայի, Ֆինլանդիայի և Սկանդինավյան երկրների հետ: Որոշակիորեն բարելավվում են հարաբերությունները Անգլիայի հետ: Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների ջանքերով Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության և համագործակցության սիստեմի ստեղծման գաղափարը դրվել է գործնական հիմքի վրա: Վիեննայում սկսվել են բանակցություններ՝ Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման շուրջ:

Դրական տեղաշարժեր են կատարվել սովետա-ամերիկյան հարաբերություններում: ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Նիքսոնի Սովետական Միություն և ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ԱՄՆ կատարած այցի ժամանակ ստորագրվեցին կարևոր փաստաթղթեր, այդ թվում՝ երկու երկրների փոխհարաբերությունների հիմունքների մասին համաձայնությունը, միջուկային պատերազմը կանխելու վերաբերյալ անժամկետ, ստրատեգիական հարձակողական սպառազինությունները սահմանափակելու վերաբերյալ առաջին համաձայնագրերը: Արագորեն ընդլայնվում է սովետա-ամերիկյան փոխշահավետ առևտրատնտեսական և գիտատեխնիկական համագործակցությունը:

Այժմ միջազգային իրադրությունը բնորոշվում է լարվածության թուլացմամբ, տարբեր սիստեմներ ունեցող երկրների միջև խաղաղ գոյակցության և համագործակցության գաղափարի հարաճուն ամրապնդմամբ:

Ներկայումս Արևմուտքի պետական և քաղաքական որոշակի շրջաններ ավելի հեռուն են նայում, գիտակցելով թե ինչպիսի ծանր հետևանքներ կունենար համայն մարդկության համար հրթիռա-միջուկային պատերազմը: Բանակցելով այդ շրջանների հետ, ՍՄԿԿ և սովետական պետությունը հետևում են Վ. Ի. Լենինի այն ցուցումներին, որ մեզ համար միևնույնը չէ, թե ում հետ գործ ունենք, բուրժուական լագերի ա՞յն ներկայացուցիչների, որոնք թեքվում են դեպի հարցի ռազմական լուծումը, թե՞ նրանց հետ, ովքեր հակվում են դեպի պացիֆիզմը:

Մյուս կողմից իմպերիալիզմը ժամանակ առ ժամանակ ստիպված է նահանջել ժողովուրդների ազատագրական շարժման համառության ու հաստատակամության և համաշխարհային հասարակական կարծիքի առջև, ինչպես այդ տեղի ունեցավ Վիետնամում: Դրա հետ մեկտեղ իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության ռեցիդիվները, սպառազինության չդադարող մրցավազքը, հրթիռամիջուկային զենքի վիթխարի պաշարների առկայությունը և դրա արգելման վերաբերյալ համընդհանուր համաձայնության բացակայությունը, պատերազմի պոտենցիալ օջախների առկայությունը Հեռավոր Արևելքում, Հարավ-Արևելյան Ասիայում, Մերձավոր Արևելքում, իմպերիալիզմի կոպիտ միջամտությունները այլ երկրների ներքին գործերին, ագրեսիվ ռազմական բլոկների գոյությունը, նեոգաղութակալական ոտնձգությունները «երրորդ աշխարհի» երկրների դեմ, ստիպում են աչալուրջ լինել:

Մոսկվայում կայացած խաղաղասեր ուժերի համաշխարհային կոնգրեսը իր կոմյունիկեում նշեց, որ «Լարվածության թուլացումն ուղեկցվում է այլ շըր-

ջաններում լարվածության պայթյուններով և ագրեսիայով, որն անխուսափե-
լիորեն չարագուշակ կնիք է դնում առհասարակ միջազգային հարաբերություն-
ների վրա: Սպառազինությունների մրցավազքը թուլացնելու ջանքերը հանդի-
պում են ռազմա-արդյունաբերական կոմպլեքսների, միլիտարիստական, բա-
ցահայտ ֆաշիստական և ռասիստական վարչակարգերի լուրջ դիմադրությանը:
Չնայած ապագաղութացման պրոցեսին, գաղութակալությունը զանազան ձևե-
րով դեռևս ժողովուրդներին զրկում է անկախությունից և իրենց երկրներում
լիիշխան տեր լինելու նրանց անկապտելի իրավունքից: Կանխամտածված փոր-
ձեր են արվում վերածնելու «սառը պատերազմը» և դրանով իսկ արգելակելու
միջազգային մթնոլորտի՝ վերջին ժամանակներս տեղի ունեցող առողջացումը»:

* * *

ՍՄԿԿ լենինյան արտաքին քաղաքականությանը խորթ են խաղաղության
պացիֆիստական ըմբռնումները: Հանուն խաղաղության ակտիվ պայքարն ան-
համատեղելի է քաղաքական ստատուս-քվոյի պահպանման գաղափարի հետ:
Խաղաղասեր ուժերի Մոսկվայի կոնգրեսը, անդրադառնալով այս հարցին, որո-
շակիորեն նշեց, որ խաղաղությունը չի կարող ապահովվել առանց պետու-
թյունների խաղաղ գոյակցության սկզբունքի համընդհանուր գործնական ճա-
նաչման: Սակայն կոնգրեսը միաժամանակ ընդգծեց, որ «Խաղաղ գոյակցու-
թյունը սոսկ պատերազմի բացակայություն չէ...

Խաղաղ գոյակցությունը չի նշանակում հաշտվել անարդարության հետ,
ընդհակառակն, այն ենթադրում է արդյունավետ հակահարված տալ ագրեսիա-
յին և ապահովել ժողովուրդների իրավունքը՝ բոլոր անհրաժեշտ միջոցներով
պայքարելու իրենց քաղաքական ու տնտեսական ազատագրության, սոցիա-
լական առաջադիմության համար, ազատորեն ընտրելու իրենց բախտը, առանց
որևիցե արտաքին միջամտության»: «Խաղաղություն ամեն գնով» լոզունգը ընդ-
հանուր ոչինչ չունի մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական ուսմունքի հետ,
ուսմունք, որը չի մերժել և չի մերժում սոցիալական և ազգային ազատագրա-
կան շարժումների առաջադիմական նշանակությունը: Խաղաղ գոյակցության
քաղաքականությունը իմպերիալիզմի հետ «համաձայնողականություն» չէ, որը
յուրահատուկ է աջ օպորտունիզմին: ՍՄԿԿ երբեք չի նահանջել կոմունիստների
մեծ նպատակից՝ բուրժուական շահագործման դեմ պայքարից, չի թուլացրել
պայքարն իմպերիալիզմի դեմ: Պատերազմի դատապարտումը չի նշանակում
«չարին չընդդիմանալու» քաղաքականություն: Ընդհակառակը, իր արտաքին
քաղաքականությամբ ՍՄԿԿ նպաստում է արդիականության երեք հիմնական
հեղափոխական ուժերը՝ սոցիալիզմը, միջազգային բանվոր դասակարգի սո-
ցիալ-քաղաքական պայքարը և ժողովուրդների ազգային-ազատագրական
պայքարը մեկ ընդհանուր հակաիմպերիալիստական հոսանքի մեջ համախմ-
բելուն: Հենց այդ ուժերի միասնական, համատեղ պայքարն էլ ամփոփում է
համաշխարհային հեղափոխական պրոցեսի բովանդակությունը: Լ. Ի. Բրեժնևը
ՍՄԿԿ XXIV համագումարում նշեց. «...մենք հայտարարում ենք, որ հետևո-
ղականորեն վարելով խաղաղության և ժողովուրդների բարեկամության քա-
ղաքականություն, Սովետական Միությունն այսուհետև ևս վճռական պայքար
կմղի իմպերիալիզմի դեմ, ուժգին հակահարված կհասցնի ագրեսորների մե-
քենայություններին և դիվերսիաներին: Մենք, ինչպես որ առաջ, անշեղորեն



կպաշտպանենք ժողովուրդների պայքարը հանուն դեմոկրատիայի, ազգային
ազատագրության և սոցիալիզմի» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 304):

Իր արտաքին քաղաքականության մեջ ՍՄԿԿ ելնում է սովետական ժողո-
վրդի ազգային և ինտերնացիոնալ խնդիրների անխզելի միասնությունից:
Պրոլետարական ինտերնացիոնալիզմը եղել և մնում է որպես ՍՍՀՄ արտաքին
քաղաքականության գլխավոր բնութագրող հատկանիշը: Վ. Ի. Լենինը նշում էր.
«Գործով ինտերնացիոնալիզմը մեկ և միայն մեկ է՝ անձնվեր աշխատանք իր
երկրում հեղափոխական շարժումն ու հեղափոխական պայքարը զարգացնելու
համար, նույնպիսի պայքարին և նույնպիսի գծին աջակցելու համար (պրոպա-
գանդայով, համակրանքով, նյութապես), և միմիայն այդ պայքարին աջակցելու
համար առանց բացառության բոլոր երկրներում» (Երկեր, հ. 24, էջ 72):

ՍՍՀՄ արտաքին քաղաքականության կարևոր խնդիրն է՝ հնարավոր բոլոր
միջոցներով օժանդակել սոցիալական ու ազգային ազատագրության համար
մարտնչող ուժերին բոլոր մայրցամաքներում: ՍՄԿԿ և սովետական պետու-
թյունը հետևողականորեն և հաստատակամ, դասակարգային սկզբունքայնու-
թյան դիրքերից կատարել և կատարում են այդ խնդիրը: Այդ են վկայում ՍՍՀՄ
բարոյա-քաղաքական, դիվանագիտական և նյութական մեծ օգնությունը
Վիետնամի հերոսական ժողովրդին՝ ամերիկյան իմպերիալիզմի դեմ մղած
ծանր պատերազմում, աջակցությունը՝ արաբական ժողովուրդներին ընդդեմ
իսրայելական ագրեսիայի, Մոզամբիկի, Անգոլայի և Գվինեա-Բիսաուի հայ-
րենասերների ազատագրական շարժմանը՝ ընդդեմ պորտուգալական գաղութա-
րարների: Սովետական Միությունը վճռականորեն պաշտպանում է Հարավ-Աֆ-
րիկյան Հանրապետության և Հարավային Ռոդեզիայի աֆրիկացի բնակչության
պայքարն ընդդեմ ռասիզմի և ապարտհեյդի: ՍՍՀՄ-ը անվերապահորեն, հեղա-
փոխական սկզբունքայնությամբ դատապարտեց ֆաշիստական խունտայի խուն-
Չիլիում, չճանաչեց իշխանությունը բռնի ուժով առևանգած զինվորական խուն-
տայի կառավարությանը և իր համերաշխությունը հայտնեց Չիլիի աշխատա-
վորներին ու առաջադիմական ուժերին: Միաժամանակ Սովետական Միու-
թյունը օգնում է գաղութային լուծը թոթափած երկրներին՝ ամրապնդելու իրենց
քաղաքական և տնտեսական անկախությունը՝ այդ ամենը հմտորեն զուգակցե-
լով խաղաղ գոյակցության քաղաքականության հետ:

Կոմունիստները գտնում են, որ կապիտալիզմի և սոցիալիզմի միջև խա-
ղաղ գոյակցությունը միջազգային մասշտաբով ընթացող դասակարգային
պայքարի առանձնահատուկ ձև է: Այն ստեղծում է ավելի բարենպաստ պայ-
մաններ կապիտալիստական երկրների բանվոր-դասակարգի հեղափոխական
շարժման հաղթանակի համար, հեշտացնում է գաղութային և կախյալ երկրնե-
րի ժողովուրդների պայքարը հանուն անկախության: Հետևաբար, խաղաղ գո-
յակցությունը նպաստում է համաշխարհային հեղափոխական պրոցեսի խո-
րացմանը և զարգացմանը: Միանգամայն անհիմն է բուրժուական պատմա-
բանների, սոցիոլոգների և պետական ու քաղաքական գործիչների այն պնդումը,
թե իբր կոմունիստները երազում են պատերազմ, որովհետև պատերազմները
ծնում են հեղափոխություն: Արհեստականորեն, պատերազմների միջոցով
համաշխարհային հեղափոխությունը «առաջ մղելու» կամ արագացնելու տեսակետը
հատուկ է «ձախ» արկածախնդիրներին և ոչ մի ընդհանուր բան չունի մարքսիզմ-լենինիզմի
ուսմունքի հետ: «...կարծում են,— այդ առթիվ գրել է Վ. Ի. Լենինը,— որ միջազգային
հեղափոխության շահերը պա-

հանջում են առա՜ջ մղել այն, իսկ այդպիսի առաջմղում կհանդիսանար միմիայն պատերազմը և ոչ երբեք հաշտությունը... Նման «թեորիան» կատարելապես հակառակ կլիներ մարքսիզմին, որը միշտ ժխտել է հեղափոխությունների «առաջմղումը», որոնք զարգանում են հեղափոխություններ ծնող դասակարգային հակասությունների սրության հասունանալուն համընթաց» (Երկեր, հ. 27, էջ 66)։

Սոցիալիզմի վերջնական հաղթանակը միջազգային մասշտաբով ոչ մի տարակուսանք չի հարուցում։ Այդ է ապացուցում համաշխարհային-պատմական զարգացումը։ Ուստի, այդ հաղթանակը նվաճելու համար կոմունիստները կարիք չունեն դիմելու պատերազմի միջոցին, որը ժամանակակից զանգվածային բնաջնջման զենքի կիրառման պայմաններում աղետալի հետևանքներ կունենար ողջ մարդկության համար։

Հակասովետիզմի և հակակոմունիզմի «տեսաբանները» պնդում են նաև, որ խաղաղ գոյակցության սկզբունքը Սովետական Միության համար յուրօրինակ «տրոյական ձի» է, տակտիկական խաղ, մանևր, որի նպատակն է բթացնել կապիտալիստական պետությունների «զգոնությունը» և հեղափոխությունը տարածել առանց պատերազմի ռիսկի։ Սակայն հեղափոխությունն արտահանելու «տեսությունը» նույնքան խորթ է լենինիզմին, որքան և համաշխարհային հեղափոխական պրոցեսը պատերազմական հաջորդական պոռթկումների արդյունքների շղթա պատկերացնելը։ Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ հեղափոխությունն անհնար է առանց հեղափոխական իրադրության, այն ենթադրում է մի շարք օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների առկայություն, որոնք ոչ մի կերպ չեն կարող ներմուծվել դրսից։ Ինչպես դիպուկ ասել է Ռոմեն Ռոլանը, ազատությունը Բուրբոնները չեն, որոնց կարելի է ներս բերել սայլերի վրա դրած։

Խաղաղասիրական արտաքին քաղաքականության նպատակները անպատասխանատու կերպով խեղաթյուրում են նաև չինական ղեկավարները՝ հաճախ կրկնելով Արևմուտքի հակասովետական և հակակոմունիստական շրջանների պրոպագանդիստական հերյուրանքները։ Ավելին, մաոական ղեկավարությունը և պաշտոնական մամուլն առաջ են քաշում սեփական վարկածներ, երբեմն խաղաղ գոյակցությունը անվանելով այն գինը, որով իբր ՍՍՀՄ-ը համաշխարհային հեղափոխության շահերը վաճառել է միջազգային իմպերիալիզմին, երբեմն էլ այն որակելով որպես երկու «գերտերությունների» (ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի) գործարքը՝ աշխարհը միմյանց միջև ազդեցության ոլորտների բաժանելու նպատակով։

Պեկինը հանդես է գալիս Եվրոպայում և Ասիայում կոլեկտիվ անվտանգության սիստեմներ ստեղծելու դեմ։ Միաժամանակ իրենց մեծապետական, շովինիստական հեգեմոնիստական հավակնությունները սքողելու համար Պեկինի կառավարողներն աղմկում են Չինաստանին «հյուսիսից սպառնացող» վտանգի մասին։ Նրանք հակասովետիզմի ասպարեզում գերազանցել են Արևմուտքի բուրժուական հետադիմական պրոպագանդայի առավելագույն «նվաճումները»։

Սակայն չինական ղեկավարության հակասովետական ոտնձգությունները արժանի հակահարված են ստանում ինչպես միջազգային կոմունիստական շարժման, այնպես էլ բոլոր երկրների խաղաղասեր ուժերի կողմից։



* * *

Չնայած Սովետական Միության լենինյան խաղաղասիրական արտաքին քաղաքականության վրա աջից և «ձախից» տեղացող հարվածներին, այն նորանոր համախոհներ է շահում ամբողջ աշխարհում։ ՍՍՀՄ-ի, ինչպես և սոցիալիստական մյուս երկրների արտաքին քաղաքականության հաջողությունը մեծապես կախված է նրանց տնտեսական հզորության շարունակական աճից, համախմբվածությունից և գործողությունների միասնությունից։ Ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, մեր դասակարգային քաղաքականության արդյունավետության գլխավոր նախադրյալը ամբողջ սոցիալիստական համագործակցության և յուրաքանչյուր սոցիալիստական երկրի հաջող զարգացումն է։ Սոցիալիստական երկրների համախմբվածությունը, նրանց սերտ փոխգործողությունն ընկած են այն ամենի հիմքում, ինչին նրանք հասել են լարվածության մեղմացման խնդրում։

ՍՍՀՄ-ը իրավամբ համարվում է միջազգային խաղաղության և համագործակցության դրոշակակիր։ Դրա լավագույն ապացույցն է խաղաղության կողմնակիցների շարժման պատմության մեջ մեծագույն և ամենաներկայացուցչական համաժողովը՝ Մոսկվայում գումարված խաղաղասեր ուժերի համաշխարհային կոնգրեսը։ Աշխարհի խաղաղասեր ուժերը, համաշխարհային հասարակայնությունը կրկին բարձր գնահատեցին սովետական արտաքին քաղաքականության ձեռք բերած հաջողությունները։

Ղեկավարվելով արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքներով, ՍՍՀՄ-ը, ինչպես միշտ, հաստատակամորեն պայքարում է հանուն համընդհանուր խաղաղության, դրանով իսկ բարենպաստ պայմաններ ապահովում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման, սոցիալ-դասակարգային և ազգային-ազատագրական պայքարի հետագա զարգացման համար։

# ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**

Ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված
աշխատավորական Սովետական Հայաստանին։

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**

*Պատմական այս խոսքերով դիմեց աշխատավոր մարդկության հանճարեղ
առաջնորդ և ուսուցիչ, Սովետական Միության կոմունիստական կուսակցու-
թյան ու սովետական պետության հիմնադիր ու ղեկավար Վ. Ի. Լենինը մեծ
Հոկտեմբերի փոթորիկներում, կարմիր նոյեմբերին ծնված Սովետական Հա-
յաստանի աշխատավորությանը։*

*Հայ ժողովուրդն անսահման սիրով ու երախտագիտությամբ է տոգոր-
ված Վ. Ի. Լենինի նկատմամբ, որի հանճարով է լուսավորված նրա վարգաց-
ման ու բարգավաճման ուղին։*

*Հայ ժողովրդի ազատագրական պայքարի կոնկրետ ուղիների մասին
Վ. Ի. Լենինը խոսել է դեռևս իր վաղ շրջանի, XIX դարի վերջի և XX դարի
սկզբի աշխատություններում։ 1895 թ. գրած «Ֆրիդրիխ Էնգելս» հոդվածում
Լենինը նշում էր. «Միմիայն ազատ Ռուսաստանը, որ կարիք չունի ո՛չ լեհերին,
ֆիններին, գերմանացիներին, հայերին ու մյուս մանր ժողովուրդներին ճնշե-
լու, և ո՛չ էլ Ֆրանսիային ու Գերմանիային շարունակ իրար դեմ սրելու,—
հնարավորություն կտա արդի Եվրոպային ազատ շունչ քաշելու ռազմական
բեռից, կթուլացնի Եվրոպայի բոլոր ռեակցիոն տարրերին և կմեծացնի եվրո-
պական բանվոր դասակարգի ուժը» (Երկեր, հ. 2, էջ 17)։*

*1903 թ. «Իսկրա» թերթում Լենինը հրապարակում է իր «Հայ սոցիալ-դե-
մոկրատների մանիֆեստի մասին» հոդվածը, ուր ողջունում է Թիֆլիսում
հիմնադրված «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» գործունեությունը և
մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածքը տալու նրա ուշագրավ փորձը։
Լենինը գտնում էր, որ ցարական կայսրության լծի տակ տառապած բոլոր ժո-
ղովուրդները պետք է համատեղ պայքարեն ընդհանուր թշնամու դեմ, համա-
խմբվեն Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատի և նրա մարքսիստա-*



*կան ինտերնացիոնալիստական կուսակցության, ռուս առաջավոր բանվոր դա-
սակարգի շուրջը, պարզեն սոցիալիստական հեղափոխության դրոշը, որը
միայն դասակարգային պայքարի, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատ-
ման միջոցով ազատություն կբերի Ռուսաստանի բոլոր ճնշված ժողովուրդնե-
րին, այդ թվում նաև հայ ժողովրդին։*

*Վ. Ի. Լենինը իր ողջ կյանքը նվիրեց այդ մեծ ու հերոսական գործին՝ բար-
ձրը պահելով պրոլետարական հեղափոխության դրոշը. դեպի սոցիալիստա-
կան հեղափոխություն առաջնորդեց Ռուսաստանի ժողովուրդներին, այդ թվում՝
Հայաստանի աշխատավորությանը, կազմակերպեց նրանց պայքարը հանուն
սովետական իշխանության, ինքնուրույն ու ազատ սովետական հանրապետու-
թյունների ստեղծման։*

*Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ ու ջերմ հոգատարությամբ աճեց պրոլե-
տարական հեղափոխականների մի փայլուն սերունդ, որտեղ ռուս, ուկրաինա-
ցի, բելոռուս, վրացի, հայ և այլ ժողովուրդների լավագույն զավակների կող-
քին իրենց արժանավոր տեղն ունեն նաև Իսահակ Լալայանցը, Բոգդան Կնուն-
յանցը, Ստեփան Շահումյանը, Սուրեն Սպանդարյանը, Կամոն, Ալեքսանդր
Մյասնիկյանը, Հայաստանում Մայիսյան հերոսական ապստամբության, սովե-
տական կարգերի հաստատման ու ամրապնդման համար պայքարած շատ
անձնվեր հերոսներ և այլ հայ լենինյաններ։*

*Իրականացնելով Լենինի ցուցումները, ցարիզմի, բուրժուազիայի, դաշ-
նակցական և այլ նացիոնալիստների դեմ անձնվեր պայքարում այդ հերոս-
ները համախմբում էին Հայաստանի աշխատավորությանը կոմունիստական
կուսակցության շուրջը, ազատագրական մարտերի էին առաջնորդում նրանց՝
հանուն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, սովետական իշխա-
նության ստեղծման ու ամրապնդման, սոցիալիզմի կառուցման։*

*Հայաստանում սովետական իշխանության, սոցիալիզմի կառուցման ողջ
պատմությունը հիմնովին հերքում է պատմության բուրժուական կեղծարար-
ների, դաշնակցական վտարանդիների այն հերյուրանքները, որոնք սուր ճո-
ճելով լենինյան ազգային քաղաքականության դեմ, ճգնում են ցույց տալ, թե
իբր Վ. Ի. Լենինը «խորթ է եղել հայ ժողովրդին», «չի արտահայտել ու պաշտ-
պանել» նրա կենսական շահերը, նրա նկատմամբ վարել է մեծապետական,
զաղութատիրական քաղաքականություն։ Թուրքական ստահոդ վկայություննե-
րով հորինված «Լենինը, բոլշևիկ կուսակցությունն ու «Հայության փրկությու-
նը»» հոդվածում, տպագրված Հայաստանում Մայիսյան ապստամբության դա-
հիճ Կարո Սասունու՝ Բեյրութում հրատարակվող «Բագին» դաշնակցական
հանդեսում, սևով սպիտակի վրա գրված է, որ իբր «տարված համաշխարհա-
յին հեղափոխության երազներով և «իմպերիալիստ պետությունների» դեմ
պայքարելու և նախկին Ռուսաստանը վերականգնելու նպատակով՝ Լենինն ու իր
ընկերները բացարձակապես անբարյացակամ էին Հայաստանի հանդեպ»։*

*Լենինի ու լենինյան կուսակցության նկատմամբ նման զրպարտություննե-
րը վաղուց են մերկացրել հայ ժողովրդի լավագույն զավակները՝ հայ բոլշևիկ-
ները։ Դեռևս 1918 թ. Բաքվի հերոսական Կոմունայի ծանր օրերին «Բակինսկի
ռաբոչի» թերթում հրապարակված «Անազնիվ զրպարտիչներ» հոդվածում, դի-
մելով դաշնակցականներին, աջ էսեռներին ու մենշևիկներին, Ստեփան Շա-
հումյանը գրում էր. «...որքան հանցավոր է ձեր խաբեությունը ներկայումս,
այնքան խիստ է լինելու բանվորների դատաստանը ձեր նկատմամբ ապագա-*

յում։ Համենայնդեպս, անազնիվ զրպարտիչների կնիքը ձեզ չի հաջողվի սրբել ձեր ճակատից, ինչպես չկարողացան սրբել այդ կնիքը նրանք, ովքեր հուլիսյան դեպքերից հետո զրպարտեցին Լենինին, Լունաչարսկուն, նրանց քշեցին բանտ և ընդհատակ» (Երկեր, հ. 3, էջ 410)։

Սրանք մարգարեական խոսքեր էին։ Հաղթանակած բանվոր դասակարգը, Անդրկովկասի բոլոր ժողովուրդները դատաստան տեսան անազնիվ զրպարտիչների հետ, դուրս շպրտելով Ադրբեջանից, Հայաստանից ու Վրաստանից։ Իսկ նրանց հանդեպ ամենամեծ դատաստանը սովետական ազատ աշխարհի ստեղծումն ու բարգավաճումն է, ուր իրենց ծաղկումն են ապրում բոլոր ժողովուրդները։

Հայ ժողովուրդը քաջ գիտակցում է, որ իր վերածննդի համար պարտական է Լենինին, լենինյան կուսակցությանը, ռուս մեծ ժողովրդին, ժողովուրդների լենինյան բարեկամությանը, պայքարով ձեռք բերված սովետական իշխանությանը։

Այդ Լենինն էր, որ փետրվարյան հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո, մերկացնելով ցարիզմի ու բուրժուազիայի նվաճողական քաղաքականությունը նաև Հայաստանի նկատմամբ, առաջարկում է անեքսիոնիստական զորքերը հանել Հայաստանից, «Հայաստանը դարձնել անկախ հայկական հանրապետություն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 37)։

Լենինը գտնում էր, որ Ռուսաստանը պետք է լինի «ազատ հանրապետությունների միություն» (նույն տեղը, էջ 32)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո, երբ Լենինը սովետական նորաստեղծ կառավարության նախագահն էր, իր գրած մի շարք փաստաթղթերում հայտարարում էր Հայաստանի ինքնորոշման ազատությունը։

Վ. Ի. Լենինը, Սովետական Ռուսաստանը մեծապես օգնեցին Հայաստանի աշխատավորությանը՝ դաշնակցականների ու նրանց օտարերկրյա տերերի դեմ, սովետական իշխանության հաղթանակի համար մղված պայքարում։ Այստեղ մեծ նշանակություն ունեցան Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ամրապնդումն ու 1920 թ. հունիսին նրանց կազմակերպական ձևավորումը, որպես լենինյան կուսակցության մարտական ու անբաժան ջոկատը կազմող բոլշևիկյան կուսակցություն։ Անդրկովկասի աշխատավորության խնդրանքով և Լենինի ցուցումով 1920 թ. գարնանը ազատարար կարմիր բանակի զորամասերը օգնեցին Ադրբեջանում հաստատելու սովետական իշխանություն, մտեցան Հայաստանի սահմաններին։ Այս ոգեշնչեց ու ապստամբության կոչեց տեղի հեղափոխական մասսաներին, որոնք կոմունիստների ղեկավարությամբ բարձրացրին Մայիսյան հերոսական ապստամբությունը, իսկ ապա նոյեմբերին հաղթական ելույթով Հայաստանում հաստատեցին սովետական կարգեր։

Վ. Ի. Լենինը, Հայաստանի ռազմա-հեղափոխական խորհրդի նախագահ Սարգիս Կասյանին ուղարկած իր հեռագրով անմիջապես ողջունեց սովետական նոր հանրապետության ծնունդը։ 1920 թ. դեկտեմբերի 22-ին, Սովետների համառուսաստանյան VIII համագումարում Լենինը նշեց. «Մենք պետք է ողջունենք Բուխարայի, Ադրբեջանի ու Հայաստանի Սովետական հանրապետությունների կազմվելն ու ամրապնդվելը, որոնք վերականգնեցին ո՛չ միայն իրենց լիակատար անկախությունը, այլև իշխանությունը վերցրին բանվորների



ու գյուղացիների ձեռքը» (Երկեր, հ. 31, էջ 619)։ Վ. Ի. Լենինը մերկացնում
էր քեմալական Թուրքիայի ագրեսիվ պլանները Հայաստանի և ողջ Անդրկով-
կասի նկատմամբ, մեծ օգնություն էր կազմակերպում Սովետական Հայաստա-
նին։ 1921 թ. ապրիլին, Գ. Կ. Օրջոնիկիձեին ուղարկած հեռագրում, Լենինը
նշում էր. «Ստացա Ձեր ծածկագիրը Անդրկովկասի պարենային հուսահատա-
կան դրության մասին։ Մենք ձեռք առանք մի շարք միջոցներ, Հայաստանին
մի քիչ ոսկի տվինք, հաստատեցինք Պարենկոմին արված ամեն տեսակ հանձ-
նարարությունները» (Երկեր, հ. 35, էջ 521)։

Ծրագրային նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի 1921 թ. ապրիլի 14-ի
նամակը՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների
հանրապետության կոմունիստ ընկերներին», ուր, ջերմագին ողջունելով Կով-
կասի սովետական հանրապետություններին, առաջնորդը հույս էր հայտնում,
որ «...նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի
օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուր-
ժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402)։

Լենինի նախաձեռնությամբ և անդրկովկասյան ժողովուրդների ջերմ ցան-
կությամբ 1922 թ. ստեղծվեց Անդրկովկասյան ֆեդերացիան, որն իր գոյու-
թյան մոտ 15 տարիների ընթացքում խոշոր դեր կատարեց Ադրբեջանի, Վրաս-
տանի, Հայաստանի տնտեսական ու քաղաքական զարգացման համար։

Լենինյան ազգային քաղաքականության մեծ հաղթանակն էր Սովետա-
կան Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծումը, որի
կազմում, մյուս եղբայրական հանրապետությունների հետ միասին, մտավ
նաև իրավահավասար ու սուվերեն Հայկական ՍՍՀ-ն։

* * *

Սովետական Հայաստանի ավելի քան 53 տարիների պատմական ան-
նախընթաց նվաճումները լենինյան գաղափարների հետևողական կենսագործ-
ման փայլուն օրինակ են։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում, ուր մինչև 1920
թվականը կային լոկ մանր արդյունաբերական ձեռնարկություններ՝ մի քանի
հազար բանվորներով, կառուցվել են մոտ 700 խոշոր գործարաններ ու ֆաբ-
րիկաներ, որոնցից շատերն ունեն միութենական նշանակություն։ Այդ տարի-
ներին արդյունաբերական արտադրանքն աճել է մոտ 200 անգամ։

Սովետական եղբայրական ժողովուրդների օգնությամբ Հայաստանում
ստեղծվել են արդյունաբերության տասնյակ նոր ճյուղեր։ Զարգացման բարձր
աստիճանի հասավ էլեկտրաէներգետիկան, որը լիովին բավարարում է հան-
րապետության տնտեսության պահանջները։ Հայկական ՍՍՀ-ում ազգաբնակ-
չության մեկ շնչի համար ներկայումս արտադրվում է մոտ 3 հազար կվտ/ժ.
էլեկտրաէներգիա, մոտավորապես այնքան, որքան արտադրվում է Եվրոպայի
այնպիսի զարգացած արդյունաբերական պետություններում, ինչպիսիք են
Ֆրանսիան և Իտալիան։ Վերջին տարիներին ծավալվել է նոր, խոշոր հիդրո-
ջերմային էլեկտրակայանների ու խոշոր ատոմային էլեկտրակայանի շինա-
րարությունը։

.Սովետական Հայաստանն ունի բարձր զարգացած մեքենաշինություն,
ամենից առաջ էլեկտրա-տեխնիկական և դազգահաշինական արդյունաբերու-
թյուն։ Հանրապետությունում արտադրվում են հզոր շարժական էլեկտրակա-

յաններ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, ռադիո-տեխնիկական և լուսավորող սարքեր, դարբնոցա-մամլիչային սարքավորում, մետաղահատիչ, ներտաշիչ, բարձր ճշգրտության հաստոցներ, ճշգրիտ էլեկտրաչափիչ սարքեր։ Հայկական ՍՍՀ-ն առաջավոր գիտա-տեխնիկական մտքի հանրապետություն է, որտեղ նախագծվում և արտադրվում են ժամանակակից բարդ մեքենաների ու սարքերի շատ տեսակներ։ Դրանց զգալի մասը համապատասխանում է համաշխարհային ստանդարտի մակարդակին և օգտագործվում է աշխարհի ավելի քան 70 երկրներում։ Հանրապետությունում լայնորեն զարգացած են արդյունաբերության այնպիսի կարևորագույն ճյուղեր, ինչպես քիմիական արդյունաբերությունը և գունավոր մետաղագործությունը։ Քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները ավելի մեծ չափերով արտադրում են ժողովրդական տնտեսությանն անհրաժեշտ այնպիսի կարևոր արտադրանք, ինչպես՝ ծծմբաթթու, կաուչուկ, կիսահաղորդիչներ, կաուստիկ սոդա, քիմիական պարարտանյութեր և բույսերի քիմիական պաշտպանության միջոցներ։ Քիմիական արտադրանքը դեղորայքի, արհեստական թելի, պլաստմասսայից պատրաստվող իրերի և այլնի արտադրման հիմքն է։

Հայաստանի արդյունաբերության մեջ զգալի տեղ ունի տրանսպորտային և կենցաղային մեքենաշինությունը՝ ավտոմեքենաների, հեծանիվների, սառցարանների, ժամացույցների արտադրությունը։ Լայնորեն զարգացած են թեթև և սննդի արդյունաբերությունը, շինանյութերի արտադրությունը։ Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի շատ տեսակների՝ մետաղահատ հաստոցների, էլեկտրատեխնիկական սարքավորումների, քիմիական թելի, ժամացույցների, էլեկտրալամպերի, դարբնոցա-մամլիչային սարքավորումների, ավտոմատացման միջոցների, գուլպաների, տրիկոտաժեղենի արտադրման ասպարեզում Հայաստանը հասել է բարձր մակարդակի։

Ութերորդ հնգամյակի տարիներին հանրապետությունում արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացել է մոտ 1,8 անգամ։ Եթե 1961—1965 թթ. արտադրության տարեկան միջին աճը կազմել է 9,4 տոկոս, ապա 1966—1970 թթ. հասել է 12,5 տոկոսի։ 1960—1970 թթ. առանձնապես բարձր զարգացման հասավ մեքենաշինությունը, որի արտադրության ծավալն աճել է 2,17 անգամ։ Արտադրության միջին տարեկան աճը կազմեց 16,7 տոկոս։ Ութերորդ հնգամյակի տարիներին շահագործման հանձնվեցին ավելի քան 110 նոր արդյունաբերական ձեռնարկություններ և արտադրամասեր։ Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացնել 60—63 տոկոսով։

Արմատապես փոխվել է նաև Հայաստանի գյուղատնտեսությունը։ Վաղուց անցյալի գիրկն են անցել մանր մասնավոր տնտեսությունները, որոնցում հողի մշակման միակ գործիքը արորն էր, իսկ քարշող ուժը՝ եզը։ Այժմ Հայաստանի գյուղատնտեսությունը միավորում է ժամանակակից տեխնիկայով զինված մի քանի հարյուր խոշոր կոլեկտիվ և մասնագիտացված պետական տնտեսություններ։ Դաշտերում աշխատում են ավելի քան 9 հազար տրակտոր, 1,7 հազար հացահատիկահավաք կոմբայն, տասնյակ հազարավոր բեռնատար ավտոմեքենաներ և ժամանակակից շատ այլ մեքենաներ։ Գյուղատնտեսության շատ արտադրանքներ (խաղող, մրգեր, ծխախոտ, ձիթատու կուլտուրաներ և դրանց արդյունաբերական մշակման արտադրանքներ, պահածոներ,



կոնյակներ, գինիներ, պանիրներ, սիգարետներ) մեծ պահանջարկ են վայելում
ամբողջ աշխարհում։
Ութերորդ հնգամյակի տարիներին հանրապետության գյուղական տնտե-
սությունն ստացել է 7.329 տրակտոր, 4.657 բեռնատար ավտոմեքենա և գյու-
ղատնտեսական այլ տեխնիկա։ 1970 թ., 1965 թ. համեմատությամբ, գյուղա-
տնտեսության դրամական միջոցներն աճել են մոտավորապես 60 տոկոսով։
Ութերորդ հնգամյակի տարիներին խոփգացիոն աշխատանքների համար հատ-
կացվել է 172,3 մլն ռուբլի, նախորդ հնգամյակի 70 մլն ռուբլու դիմաց։ Դա
հնարավորություն տվեց ոռոգվող հողատարածությունն ավելացնել 34 հազար
հեկտարով և ջրարբիացնել 133 հազար հեկտար ամառային արոտավայրեր։
Հանրապետության շատ կոլտնտեսություններում և սովխոզներում մշակվում և
կիրառվում են գիտականորեն հիմնավորված ցանքատարածություններ։
Իններորդ հնգամյակում հանրապետության գյուղատնտեսությունը զարգա-
նալու է ավելի արագ տեմպերով։ Գյուղատնտեսության մեջ կապիտալ ներ-
դրումները կկազմեն 844 մլն ռուբլի, այսինքն՝ 50 տոկոսով ավելի, քան ութե-
րորդ հնգամյակում։ Գյուղատնտեսությունը կստանա 7.700 տրակտոր, 6.800
բեռնատար ավտոմեքենա և 60 մլն ռուբլու արժողությամբ գյուղատնտեսական
այլ մեքենաներ։
Հանրապետությունում տարեցտարի բարձրանում են աշխատավորների
ընտանիքների եկամուտները։ 1961—1969 թթ. Հայաստանի բնակչության դրա-
մական եկամուտներն ավելացել են 2,6 անգամ։ Բացի աշխատավարձից,
բնակչությունն սպառման հասարակական միջոցներից ստանում է զանազան
վճարումներ և արտոնություններ, որոնց չափը նույն տարիների ընթացքում
աճել է 2,2 անգամ։
Վերջին տասը տարիներին Սովետական Հայաստանում ամեն տարի կա-
ռուցվում է 20—25 հազար բնակարան։ Նոր բնակարաններում վերաբնակվել է
հանրապետության բնակչության կեսից ավելին։
Հայաստանի բնակչության մեծ մասն (60 տոկոսը) ապրում է քաղաքնե-
րում։ Հայկական գյուղերում վաղուց արդեն չկան անասնապահներ ու հողա-
գործներ անվանումները հին իմաստով, որովհետև գյուղական բնակչության
կազմում այժմ մեծաթիվ են մեքենագործները (տրակտորիստներ, կոմբայնա-
վարներ, մեքենավարներ), բարձրագույն և միջին որակավորման մասնագետ-
ները։ Գյուղում աճել է մտավորական խավը՝ ուսուցիչներ, բժիշկներ, ճարտա-
րապետներ, գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, տնտեսագետներ և այլն։ Հայ
կինը վաղուց արդեն տղամարդկանց համահավասար կրթություն է ստանում,
մասնակցում հանրային արտադրությանը և հասարակության գործերի կառա-
վարմանը։
Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծվեց ժողո-
վրդական տնտեսության և մշակութային աշխատողների բարձրորակ ազգա-
յին կադրերի մի հսկայական բանակ։ Միայն 1926—1949 թթ. մետալուրգների
թիվն աճել է 16, քիմիկոսներինը՝ 110, տրակտորիստներինն ու կոմբայնա-
վարներինը՝ 136, ճարտարապետներինն ու գյուղատնտեսներինը՝ 28, բժշկա-
կան աշխատողներինը՝ 17, ուսուցիչներինը՝ 11, գիտական աշխատողներինը՝

45 անգամ։ Հայաստանի ազգաբնակչության կեսից ավելին ներկայումս ունի ոչ լրիվ միջնակարգ, միջնակարգ և բարձրագույն կրթություն։ Այս բոլորը վկայում են հանրապետության ազգաբնակչության սոցիալական կառուցվածքում կատարված իսկական հեղափոխության մասին։

Այսօր հայ ժողովրդի հայրենիքը ո՛չ միայն Հայաստանն է, այլև ողջ Սովետական Միությունը, որին, որպես լույսի մի հզոր աղբյուրի, ձգտում են երկրագնդի բոլոր ծայրերում ապրող հայ աշխատավորները։ Հայաստանի կենսախինդ, համարձակ, ստեղծագործ, ապագային անսահման հավատացող ժողովուրդը, ՍՍՀ Միության բոլոր ժողովուրդների հետ միասին, իր ամենօրյա աշխատանքով կերտում է այդ ապագան։

Սովետական Հայաստանում, ինչպես նաև բովանդակ Սովետական Միությունում, կատարվեց իսկական կուլտուրական հեղափոխություն։ Մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանի ազգաբնակչության 75 տոկոսն անգրագետ էր, մարդկանց միայն մի աննշան թիվն ուներ բարձրագույն և միջնակարգ կրթություն։ Եղած մի քանի տասնյակ միջնակարգ դպրոցներից միայն մի քանիսում էր դասավանդումը տարվում հայոց լեզվով։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծվեցին բազմաթիվ հանրակրթական դպրոցներ, միջնակարգ ու բարձրագույն ուսումնական հաստատություններ, որոնցում դասավանդումը տարվում է մայրենի լեզվով։ Ազգաբնակչության անգրագիտությունը վերացվեց դեռևս 30-ական թվականների վերջերին։ 1972—73 ուս. տարում հանրապետությունում գործում են 1.600 հանրակրթական դպրոց՝ 676 հազար սովորողներով, 60 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ՝ մոտ 50 հազար և 12 բարձրագույն ուսումնական հաստատություններ՝ մոտ 55 հազար ուսանողներով։

Հանրապետության առաջին բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ Երևանի պետական համալսարանը, հիմնադրվել է սովետական իշխանության հաստատումից հետո՝ 1920 թ. դեկտեմբերին։ Ներկայումս Հայկական ՍՍՀ-ում ազգաբնակչության յուրաքանչյուր տասը հազար մարդուն ընկնում է ավելի քան 215 ուսանող։ Հազար բնակչին ընկնող ուսանողների թվով Սովետական Հայաստանն առաջ է անցել կապիտալիստական շատ երկրներից։

Մինչև սովետական իշխանությունը Հայաստանում չկար ոչ մի գիտահետազոտական հիմնարկություն։ Սակավաթիվ հայ գիտնականներն աշխատում էին կամ դպրոցներում՝ իբրև ուսուցիչներ, կամ այլ երկրների գիտական հաստատություններում։ Ներկայումս հանրապետությունում գործում են տասնյակ գիտահետազոտական ինստիտուտներ ու լաբորատորիաներ, որոնց աշխատանքը կենտրոնացված է 1943 թ. ստեղծված Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայում։ Զգալիորեն զարգացան գիտության այնպիսի ժամանակակից ճյուղեր, ինչպիսիք են ֆիզիկան, մաթեմատիկան, աստրոֆիզիկան, տեսական մեխանիկան, բիոֆիզիկան, կիբեռնետիկան և այլն։ Գիտության ճանաչված կենտրոնն է դարձել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտ— ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը, որը պատմա-կուսակցական պրոբլեմների մշակման, մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների գաղափարա-տեսական ժառանգության պրոպագանդման գործին մատուցած ծառայությունների համար վերջերս պարգևատրվեց աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։ Հայ ժո-



ղովրդի հպարտությունն է Մատենադարանը՝ հին հայկական ձեռագրերի հրա-
շալի գանձարանը։
Հայաստանի շատ գիտնականների անունները հռչակված են ոչ միայն
ՍՍՀՄ-ում, այլև նրա սահմաններից դուրս. նրանց գիտական աշխատություն-
ները թարգմանվել են աշխարհի շատ լեզուներով։ Սովետների երկրի գիտական
նշանավոր նվաճումների լավագույն վկայություններից մեկն է Հայկական ՍՍՀ
գիտությունների ակադեմիայի երկարամյա պրեզիդենտ, ակադեմիկոս Վիկտոր
Համբարձումյանի՝ Գիտական միությունների միջազգային խորհրդի պրեզիդեն-
տի պոստում ընտրվելը։ «Սովետական ու համաշխարհային գիտության երկնա-
կամարում ակադեմիկոս Համբարձումյանի անունը շողում է որպես առաջին
մեծության աստղ»,— ասել է Լ. Ի. Բրեժնևը։
ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությամբ օրեցօր ծաղկող Սովետական Հա-
յաստանում նպաստավոր պայմաններ են ստեղծվել ազգային մշակույթի բոլոր
ճյուղերի զարգացման համար։ Գրականության, երաժշտության, թատերական
արվեստի, կերպարվեստի և ճարտարապետության բնագավառներում ստեղծ-
ված անցյալի հարուստ ժառանգությունը դարձել է ժողովրդական լայն զանգ-
վածների սեփականությունը։ «Սովետական Հայաստանի պատմական փորձը
կրկին ու կրկին հաստատում է,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— որ ազգի իսկական
ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման
ուղիներով, այլև սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ըն-
տանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման
շնորհիվ» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 232)։
Սովետական Հայաստանում բուռն ծաղկում է ապրում ձևով ազգային, բո-
վանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Անցյալ դարաշրջանների մշա-
կույթի լավագույն նմուշների և սովետական շրջանում ստեղծված մշակույթի
նվաճումների զուգակցումը տվեց այն սքանչելի համադրությունը, որն իր ար-
տահայտությունը գտավ համամիութենական և համաշխարհային ճանաչում
ստացած ժամանակակից սովետահայ գրականության և արվեստի բազմաթիվ
ստեղծագործություններում։ Հայաստանի նոր գրականությունն ու արվեստն
արտացոլում են հայ ժողովրդի արդի:ական կյանքի բոլոր կողմերը, նրա հե-
րոսական անցյալը և ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ համատեղ պայքարը
լավագույն ապագայի համար։
Ժողովրդի բարձր կենսամակարդակը և մշակույթի ծաղկումը դրսևորվեցին
հայ ժողովրդի նոր ճարտարապետության մեջ։ Զուգակցելով անցյալի ազգային
ճարտարապետության լավագույն ավանդույթները շինարարության արդիական
պահանջների հետ, հանրապետության ճարտարապետներն ստեղծեցին համա-
միութենական և համաշխարհային մրցանակների արժանացած հոյակապ կո-
թողներ։ Հայաստանի մայրաքաղաք Երևանը զարդարված է ճարտարապետու-
թյան նշանավոր ստեղծագործություններով, որոնց շարքում աչքի է ընկնում
Վ. Ի. Լենինի անվան հրապարակի ճարտարապետական համալիրը։
Հայ ժողովրդի մշակույթի կյանքում խոշոր իրադարձություններ էին նյու-
թական ու հոգևոր կուլտուրայի նվաճումների հետ կապված հոբելյանների
լայն տոնակատարությունները։ Որպես համաժողովրդական տոնահանդեսներ
նշվեցին հանրապետության մայրաքաղաք Երևանի հիմնադրման 2750-ամյա-
կը, հայոց այբուբենի ստեղծող Մեսրոպ Մաշտոցի ծննդյան 1600, «Սասունցի
Դավիթ» էպոսի 1000, Սայաթ-Նովայի ծննդյան 250, Հովհաննես Թումանյանի,

Կոմիտասի ու Ա. Ա. Սպենդիարյանի ծննդյան 100, հեղափոխության բոցաշունչ երգիչ Եղիշե Չարենցի ծննդյան 70-ամյակները և այլն։ Այդ տոնակատարությունները, ինչպես նաև Պուշկինի, Ռուսթավելու, Նավոյիի, Շևչենկոյի, Աբայի, Նասիմիի, Բրյուսովի և ուրիշների հոբելյանները, ստացան համամիութենական բնույթ և նշվեցին սովետական բոլոր հանրապետություններում։ Դրանով իսկ դրանք նպաստեցին ժողովուրդների միջև բարեկամության է՛լ ավելի ամրապնդմանը, նրանց մշակույթների փոխհարստացմանը։ Հայաստանում պարբերաբար անց են կացվում սովետական հանրապետությունների և սոցիալիստական երկրների մշակութային տասնօրյակներ, որտեղ հանդես են գալիս գեղարվեստական լավագույն կոլեկտիվները։ Իրենց հերթին, այդ երկրներում ու հանրապետություններում ևս անց են կացվել Հայկական ՍՍՀ-ի օրեր։ Ժողովուրդների բարեկամության իսկական ցույցերի վերածվեցին Հայաստանի գիտության լենինյան օրերը Մոսկվայում, մեծ առաջնորդի ծննդավայրում՝ Ուլյանովսկում, Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի 50-ամյակին նվիրված տոնակատարությունները Մոսկվայում, Բաքվում, Թբիլիսիում, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Վրաստանի ու Ադրբեջանի 50-ամյակի տոնակատարությունները մեր հանրապետությունում և մի շարք այլ միջոցառումներ։

Հայաստանում բնակվող ազգային փոքրամասնությունները ապահովված են լիակատար իրավահավասարությամբ, իրենց ազգային մշակույթը զարգացնելու բոլոր հնարավորություններով։ Մասնավորապես, հայ գիտնականների օգնությամբ քրդերի համար ստեղծված է ազգային այբուբեն, բացված են դպրոցներ, հրատարակվում է «Ռյա Թազա» թերթը, ռադիոհաղորդումներ են տրվում քրդական լեզվով։ Երևանի պետական համալսարանի արևելագիտության ֆակուլտետում կա քուրդ ժողովրդի լեզվի և պատմության ուսումնասիրության բաժանմունք, իսկ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի արևելագիտության ինստիտուտում՝ քրդագիտության բաժին։

Սովետական ազգային պետականության պայմաններում հայ ժողովուրդը լայն հնարավորություններ ստացավ իր ազգային լեզվի հետագա զարգացման համար։ Սովետական իշխանությունից առաջ հայոց լեզուն, ազգային պետականության բացակայության պատճառով, զուրկ էր մի շարք կարևորագույն ֆունկցիաներից. այն գործածական չէր բուն Հայաստանի պետական-պաշտոնական և զգալի չափով տնտեսական ոլորտներում։ Դրանով իսկ լեզվի գործածության շրջանակները զգալիորեն նեղացված էին։

ՍՍՀ Միության կազմում հավասարազոր տեղ ունեցող հայ ժողովրդի սոցիալիստական զարգացման ժամանակաշրջանի համար հատկանշական է հայոց լեզվի գործածության լիակատար ազատությունը պետական-պաշտոնական, տնտեսական և մշակութային բոլոր հաստատություններում։ Հայոց լեզվի գործածության ֆունկցիաների և գործողության ոլորտների ընդլայնումը վառ կերպով երևում է գրահրատարակչական գործում։ Սովետական Հայաստանում ամեն տարի հայերեն լեզվով հրատարակվում են մոտ հազար անուն գիրք՝ ավելի քան 8 մլն ընդհանուր տպաքանակով, տասնյակ թերթեր ու ամսագրեր, մեծ տպաքանակներով։ Այսպես, «Սովետական Հայաստան» թերթը հրատարակվում է ավելի քան 240 հազար, երիտասարդական «Ավանգարդ»-ը՝ 250, «Հայաստանի աշխատավորուհի» ամսագիրը՝ 77 հազար տպաքանակով և այլն։

Հայոց լեզվի զարգացմանն ու հարստացմանը նպաստում են նաև տնտե-



տության ու մշակույթի բուռն վերելքը, ինչպես և ՍՍՀՄ ժողովուրդների մյուս լեզուների հետ ունեցած իր փոխազդեցությունները։ Հայկական ՍՍՀ-ում լայնորեն գործածվում է ռուսաց լեզուն՝ Լենինի լեզուն, իբրև ազգամիջյան հաղորդակցման ու ՍՍՀՄ ժողովուրդների համագործակցության միջոց, իբրև հայրենական ու միջազգային մշակույթի լավագույն նվաճումների յուրացման անփոխարինելի ու հզոր զենք։

Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվեց նաև հայ ժողովրդի հոգևոր կերպարը։ Նրա հատկանշական գծերը դարձան՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը, խաղաղության ու ազատության համար պայքարող բոլոր ժողովուրդների հետ բարեկամության, եղբայրության զգացումը, հարգանքը՝ այլ ժողովուրդների մշակույթի ու ազգային շահերի նկատմամբ։

* * *

Բոլորովին այլ կերպ ընթացավ հայ ժողովրդի այն հատվածի պատմությունը, որը մնաց Արևմտյան Հայաստանում, բարբարոսների լծի տակ։ Արևմտյան տերությունների նենգ դավերի, թուրքական բռնակալների, դաշնակցականների ավանտյուրիստական քաղաքականության հետևանքով միլիոնավոր հայեր կոտորվեցին, ցիրուցան եղան ամբողջ աշխարհով մեկ՝ կրելով կապիտալիստական հասարակարգի բոլոր արհավիրքները։

Սովետական իշխանության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ նրանց մի մասը վերադարձավ հայրենի երկիր, նվիրվեց սոցիալիստական շինարարության գործին։ Դեռևս 1924 թ. Ալեքսանդր Մյասնիկյանն ասում էր. «Մենք և գաղութահայ աշխատավորները իրար հետ կապված ենք և ավելի ևս պիտի սեղմենք մեր շարքերը» (Կուսակցությունները գաղութահայության մեջ, 1924, էջ 7)։ Այդ մասին է վկայում արտասահմանում գտնվող բոլոր հայ հայրենասերների վերաբերմունքը Սովետական Միության ու նրա անբաժան մասը կազմող Հայկական ՍՍՀ-ի նկատմամբ։

Սովետական Հայաստանի ՍՍՀՄ կազմի մեջ մտնելը ջերմ արձագանք գտավ Սփյուռքի առաջադիմական շրջաններում։

«Հայաստանը շատ բախտավոր է,— նշել է ամերիկահայ «Լրաբեր» թերթը,— որ գտնվում է Խորհրդային Միության կենսատու շրջանում և այսօր ոչ մի թշնամի չի համարձակվում նրա անդորրությունը վրդովել, նրա գոյությանը սպառնալ լրջորեն»։

Բարձր գնահատելով Սովետական Հայաստանի փառապանծ բանվոր դասակարգի, սոցիալիստական կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության, կոմունիստական կուսակցության տասնամյակների հերոսական պայքարով, անձնվեր աշխատանքով ձեռք բերված նվաճումները, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը մեր հանրապետությանը պարգևատրել է Լենինի երկու, Հոկտեմբերյան հեղափոխության և Ժողովուրդների բարեկամության շքանշաններով։

1970 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի և Հայկոմկուսի կազմավորման 50-ամյակի առթիվ Երևանում գումարված հանդիսավոր նիստում արտասանած ճառում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Հայկական սոցիալիստական պետականության ստեղծումը, Սովետական Հայաստանի տնտեսական ու հոգևոր կյանքի բազմակողմանի ծաղկումը սոցիալիզմի, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության կենսահաստատ ուժի վառ ապացույցն են» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 233)։

Այդ ուժը մեզ տանում է դեպի նորանոր հաղթանակներ։

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ԱՐԵՎԵԼՔԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ

Ն. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Պատմության մեջ հազվադեպ են այնպիսի գործիչները, որոնց ֆիզիկական մահը ո՛չ միայն չի նշանակում նրանց գործունեության ավարտ և գաղափարների մահ, այլ, ընդհակառակը, դրանից հետո սկսվում է նրանց կյանքի նոր, հետմահու շրջանը, պատմության կողմից ստանալով հավերժության վկայագիր։ Այդ սակավաթիվ ընտրյալներից են գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը և ապա Վ. Ի. Լենինը, որը նոր պայմաններում շարունակեց նրանց մեծ գործը, զարգացրեց ու հարստացրեց, մի նոր աստիճանի բարձրացրեց նրանց տեսությունը։ Հիսուն տարի է մեզ բաժանում այն օրվանից, երբ դադարեց բաբախելուց համաշխարհային պրոլետարիատի և ճնշված բոլոր ժողովուրդների մեծ առաջնորդի սիրտը։ Այդ կեսդարյա ժամանակահատվածը կարելի է համարել մարդկային հասարակության զարգացման նորագույն շրջանի ամենավճռական փուլը։ Բավական է նշել, որ այդ տարիներին Սովետական Միությունը վերածվեց հզոր սոցիալիստական պետության, սոցիալիզմը դուրս եկավ մի երկրի սահմաններից և, հաղթելով Եվրոպայի, Ասիայի ու Ամերիկայի մի շարք երկրներում, վերածվեց համաշխարհային սիստեմի, դառնալով մարդկության զարգացման գլխավոր ազդակը. ավելի ուժեղ ու կազմակերպված դարձավ կապիտալիստական երկրների պրոլետարիատի դասակարգային պայքարը, մեծագույն հաղթանակների հասան ազգային-ազատագրական շարժումները և ամբողջ աշխարհով մեկ լայնորեն տարածվեցին մարքսիզմ-լենինիզմի գաղափարները։ Ահա թե ինչու վերջին հիսնամյակը իրավամբ կարելի է համարել լենինյան վեհ գաղափարների հաղթարշավի դարաշրջան։

* * *

Վ. Ի. Լենինը Արևելքի ժողովուրդների մեծ բարեկամն էր։ Լինելով ամեն տեսակ բռնությունների վճռական հակառակորդ, նա առանձնապես նշավակում էր ազգային բռնությունը, մի ազգի տիրապետությունը մյուսի վրա։ Վ. Ի. Լենինի թողած գիտական ժառանգությունը հարուստ է Արևելքի տարբեր պրոբ-



լեմներին վերաբերող նյութերով։ Դա ինքնին վկայում է ճնշված ու գաղութային ժողովուրդների ճակատագրի նկատմամբ նրա ցուցաբերած մեծ հետաքրքրությունը, ինչպես և ընդգծում այն նշանակությունը, որ նա տալիս էր Արևելքի ժողովուրդներին։ Ելնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հիմնական դրույթներից, ուսումնասիրելով Ասիայի ու Աֆրիկայի մայր ցամաքներում կատարվող սոցիալ-տնտեսական ու քաղաքական տեղաշարժերը, ընդհանրացնելով գաղութային լծի տակ գտնվող ժողովուրդների պայքարի փորձը, Վ. Ի. Լենինը հանգեց այն եզրակացության, որ Արևելքի ազատագրումը հնարավոր է ոչ թե վերացական դեղատոմսերի կիրառմամբ, այլ պայքարով։ Իրենք, Արևելքի ճնշված ժողովուրդները պետք է կազմակերպվեն ու պայքարեն իրենց ազատագրման համար։ Առանց պայքարի գաղութատեր երկրները չեն հրաժարվի իրենց տիրապետությունից և ազատություն չեն շնորհի Ասիային ու Աֆրիկային։ Դրանով իսկ Վ. Ի. Լենինը Արևելքի ազատագրման հարցը դուրս բերեց ֆիլանտրոպիայի շրջանակներից, դրեց իրական հողի վրա և կապեց սոցիալական, քաղաքական-տնտեսական և ազգային ճնշումից մարդկությանը ազատագրելու ընդհանուր հարցի հետ։

Ուշի-ուշով ուսումնասիրելով Ասիայի ու Աֆրիկայի երկրներում՝ Հնդկաստանում, Չինաստանում, Կորեայում, Բիրմայում, Պարսկաստանում, Եգիպտոսում և այլուր տեղի ունեցող երևույթները, Վ. Ի. Լենինը մեծ խորաթափանցությամբ կարողացավ նշմարել այն ուժերը, որոնք մարտահրավեր էին նետելու գաղութատիրությանը և վերջիվերջո դառնալու էին նրա գերեզմանափորը։ Նա հիմնավորեց այն դրույթը, որ եվրոպական ու ամերիկյան կապիտալի ներթափանցումը Ասիայի ու Աֆրիկայի երկրներ, օբյեկտիվորեն նպաստում է կապիտալիստական հարաբերությունների զարգացմանը և տեղական՝ ազգային բուրժուազիայի ու պրոլետարիատի ձևավորմանը, ինչպես և ազգային մտավորականության կազմավորմանը։ Հենց նրանք էլ (իհարկե, նրանցից յուրաքանչյուրը հետապնդում է իր ուրույն դասակարգային շահերը) ազգային զարթոնքի կրողներն են և հակաիմպերիալիստական պայքարի գլխավոր ուժերը։ «...կապիտալիզմը,— նշել է Վ. Ի. Լենինը,— արթնացնելով Ասիան,— այնտեղ ևս ամենուրեք ազգային շարժումներ է առաջ բերել» (Երկեր, հ. 20, էջ 497)։ Արևելքի զարթոնքը, որ սկսվեց XIX դարի վերջին և XX դարի սկզբին, ռուսական առաջին հեղափոխության ազդեցության տակ մի շարք երկրներում վերածվեց հեղափոխական պոռթկումների և կամ ապստամբական շարժումների։ «1905 թվականի ռուսական շարժումից հետո,— գրում է Վ. Ի. Լենինը,— դեմոկրատական հեղափոխությունն ընդգրկել է ողջ Ասիան՝ Թուրքիան, Պարսկաստանը, Չինաստանը։ Աճում է խմորումն անգլիական Հնդկաստանում» (Երկեր, հ. 19, էջ 83)։ Ազատագրական ալիքը բարձրացավ նաև արաբական երկրներում՝ Եգիպտոսում, Սիրիայում, Իրաքում, Լիբանանում, իսկ Եմենում այն ընդունեց օսմանյան բռնատիրության դեմ ուղղված զինված պայքարի ձև։

Այս ամենը վկայում էր, որ ճնշված ժողովուրդների կյանքում տեղի էր ունեցել աննախընթաց երևույթ։ Նրանք ոտքի էին ելել՝ մարտնչելու իրենց ազգային ազատագրության համար։ Վ. Ի. Լենինն այդ երևույթը համարեց Ասիայի ու ավելի լայն իմաստով ողջ Արևելքի զարթոնք։ Ողջունելով այդ զարթոնքը և նրա մեջ մեծ խորհուրդ տեսնելով ո՛չ միայն Արևելքի, այլև ողջ մարդկության համար, մեծ առաջնորդը նշում էր, որ Արևելքի զարթոնքի շնորհիվ

«...Ասիայում համաշխարհային մեծագույն փոթորիկների նոր աղբյուր բացվեց» (Երկեր, հ. 18, էջ 739)։

Արևելքի զարթոնքի և հեղափոխական-ազատագրական շարժումների մեջ նրա ներգրավվելու շնորհիվ ստեղծվեց պայքարի նոր ճակատ իմպերիալիզմի դեմ։ Եթե մինչ այդ իմպերիալիզմի դեմ միայնակ մարտնչում էր եվրոպական և ամերիկյան պրոլետարիատը, ապա այդ պայքարում միջազգային պրոլետարիատը ձեռք բերեց մի հզոր դաշնակից՝ ի դեմս Արևելքի հարյուր միլիոնավոր մասսաների։ Շեշտելով այդ պարագան, Լենինը նշում էր, որ «Եվրոպական գիտակից բանվորն արդեն ասիական ընկերներ ունի, և այդ ընկերների թիվը կաճի ոչ թե օրերով, այլ ժամերով» (Երկեր, հ. 15, էջ 219)։ Դա շրջադարձային կետ էր համաշխարհային հեղափոխական շարժման մեջ։ Հետայսու համաշխարհային հեղափոխական շարժումն իրենից ներկայացնում էր զարգացած երկրների պրոլետարիատի և գաղութային երկրների ճնշված ժողովրդական մասսաների պայքարի միասնություն։ Եվ Վ. Ի. Լենինը Արևելքի ազատագրումը տեսնում էր հեղափոխական շարժման այդ երկու ջոկատների փոխադարձ կապերի ամրապնդման, դրանց համատեղ գործունեության և համագործակցության մեջ։ Լենինը գաղութային լծի տապալումը և Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների ազատագրումը չէր պատկերացնում առանց եվրոպական և ամերիկյան պրոլետարիատի հակաիմպերիալիստական ակտիվ պայքարի։ Այդ պայքարում հեղափոխական շարժման երկու ջոկատների շահերը լրիվ համընկնում էին. իմպերիալիզմի պարտությունը գաղութներում հեշտացնում էր նրա դեմ պրոլետարիատի պայքարը մետրոպոլիայում և, ընդհակառակը, պրոլետարիատի յուրաքանչյուր հաղթանակ «իր սեփական» բուրժուազիայի նկատմամբ, անգնահատելի օգնություն էր ճնշված ժողովուրդներին՝ գաղութային լուծը թոթափելու խնդրում։ Ուստի, ռեալ պայմաններ կային՝ ստեղծելու պրոլետարիատի և գաղութային ճնշման տակ գտնվող ժողովուրդների համաշխարհային հեղափոխական ճակատ։ Մեծ առաջնորդը տիտանական աշխատանք ծավալեց այդպիսի ճակատ ստեղծելու, միջազգային պրոլետարիատի և Արևելքի ժողովուրդների դաշինքն ամրապնդելու և կոփելու համար։ Այդ խնդիրն այնքան էլ դյուրին չէր, քանի որ միջազգային սոցիալիստական շարժման մեջ կային հոսանքներ և առանձին գործիչներ, որոնք չէին ըմբռնում հեղափոխական շարժման մեջ Արևելքի ժողովուրդների ներգրավման պատմական նշանակությունը, ճիշտ չէին պատկերացնում այն քաղաքականությունը, որ Արևելքի նկատմամբ պետք է վարեին պրոլետարիատը և ապագայում սոցիալիստական պետությունները։ Այդ սխալ տեսակետները որոշակիորեն դրսևորվեցին երկրորդ ինտերնացիոնալի օպորտունիստական գործիչների թե՛ «տեսական» և թե պրակտիկ գործունեության մեջ։ Որոշ իմաստով դա պատահականություն չէր։ Նրանք հրաժարվել էին մարքսիզմի հեղափոխական ուսմունքից և կանգնել իրենց երկրի բուրժուազիայի շահերի պաշտպանների դիրքերում։ Գերմանիայի, Հոլանդիայի և այլ երկրների իրենց «սոցիալիստ» համարող որոշ գործիչներ այն կարծիքին էին, որ սկզբունքորեն չպետք է հանդես գալ գաղութների գոյության դեմ։ Դեռ ավելին. նրանք ասպարեզ նետեցին «սոցիալիստական գաղութային քաղաքականության» տխրահռչակ, վնասակար տեսությունը, որը պաշտոնապես առաջ քաշեցին երկրորդ Ինտերնացիոնալի՝ 1907 թ. Շտուտգարդի կոնգրեսում։ Կոնգրեսի գաղութային հարցերի հանձնաժողովը, որին գլխավորում էր հոլանդական սո-



ցիալիստ-օպորտունիստ Վան-Կոլը, գաղութային հարցում պրոլետարիատի և նրա կուսակցությունների կողմից վարվելիք քաղաքականության մասին ընդունեց մի որոշում, որտեղ ուղղակի ասված էր. կոնգրեսը սկզբունքորեն և բոլոր ժամանակների համար չի դատապարտում ամեն մի գաղութային քաղաքականություն, որը կարող է սոցիալիստական ռեժիմի պայմաններում քաղաքակրթիչ ազդեցություն ունենալ (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 13, էջ 96)։ Այնուհետև այդ որոշումը ներկայացվեց կոնգրեսին, որտեղ դրա պաշտպանությամբ հանդես եկան գերմանական սոցիալ-դեմոկրատիայի օպորտունիստական թևի առաջնորդներ Բերնշտայնը և Դավիդը։ Դրանք բացեիբաց հանդես եկան հօգուտ «սոցիալիստական գաղութային քաղաքականության» (նույն տեղը, էջ 82)։ Պարզ է, որ այդ օպորտունիստները, թաքնվելով «սոցիալիզմի քաղաքակրթիչ ազդեցության» դիմակի տակ, փորձում էին միջազգային պրոլետարիատին պարտադրել մի քաղաքականություն, որը կործանարար կլիներ համաշխարհային հեղափոխական շարժման համար, անվստահություն կառաջացներ գաղութային ժողովուրդների մոտ՝ հանդեպ եվրոպական և ամերիկյան պրոլետարիատի, և որի անխուսափելի հետևանքը կլինեին հեղափոխական ուժերի պառակտումը և համաշխարհային հեղափոխական ճակատի թուլացումը։

Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը, որ հետևողականորեն մարտնչում էր մարքսիզմի անաղարտության և միջազգային բանվորական շարժման մեջ հեղափոխական գծի հաղթանակի համար, Վան-Կոլի, Բերնշտայնի, Դավիդի և մյուս օպորտունիստների առաջ քաշած «սոցիալիստական գաղութային քաղաքականության» թեզը բնութագրեց որպես հրեշավոր և ուղղակի նահանջ դեպի բուրժուական այն քաղաքականությունը և բուրժուական աշխարհայացքը, որն արդարացնում է գաղութային պատերազմներն ու գազանությունները (տե՛ս նույն տեղը, էջ 96)։ Վ. Ի. Լենինը և բոլշևիկները կոնգրեսում ուժեղ պայքար ծավալեցին օպորտունիստների դեմ։ Նրանց ջանքերի շնորհիվ կոնգրեսը մերժեց գաղութային հանձնաժողովի ներկայացրած որոշումը, որը մի ծանր հարված էր միջազգային օպորտունիզմին։ Դրանով իսկ Վ. Ի. Լենինը փրկեց հեղափոխական մարքսիզմի պատիվը, պահպանեց նրա անաղարտությունը և ապահովեց Արևելքի ժողովուրդների վստահությունը եվրոպական պրոլետարիատի նկատմամբ։ Ի հակադրություն Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստների «սոցիալիստական գաղութային քաղաքականության», Վ. Ի. Լենինը առաջադրեց ազգերի ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև անջատվելը և ինքնուրույն ազգային պետություն կազմելը։ Նա մանրակրկիտ մշակեց ու գիտականորեն հիմնավորեց հեղափոխական մարքսիստների խնդիրները ազգային-գաղութային հարցում, գտնելով, որ ազգերի ինքնորոշման իրավունքի ընդունումն ու պաշտպանումը պետք է դառնան միջազգային պրոլետարիատի քաղաքականության ամենակարևոր կողմերը։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ միայն այդ ճանապարհով կարելի է նվաճել ճնշված ժողովուրդների վստահությունը և ամրապնդել նրանց ու զարգացած կապիտալիստական երկրների պրոլետարիատի հեղափոխական դաշինքը։

* * *

Հաճախ է պատահել, երբ քաղաքական այս կամ այն կուսակցությունը և գործիչը, իշխանության գլուխ անցնելուց հետո, դավաճանել է իր քաղաքական հավատամքին և հրաժարվել նախկինում իր իսկ հռչակած ու ընդունած սկզբ-

բունքներից։ Բուրժուական բազմաթիվ կուսակցությունների և ղեկավարների գործունեությունը այդ բանի անհերքելի ապացույցն է։

Վ. Ի. Լենինը և նրա ստեղծած բոլշևիկյան կուսակցությունը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո, երբ Ռուսաստանի կառավարման ղեկը վերցրին իրենց ձեռքը, նախկինում մշակված տեսական դրույթներին և հռչակված սկզբունքներին հավատարիմ մնալու և պրակտիկայում անխոտոր կերպով դրանք կենսագործելու օրինակ ծառայեցին։ Վ. Ի. Լենինի մոտ երբեք խզում չառաջացավ տեսության ու պրակտիկայի, խոսքի ու գործի միջև։ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, դառնալով սովետական կառավարության ղեկավար, նա լիակատար հնարավորություն ստացավ կյանքում իրականացնելու բոլշևիկյան կուսակցության քաղաքական ծրագրերը, որոնք վերաբերում էին համաշխարհային հեղափոխական շարժմանը, այդ թվում նաև Արևելքի ժողովուրդների ազատագրական շարժումներին։ Զարմանք է պատում, թե ինչպես նա, գերծանրաբեռնված լինելով պետական հսկայածավալ և իր նախադեպը չունեցող աշխատանքներով, մտահոգված նորաստեղծ սովետական սոցիալիստական կարգը ամրապնդելու, Ռուսաստանի բազմաթիվ կնճռոտ և անլուծելի համարվող հարցերով, ժամանակ էր գտնում մշակելու սովետական երկրի պետական քաղաքականության հիմունքները՝ Ասիայի և Աֆրիկայի գաղութային լծի դեմ պայքարի ելած ժողովուրդներին օգնելու խնդրում։

Հեղափոխության հաջորդ օրը՝ 1917 թ. նոյեմբերի 8-ին, Վ. Ի. Լենինը ստորագրեց «Հաշտության մասին» դեկրետը, որը նշանակալի է ո՛չ միայն նրանով, որ պատերազմող կողմերին կոչ էր անում դադարեցնել համաշխարհային սպանդը, այլև նրանով, որ այնտեղ սովետական պետությունը հանդես էր գալիս ընդդեմ անեքսիայի։ Դեկրետում տրված է անեքսիայի սահմանումը. դրա տակ պետք է հասկանալ փոքր և թույլ ժողովրդի ամեն մի բռնի միացում մեծ և ուժեղ պետության, առանց փոքր ժողովրդի ցանկության և համաձայնության (տե՛ս «Документы внешней политики СССР», т. 1, М., 1957, стр. 13)։

Առաջին անգամ էր, որ մեծ պետությունը կամովին հանդես էր գալիս ընդդեմ թույլ և փոքր ժողովուրդների գաղութային ստրկացման և հօգուտ նրանց ազատագրման։ Նրանք տեսնում էին, որ ծնվել է մի պետություն, որի քաղաքականության անկյունաքարերից մեկը ժողովուրդների իրավահավասարության և ազատության ճանաչումն է։

Արևելքի ժողովուրդների համար մեծ նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի մշակած «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան» ու «Ռուսաստանի և Արևելքի բոլոր մուսուլման աշխատավորներին» ուղղված կոչը։ Վերջինս թարգմանվեց արևելյան բազմաթիվ լեզուներով ու լայնորեն տարածվեց Ասիայի ու Աֆրիկայի տարբեր մասերում։ «Արևելքի մուսուլմաննե՛ր,— ասված է կոչում,— պարսիկնե՛ր և թուրքե՛ր, արաբնե՛ր և հնդիկնե՛ր... Դուք ինքներդ պետք է դառնաք ձեր երկրի տերը։ Դուք դրա իրավունքը ունեք, քանի որ ձեր ճակատագիրը ձեր սեփական ձեռքերում է» (նույն տեղը, էջ 35)։ Այսպիսով, սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության ամենակարևոր սկզբունքներից մեկը դարձավ անեքսիաներից հրաժարվելը և բոլոր ժողովուրդների՝ մեծ ու փոքր, իրավահավասարության և ազատության հռչակումը։ Սա շրջադարձային կետ էր միջազգային կյանքում և ազգերի փոխ-



հարաբերություններում։ Վ. Ի. Լենինի ղեկավարած սովետական կառավարությունը գործնականորեն ապացուցեց, որ այդ սկզբունքները նրա համար թղթի վրա գրված գեղեցիկ խոսքեր չեն, այլ կենսագործվող անհրաժեշտ դրույթներ։ Սովետական կառավարությունը ճանաչեց Ֆինլանդիայի ինքնորոշման իրավունքը, կամովին հրաժարվեց ցարական կառավարության արտոնություններից և իրավունքներից Չինաստանում, Պարսկաստանում և նախկինում օսմանյան կայսրության տարածքներում, անհատույց նրանց վերադարձրեց այդ երկրներում գտնվող գույքը և այլն։ Նա հրապարակեց ցարական Ռուսաստանի, Անգլիայի և Ֆրանսիայի կառավարությունների միջև կնքված գաղտնի համաձայնագրերը Ասիայի մի շարք երկրների բաժանման վերաբերյալ։ Այս ամենը, անկասկած, նպաստեց Արևելքի ժողովուրդների ազգային զարթոնքին, օգնեց նրանց՝ ճիշտ ըմբռնելու իմպերիալիզմի գիշատիչ բնույթը և տարբերելու իրենց բարեկամներին թշնամիներից։

Վ. Ի. Լենինը մշակեց ու հիմնավորեց սովետական պետության և Արևելքի
ճնշված ժողովուրդների փոխհարաբերությունների մեկ այլ կարևոր սկզբունք—
Ասիայի ու Աֆրիկայի ժողովրդական զանգվածների ազատագրական պայքարը
սերտորեն պետք է կապվի ընդդեմ միջազգային իմպերիալիզմի սոցիալիստա-
կան պետության մղած հեղափոխական պայքարի հետ։ Նա հոգ էր տանում,
որպեսզի Արևելքի երկրների ազատամարտիկները քաջ գիտակցեն, որ միջազ-
գային իմպերիալիզմը սոցիալիզմի ու ազգային ազատագրական շարժումների
ընդհանուր և գլխավոր հակառակորդն է։ Իր այդ հայացքները, որոնք նորու-
թյուն էին մարքսիզմի տեսության մեջ, Լենինը շարադրեց 1919 թ. նոյեմբերի
22-ին Արևելքի կոմունիստական կազմակերպությունների համառուսական
երրորդ համագումարում ունեցած ելույթում։ «...Արևելքի ժողովուրդների այս
հեղափոխական շարժումը,— հայտարարեց նա,— կարող է այժմ հաջող զար-
գացում ստանալ, կարող է այն լուծում ստանալ ոչ այլ կերպ, քան անմիջա-
կանորեն կապվելով մեր Սովետական հանրապետության հեղափոխական
պայքարի հետ՝ ընդդեմ միջազգային իմպերիալիզմի» (Երկեր, հ. 30, էջ 174)։
Հետագա պատմական փորձը լիովին հաստատեց Վ. Ի. Լենինի տեսակետների
ճշմարտացիությունը։

Վ. Ի. Լենինի պետական գործունեությունը կարճ տևեց՝ ընդամենը յոթ տարի։ Վաղաժամ կտրվեց նրա կյանքի թելը, սակայն լենինյան վեհ գործի շարունակողը եղավ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, որը հավատարիմ և հետևողական կենսագործում է մեծ առաջնորդի պատգամները։

Վ. Ի. Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցության և սովետական
պետության գործունեության մեջ միշտ էլ մեծ տեղ են գրավել Արևելքի հար-
ցերը։ Ելակետ ունենալով լենինյան այն դրույթները, որ միջազգային իմպե-
րիալիզմը և՛ սոցիալիզմի, և՛ ազգային-ազատագրական շարժումների գլխավոր
թշնամին է, և նրա դեմ մղվող պայքարում այդ ուժերը պետք է սերտորեն դաշ-
նակցեն, ՍՄԿԿ-ն և մեր պետությունն ամեն ինչ արել են գաղութային ժողո-
վուրդների հակաիմպերիալիստական պայքարը պաշտպանելու և այն հաղ-
թական վախճանի հասցնելու համար։ Առանց չափազանցության կարելի է ա-
սել, որ իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը և Ասիայի ու Աֆրի-
կայի ավելի քան 70 երկրների ազգային անկախության նվաճումը սերտորեն
կապված են Սովետական Միության գոյության ու նրա կողմից ազգային-

ազատագրական շարժումներին ցույց տրված քաղաքական ու ռազմական աջակցության հետ։ Տարբեր ժամանակներում այդպիսի աջակցություն ու օգնություն են ստացել Վիետնամը, Հնդկաստանը, Բանգլադեշը, Բիրման, Սիրիան, Լիբանանը, Իրաքը, Եգիպտոսը, Ալժիրը, Գվինեան, Սոմալին և բազմաթիվ այլ երկրներ։

Առաջին հայացքից կարող է թվալ, թե հակասություն կա մի կողմից՝ խաղաղության պահպանումը սովետական պետության արտաքին քաղաքականության գլխավոր խնդիրը համարելու, իսկ մյուս կողմից՝ ազգային-ազատագրական պայքարը պաշտպանելու քաղաքականության միջև։ Հայտնի է, որ սովետական կառավարության առաջին դեկրետը «Հաշտության մասին»-ն էր։ Սովետական պետությունը երբեք չի հրաժարվել դրանում հռչակված սկզբունքներից։ ՍՄԿԿ XXIV համագումարն ընդունեց մի նոր ընդարձակ ծրագիր, որն իրավամբ համարում են խաղաղության ծրագիր։ Եվ այնուհանդերձ ոչ մի հակասություն չկա այդ սկզբունքների և Արևելքի ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարին օժանդակելու քաղաքականության մեջ։ Վ. Ի. Լենինը և հեղափոխական մարքսիստները տարբերություն են դնում արդարացի և անարդարացի պատերազմների միջև։ Նրանք դեմ են անարդարացի պատերազմներին, որոնց նպատակն է զավթել ուրիշի տերիտորիաները և կախման մեջ գցել մի ժողովուրդը մյուսից։ Սակայն մարքսիստ-լենինյանները, ի տարբերություն պացիֆիստների, ընդունում են արդարացի պատերազմները՝ ագրեսիայից պաշտպանվելու, ուրիշի տիրապետությունից ազատվելու օրինական լինելը։ Ազգային-ազատագրական պատերազմներն իրենց բնույթով պատկանում են այս երկրորդին։ Նրանց նպատակն է բռնատիրության վերացումը և ազատության նվաճումը։ Ուստի, սովետական պետությունը միշտ էլ աջակցել է և առաջիկայում ևս կաջակցի բոլոր այն շարժումներին, որոնք ուղղված են իմպերիալիզմի դեմ և ծառայում են գաղութատիրության հետևանքների վերացմանը։ Ղեկավարվելով այդ սկզբունքներով՝ մեր երկիրը տարիներ շարունակ ամենալայն օգնություն էր ցույց տալիս Վիետնամի հերոսական ժողովրդին։ 1971 թ. ՍՍՀՄ-ը պաշտպանեց և օգնեց Բանգլադեշի ժողովրդին և նրա հետ համագործակցող Հնդկաստանին։ Համընդհանուր ճանաչում գտավ Սովետական Միության ամենալայն ու բազմակողմանի օգնությունը Սիրիային և Եգիպտոսին 1973 թ. հոկտեմբերին բռնկված արաբա-իսրայելական չորրորդ պատերազմի ժամանակ։ Սովետական Միությունը օգնում է Եգիպտոսին և Սիրիային, քանի որ արաբական երկրների պայքարը արդարացի է. նրանք պայքարում են 1967 թ. Իսրայելի կողմից գրավված արաբական տերիտորիաների ազատագրման և Պաղեստինի արաբ ժողովրդի ոտնահարված իրավունքների վերականգնման համար։ Սովետական Միության այդ քաղաքականությունը բարձր են գնահատում համայն աշխարհի առաջադիմական ուժերը։ Այդ բանն ակնհայտ դրսևորվեց այս տարվա հոկտեմբերի 25—31-ը Մոսկվայում գումարված խաղաղասեր ուժերի համաշխարհային կոնգրեսում, որի աշխատանքներին մասնակցում էին 143 երկրների 1000-ից ավելի կազմակերպությունների 3200 պատվիրակներ։ Այնտեղ, կոնգրեսի ամբիոնից, Սովետական Միությանն իրենց երախտագիտության խոսքն ուղղեցին Լիբանանի ականավոր քաղաքական գործիչ, նախկին պրեմիեր-մինիստր Ռաշիդ Քարամեն, Եգիպտոսի Արաբական սոցիալիստական միության կենտրոնական կոմիտեի անդամ, Եգիպտոսի խաղաղասեր ուժերի խորհրդի գլխավոր քարտուղար Խալեդ Մոհի Էդ-



Դինը, Իրաքի պետական մինիստր, խաղաղության և համերաշխության՝ Իրաքի ազգային խորհրդի գլխավոր քարտուղար Ազիզ Շերիֆը, Սիրիայի հայտնի քաղաքական գործիչ Մորիս Սալիբին և բազմաթիվ այլ երկրների ներկայացուցիչներ։ Նրանց ելույթներում ուշագրավ էր նաև մեկ այլ հանգամանք. նրանք նշում էին, որ հավասարության նշան չպետք է դնել այն օգնության միջև, որ Սովետական Միությունը ցույց է տալիս իսրայելական ագրեսիայի հետևանքները վերացնելու համար պայքարող արաբական երկրներին և այն օգնության, որ ԱՄՆ-ը ցույց է տալիս Իսրայելին, և որի էքսպանսիոնիստական քաղաքականությունը Մերձավոր Արևելքում ծագած կոնֆլիկտի գլխավոր պատճառն է։ Այսպիսով, Արևելքի շատ գործիչներ, իրենց հայացքներով չլինելով մարքսիստներ, հավանություն են տալիս արդարացի ու անարդարացի պատերազմների վերաբերյալ լենինյան դրույթներին և դրանցով ղեկավարվող սովետական կառավարության արտաքին քաղաքականությանը։

Սովետական կառավարությունը առաջիկայում ևս կվարի նման կուրս, հակահարված կտա ագրեսորներին և կպաշտպանի ագրեսիայի զոհ դարձած երկրներին։ Այդ բանը վերստին հավաստեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը խաղաղասեր ուժերի համաշխարհային կոնգրեսում, այս տարվա հոկտեմբերի 26-ին արտասանած իր խորիմաստ ճառում։ Նա ընդգծեց, որ աշխարհի ժողովուրդների նկատմամբ կիրառվող ագրեսիվ և բռնի գործողությունները նախկինում երբեք չեն առաջացրել այնպիսի համընդհանուր զայրույթ, բողոք և ակտիվ հակազդեցություն, ինչպես մեր օրերում։ Նախկինում երբեք նման դեպքերում շարժման մեջ չէին դրվում այնքան հզոր պետական ու հասարակական ուժեր՝ ագրեսիան կասեցնելու, բռնկված պատերազմի օջախը մարելու, խաղաղության հիմքերը ամրապնդելու համար։ Դիմելով կոնգրեսի մասնակիցներին և նրանց միջոցով համայն մարդկությանը, այդ թվում նաև Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդներին, Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Դուք կարող եք հույս դնել սովետական ժողովրդի վրա, որը թե՛ իր մեծ հեղափոխությանը հաջորդած առաջին տարիներին, թե՛ սոցիալիզմի կառուցման տարիներին, թե՛ ֆաշիզմի դեմ մղված ճակատամարտում, թե՛ հետպատերազմյան տասնամյակներում, թե՛ այժմ, եղել և մնում է մարդկության շահերի պաշտպանության համար մղվող պայքարի առաջագծում»։

Վ. Ի. Լենինը դեռևս իր ժամանակին հանճարեղորեն կանխատեսել էր, որ ապագայում մեծ տեղաշարժեր կկատարվեն գաղութային երկրների ազգային-ազատագրական շարժումների խնդիրների ու բովանդակության մեջ։ Նա հավատացած էր, որ ազգային-ազատագրական շարժումները, հասնելով գլխավոր նպատակին, իրենց տեղը կզիջեն սոցիալ-տնտեսական պրոբլեմներին։ 1921 թ. հանդես գալով Կոմինտերնի Երրորդ կոնգրեսում, Վ. Ի. Լենինը համոզված ընդգծեց. «Համաշխարհային հեղափոխության ապագա վճռական ճակատամարտերում երկրագնդի բնակչության մեծամասնության շարժումը, որ սկզբում ուղղված էր ազգային-ազատագրության նպատակին, կշրջվի կապիտալիզմի և իմպերիալիզմի դեմ, և գուցե շատ ավելի մեծ հեղափոխական դեր խաղա, քան մենք սպասում ենք» (Երկեր, հ. 32, էջ 622)։ Պատմական հետագա զարգացումը և Ասիայի ու Աֆրիկայի երկրների հեղափոխական պայքարի պրակտիկան լրիվին հաստատեցին Լենինի կանխատեսումները։ Վ. Ի. Լենինի նախատեսած ժամանակը վրա հասավ իմպերիալիզմի գաղութային սիստեմի վերացումից և Ասիայում ու Աֆրիկայում ազգային պետությունների կազմա-

վորումից հետո: Այդ պահից սկսած առաջին պլան են մղվում սոցիալ-տնտեսական զանազան պրոբլեմներ և, մասնավորապես, զարգացման ուղու ընտրության հարցը: Հենվելով զարգացող երկրներում կատարվող տեղաշարժերի տվյալների վրա և հանրագումարի բերելով Ասիայի ու Աֆրիկայի մի շարք երկրների պատմական փորձը, Լ. Ի. Բրեժնևն ընդգծել է. «Այժմ, երբ հիմնականում ավարտվել է կապիտալիստների գաղութային կայսրությունների քայքայումը, նախկին գաղութային աշխարհը թևակոխել է նոր շրջան, ավելի որոշակիորեն առաջին պլան է մղվում պայքարը արդեն ոչ թե միայն ազգային, այլև— և դա գլխավորն է հիմա— սոցիալական ազատագրության համար» (Л. И. Брежнев, Дело Ленина живёт и побеждает, М., Политиздат, 1970, стр. 57): Ազատագրված մի շարք երկրներում ազգային-ազատագրական շարժումները վերաճեցին ազգային-դեմոկրատական հեղափոխությունների: Այժմ նման հեղափոխական տեղաշարժեր են կատարվում Բիրմայում, Սիրիայում, Իրաքում, Եգիպտոսում, Սոմալիում, Ալժիրում, Գվինեայում, Կոնգոյում (Բրազավիլ) և այլ երկրներում, որտեղ հաստատվել են առաջադիմական-հեղափոխական ռեժիմներ: Իսկ նրանցից մի քանիսում, ինչպես Սիրիայում և Իրաքում, կոմունիստները միասնական առաջադիմական ճակատ են ստեղծել հեղափոխական դեմոկրատների հետ և մտել կառավարության կազմում: Սա, հիրավի, բոլորովին նոր երևույթ է, որը զարգացման մեծ հեռանկարներ ունի:

Առաջադիմական ռեժիմներ հաստատած վերոհիշյալ երկրները զարգացման ուղու հարցում ընտրությունը կատարել են հօգուտ ոչ-կապիտալիստականի: Սոցիալիստական կողմնորոշումը կազմում է այդ երկրների ներքին և արտաքին քաղաքականության առանցքը: Հայտնի է, որ իր ժամանակին Վ. Ի. Լենինը հնարավոր էր համարում զարգացման նախակապիտալիստական ստադիայում գտնվող երկրների անցումը սոցիալիզմին, շրջանցելով կապիտալիստական ֆորմացիան: Նա գտնում էր, որ առաջավոր երկրների պրոլետարիատի օգնությամբ հետամնաց երկրները կարող են անցնել «...զարգացման որոշ աստիճանների միջոցով՝ կոմունիզմին, խուսափելով զարգացման կապիտալիստական ստադիայից» (Երկեր, հ. 31, էջ 295):

Ինչպես նշեցինք, այժմ այդպիսի իրական հնարավորություն է ստեղծվել Ասիայի ու Աֆրիկայի մի շարք երկրների համար, որտեղ իշխանությունից և կառավարումից հեռացվել են ֆեոդալական տարրերը և այդ խոշոր բուրժուազիայի ու իմպերիալիզմի հետ համագործակցելու ձգտող ուժերը: Իշխանությունն անցել է քաղաքի ու գյուղի հեղափոխական ուժերի ձեռքը, որոնք արտահայտում են ժողովրդական լայն զանգվածների, մանր ու միջին արտադրողների շահերը: Հարված է հասցվել խոշոր մասնավոր սեփականատիրությանը և օտարերկրյա մոնոպոլիստական ընկերություններին, ստեղծվում և հաջող զարգանում է տնտեսության պետական սեկտորը, իրականացվում են առաջադիմական ագրարային վերափոխումներ, ընդլայնվում են աշխատավորական մասսաների սոցիալ-քաղաքական իրավունքները, բարելավվում է նրանց նյութական վիճակը: Արտաքին քաղաքականության բնագավառում այդ երկրները սերտ հարաբերությունների մեջ են Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հետ, հետևողականորեն պաշտպանում են ագրեսիան ու բռնությունները միջազգային պրակտիկայից վերացնելու սկզբունքը և հանդես գալիս հօգուտ ամեն մի երկրի տերիտորիալ ամբողջականությունը հարգելու և միմյանց ներքին գործերին չմիջամտելու: Ինչպես տեսնում



ենք, Ասիայի ու Աֆրիկայի մի շարք երկրներ ոտք են դրել զարգացման նոր
էտապ, և նրանց ժողովուրդների պատմության մեջ նոր էջ է սկսվել:
Հասկանալի է, որ այդ երկրները վայելում են Սովետական Միության և
սոցիալիստական մյուս երկրների ամենալայն աջակցությունն ու պաշտպանու-
թյունը: Դրանով իսկ սոցիալիստական երկրները կենսագործում են լենինյան
այն պատգամը, որ հետամնաց երկրները սոցիալիզմի կարող են անցնել, շըր-
ջանցելով կապիտալիզմը, առաջավոր երկրների պրոլետարիատի օգնությամբ:
Այդ օգնությունը նրանց ինտերնացիոնալ պարտքն է: Բայց պետք է նշել, որ
նախկինում, երբ ազգային-ազատագրական շարժումների գլխավոր նպատակը
Արևմուտքի իմպերիալիստական պետությունների գաղութային տիրապետու-
թյան տապալումը և ազգային անկախության նվաճումն էր, Սովետական Միու-
թյունը անխտիր օգնում և պաշտպանում էր ազատության համար պայքարող
բոլոր երկրներին: Եվ դա պարզ է ու հասկանալի: Սակայն այժմ, երբ առաջին
պլան են մղվել սոցիալ-տնտեսական խնդիրները, ապա օգնության հարցը այլ
կերպ է դրվում: Աֆրիկայի և Ասիայի նախկին գաղութների մի զգալի մասն
իր ընտրությունը կատարել է հօգուտ կապիտալիզմի, ինչպես Տաիլանդը, Սին-
գապուրը, Մալայան, Պակիստանը, Թունիսը, Տոգոն, Լիբերիան, Վերին Վոլ-
տան և այլն, որոնք սերտ համագործակցության մեջ են իրենց նախկին մետ-
րոպոլիաների և Արևմուտքի այլ պետությունների հետ: Պետությունների մի այլ
խումբ, որոնց մասին խոսվեց վերևում, ընտրել են զարգացման ոչ-կապիտա-
լիստական ուղին: Հետևաբար, Սովետական Միությունը այժմ դիֆերենցված
մոտեցում է ցուցաբերում Ասիայի ու Աֆրիկայի երկրների հետ համագործակ-
ցելու խնդրում: Նրա քաղաքականությունը, ինչպես այս, այնպես էլ միջազ-
գային բոլոր հարցերում դասակարգային է: Մեր երկիրը բարեկամական սերտ
հարաբերություններ է հաստատել զարգացման ոչ-կապիտալիստական ուղիով
ընթացող երկրների հետ, ցույց է տալիս նրանց ամենալայն քաղաքական, տըն-
տեսական, բարոյական և այլ օգնություն, նպաստում պետական սեկտորի
զարգացմանն ու ամրապնդմանը, ընդհանուր տնտեսական ու մշակութային
վերելքին, պաշտպանում նրանց ազգային անկախությունը և սուվերենիտետը:
Վ. Ի. Լենինը դեռևս 1919 թ. այն միտքն էր հայտնել, որ «Արևելքի արթ-
նացման շրջանից հետո արդի հեղափոխության մեջ մոտենում է այն շրջանը,
երբ Արևելքի բոլոր ժողովուրդները կմասնակցեն ամբողջ աշխարհի բախտի
լուծմանը, որ միայն հարստացման օբյեկտ չլինեն» (Երկեր, հ. 30, էջ 186—
187): Մենք այսօր խոր գոհունակությամբ կարող ենք նշել, որ պատմական
զարգացումը լրիվ հաստատեց ու արդարացրեց Վ. Ի. Լենինի այդ կանխատե-
սումը ևս: Արևելքը հաստատ ոտք է դրել զարգացման իր այդ նոր փուլը: Արե-
վելքի հեղափոխական ուժերն այսօր, սերտորեն դաշնակցած սոցիալիզմի հա-
մաշխարհային սիստեմի ու կապիտալիստական երկրների բանվոր դասակար-
գի հեղափոխական պայքարի հետ, ակտիվ մասնակցում են աշխարհի վե-
րակերտմանը, մի նոր աշխարհի ստեղծմանը, որի լիիրավ անդամները կդառ-
նան նախկին գաղութային երկրները: Եվ դա կլինի լավագույն հուշարձանը
Վ. Ի. Լենինի՝ Արևելքի բոլոր ճնշված ժողովուրդների անկեղծ բարեկամի ու
մեծ խորհրդատուի հիշատակին:

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՄՐՑՈՒԹՅԱՆԸ ԿՈՆԿՐԵՏ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ

**Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ**

### ՄՐՑՈՒԹՅԱՆ ԿՈՆԿՐԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Իններորդ հնգամյակի երրորդ տարին վճռական համարեցին նաև շինարարության բնագավառի աշխատողները: Միանգամայն օրինաչափ է, որ նրանք ևս խանդավառությամբ ընդունեցին «1973 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը: Շինարարական տրեստների ու վարչությունների կոլեկտիվները, կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների ղեկավարությամբ, այդ որոշման լույսի տակ, ծանր ու թեթև արեցին իրենց առկա հնարավորությունները, հաշվի առան չօգտագործված ռեզերվները և, ընդգրկվելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, ստանձնեցին նոր, պլանային առաջադրանքները գերազանցող պարտավորություններ: Շինարարների վճռական տարվա մրցության մեջ բնորոշն այն է, որ նրանց պարտավորություններն ավելի կոնկրետ են: Մայրաքաղաքի շինարարական տրեստներն ու նրանց վարչությունները սահմանել են կառույցները շահագործման հանձնելու որոշակի, պլանի համեմատությամբ, ավելի կարճ ժամկետներ: Հիմնական կառույցները ներառվեցին Հայաստանի շինարարության աշխատողների սոցիալիստական պարտավորությունների մեջ: Այդ պարտավորություններում կարդում եմ. «Քաղաքի մոնտաժային ու շինարարական կազմակերպությունների, շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվում են կապալային աշխատանքների պլանը կատարել մինչև դեկտեմբերի 27-ը»:

Կոնկրետությունը ինչպես պլանավորման, այնպես էլ սոցիալիստական մրցության արդյունավետության բարձրացման կարևոր ու վճռական պայման է: Այն հնարավորություն է ընձեռում սահմանել մշտական վերահսկողություն, բարձրացնել մարդկանց պատասխանատվությունը և արագ թափ հաղորդել շինարարական աշխատանքներին: Կոնկրետության արտահայտություն են նաև



սոցիալիստական մրցության նոր պայմանները, որ մշակել են Հայաստանի արդյունաբերական շինարարության մինիստրության կոլեգիան ու շինարարական տրեստների վարչությունները և կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները: Այդ պայմաններով սահմանվել է մրցության կազմակերպման ու հաղթողների պարգևատրման կարգը: Ամեն ամիս արդյունաբերության շինարարության մինիստրության կոլեգիան ու ճյուղային արհմիության հանրապետական կոմիտեն հանրագումարի են բերում մրցության արդյունքները և հաղթողներին պարգևատրում փոխանցիկ կարմիր դրոշներով ու դրամական մրցանակներով: Ամենաառաջավոր շինարարական կազմակերպությունների կոլեկտիվները ներկայացվում են Հայաստանի Մինիստրների սովետի ու ՀԱՄԽ-ի և միութենական մրցանակների:

Մրցության հաղթողների նյութական ու բարոյական խրախուսման գործը լավ է կազմակերպված «Երարդշին» տրեստում: Այստեղ սահմանված երկու փոխանցիկ դրոշներից մեկը տրվում է առաջավոր շինվարչությանը, մյուսը՝ առաջավոր օժանդակ ձեռնարկությանը: Հաղթողներն ստանում են նաև դրամական պարգև: Տրեստի շինվարչությունները սահմանել են երեքական փոխանցիկ կարմիր դրոշ և դրամական մրցանակ՝ առաջավոր աշխղեկությանը, առաջավոր բրիգադին և գլոբինյան տնտհաշվարկային մեթոդով աշխատող բրիգադաների հաղթողին պարգևատրելու համար: Տրեստի կուսակցական ու արհմիութենական կոմիտեները կիրառում են նաև խրախուսման այլ ձևեր: Կուսկոմիտեի քարտուղար Մարգարիտա Ղազարյանը ցույց է տալիս նոր ձևավորվող հուշալբոմը, որը կրելու է ««Երարդշին» տրեստի աշխատանքի վետերաններ» անվանումը: Այստեղ փակցվելու են 20—30 տարի տրեստում աշխատող առաջավոր բանվորների ու ծառայողների լուսանկարները:

### ՆՈՐԸ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Երևանի համաշինական № 2 տրեստի սոցիալիստական մրցության պայմաններում նշվում է, որ բրիգադային սոցմրցության հիմնական ցուցանիշը համարվում են «...աշխատանքի կազմակերպման պրոգրեսիվ մեթոդները՝ տնտհաշվարկային, ակորդային և ակորդային-պարգևատրման վարձատրության սկզբունքները»: Նախատեսվում է առաջնությունը տալ Նիկոլայ Զլոբինի բրիգադայի օրինակով (տնտհաշվարկային-կոմպլեքսային եղանակով) աշխատողներին:

Զլոբինյան մեթոդով աշխատող բրիգադաներ ձևավորվեցին շինարարական գրեթե բոլոր տրեստներում: Ճիշտ է, նրանցից շատերը տակավին իրենց դերում չեն, բայց մի շարք բրիգադաներ արդեն լայն ճանաչում են ստացել: Երևանի համաշինական № 1 տրեստի № 2 շինվարչության կոմունիստական աշխատանքի բրիգադան, որը ղեկավարում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Գ. Սարգըսյանը, ի պատասխան ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ որոշման, հանդես է եկել հայրենասիրական նոր նախաձեռնությամբ, ստանձնել սոցիալիստական բարձր պարտավորություններ: Բրիգադան խոստացել է բանել սահուն գրաֆիկով, կիրառել առաջավոր մեթոդներ, կրճատել շինմոնտաժային աշխատանքների ժամկետները, օբյեկտները շահագործման հանձնել «գերազանց» գնահատականով, կառույցների ծախքերը

կրճատել 8—10 հազար ռուբլով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 10 տոկոսով, հնգամյակի պլանը կատարել չորս տարի հինգ ամսում։ Այս նախաձեռնությունը քննարկվեց ՀԱՄԽ-ի 1973 թ. հունվարի 28-ի նիստում, հավանության արժանացավ ու տարածվեց շինարարական կազմակերպություններում։ Բրիգադան հնգամյակի երրորդ վճռական տարին եզրափակում է իր խոստումը կատարած։

1973 թ. օգոստոսին հանրագումարի բերելով կոմպլեքսային բրիգադաների աշխատանքի արդյունքները՝ Հայաստանի արդյունաբերական շինարարության մինիստրությունը հանրապետության 31 բրիգադավարների պարգևատրեց «Սոցիալիստական մրցության հաղթող» միասնական համամիութենական կրծքանշանով։

## ՄՐՑՈՒԹՅՈՒՆՆ ԻՆՉՊԵՍ ՈՐ ԿԱ

Արդյունաբերական շինարարության մինիստրության, նրա տրեստների ու վարչությունների մշակած սոցիալիստական մրցության նոր պայմաններով պահանջվում է մրցությունը կազմակերպել մի քանի ձևերով՝ տրեստների, շինվարչությունների, աշխղեկությունների միջև, միջբրիգադային ու անհատական։ Դեռ ավելին, «Երքիմշին» տրեստում մրցություն է ծավալվում լավագույն ռացիոնալիզատորի, մեքենավարի, հյուսնի, որմնադիրի, մոնտաժողի, ծեփագործի կոչման համար։

Անտարակույս, այս ամենը լավ է, եթե, իհարկե, մրցությունը կազմակերպվի պատշաճ կերպով, կամ նույնիսկ շինարարական այդ կազմակերպությունների մշակած պայմաններին համապատասխան։ Այդ նշանակում է, որ շինարար բանվորների հոծ զանգվածներին հնարավոր է ընդգրկել սոցիալիստական մրցության մեջ, ապահովել դրա գործարարությունն ու արդյունավետությունը, միավորել կառուցողների ջանքերը՝ շինարարության հրատապ խնդիրները պատվով լուծելու համար։

Այժմ տեսնենք, թե իրականում ինչպես է կազմակերպվում սոցիալիստական մրցությունը կոնկրետ օբյեկտներում։

...Բնակելի հինգհարկանի շենք է Ջեյթուն թաղամասում, սարալանջին։ Երկու հարկն արդեն շարված է. տուֆի քարերը ձուլվել են միմյանց ու, ասես, ժպտում են կառուցողին։ Ցուցանակին կարդում եմ. «Կառույցի շինարարների՝ Եղիազարյան Ռաֆիկի բրիգադան աշխատում է միութենական ճանաչում ստացած Զլոբինի մեթոդով»։ Մի ուրիշ տեղ փակցված են բրիգադայի պարտավորությունները։ Բրիգադայի 16 անդամների անունից Ռ. Եղիազարյանը հայտնում է.

— Խոստացել ենք մյուս տարվա մայիսին շենքը շահագործման հանձնել. պլանով հունիսի մեկին է։

Չես կարող չհավատալ՝ տեսնելով պլոբինականների խանդավառ աշխատանքը։ Առաջին իսկ պահից նկատելի է, որ նրանք մի առանձին եռանդով ու հավատով են գործի կպել։ Շենքի առանձին հատվածների կառուցման համար նրանք սահմանել են ամսական ու եռամսյակային ժամկետներ և ձգտում են ամեն ինչ անել ժամանակին ու լավ։

Բայց ահա «Երքիմշին» տրեստի № 9 շինվարչության օբյեկտում եմ։ № 1 տրիկոտաժի ֆաբրիկայի մասնաշենքն է։

— Ինչպե՞ս է կազմակերպվում սոցմրցությունը,— հարցնում եմ աշխղեկ Վ. Գրիգորյանին։



— Դե՛, ինձ պլան են տալիս, ուզում եմ կատարել։

Հասկանալի է, սոցիալիստական մրցության կազմակերպմանը քաջատեղյակ մարդու պատասխան չէ։ Աշխղեկությունն ունի 46 բանվոր և այս օբյեկտում զբաղված է մեկ տարուց ավելի։ Դրա կառուցումը տակավին ընթացքի մեջ է, սակայն, որքան տարօրինակ է, այստեղ սոցմրցությունը հիշեցնող ոչինչ չկա, նույնիսկ՝ սոցիալիստական պարտավորություններ։ Անհատական մրցություն պարզապես գոյություն չունի։

Վշտացուցիչն այն է, որ աշխղեկները, նույնիսկ շինվարչությունների առանձին ղեկավարներ անտեղյակ են (կամ այդպես են ձևանում) սոցիալիստական պարտավորություններից։

— Ինչպիսի՞ պարտավորություն ունեք այս տարվա համար,— սեպտեմբերի վերջին հարցնում եմ «Երքիմշին» տրեստի № 1 շինվարչության կողմից կառուցվող՝ Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատի բնակելի շենքի աշխղեկ Ա. Մարտիրոսյանին։ Իսկ նա որպես պատասխան ուսերն է թոթվում։ Նա չգիտեր, որ իրենց կոլեկտիվը սոցիալիստական մրցությամբ այդ շենքի շահագործման հանձնելու ժամկետը սահմանել է երրորդ եռամսյակը։

— Որտե՞ղ են սոցիալիստական պարտավորությունները,— հարցնում եմ համաշինական № 2 տրեստի աշխղեկ Պ. Սարգսյանին, որը ղեկավարում է շինբանկի վարչական շենքի շինարարական մասը։

— Կարծեմ բրիգադավարների մոտ են։

Այդ նույն հարցին № 14 շինտրեստի № 2 շինվարչության կողմից կառուցվող լայնէկրան կինոթատրոնի աշխղեկ Ա. Ավետիսյանն էլ պատասխանեց.

— Շինվարչության արհմիության կոմիտեում կլինեն։

Իսկ Կ. Ցետկինի անվան կարի ֆաբրիկայի արտադրական մասնաշենքի- աշխղեկ Մ. Հակոբյանը հայտնում է, որ պարտավորությունները կա՛մ շին- վարչությունում կլինեն, կա՛մ տրեստում...

Հսկա այս կառույցներում էլ, որտեղ աշխատում են մեծ թվով բանվոր- ներ, սոցիալիստական մրցությունը հիշեցնող ոչինչ չկա։ Բանվորները պատ- կերացում չունեն պարտավորությունների մասին, չգիտեն, թե իրենց կոլեկ- տիվները ինչպիսի բնագծերի համար են պայքարում։ Անհատական, բրիգա- դային ու աշխղեկությունների մրցությունը կազմակերպվում է... սոսկ թղթի վրա, գզրոցների ու թղթապանակների մեջ։ Եվ մրցության այս ձևականությու- նը, ցավոք սրտի, տիպական է շատ օբյեկտների կամ բոլոր այն կառույց- ներին, որտեղ առիթ ունեցա լինել, որոնց մասին ստորև էս կխոսվի։ Ահա մրցության «կազմակերպման» մի օրինակ էս։ Տարեսկզբին Ավանի ուղե- տարի շինհրապարակում երևացին սոցմրցությունը հիշեցնող լոզունգներ։ Զգացվում էր, որ «Երևանշին» գլխավոր վարչության ղեկավարները, կուսակ- ցական ու արհմիութենական կազմակերպությունները մտահոգված են սոցիա- լիստական մրցության կազմակերպմամբ ու ծավալմամբ։ Սակայն, ի զար- մանս Ավանի, Նոր Նորքի մշտական ուղևորների, չանցած մի քանի ամիս, հա- վաստիացման այդ լոզունգները նախ «խունացան», ապա՝ չքացան, այդ թվում նաև գլխավոր լոզունգը, որն ազդարարում էր. «Կառույցը շահագործման կը- հանձնենք Հոկտեմբերյան հեղափոխության 56-րդ տարեդարձի օրը»։ Ի՞նչ իմանաս, երևի մրցության հարցերի լուծման միակ ուղին այդ էր...

### ԻՆՉՈ՞Ւ ԵՆ ԺԱՄԿԵՏՆԵՐԸ ԽԱԽՏՎՈՒՄ

Վերը նշեցի, որ շինարարական կազմակերպություններն իրենց սոցիալիստական պարտավորություններում սահմանել են կառույցները շահագործման հանձնելու կոնկրետ ժամկետներ։ Իհարկե, կան նաև պլանային ժամկետներ։ Բայց եթե շինարարական կոլեկտիվը սոցիալիստական մրցությամբ խոստանում է կրճատել պլանային ժամկետները, այդ, ըստ էության, նշանակում է, որ նա հաշվի է առել իր հնարավորությունները և մոբիլիզացրել իր անդամների եռանդը, աշխատանքային ու նյութական բոլոր ռեսուրսները՝ ստանձնած պարտավորությունը պատվով կատարելու համար։ Երևան քաղաքի աշխատավորների սոցիալիստական պարտավորություններում հենց այդպես էլ գրված է. «Նյութատեխնիկական ռեսուրսները և աշխատուժը կենտրոնացնել գործարկվող կարևորագույն արդյունաբերական կառույցներում և շահագործման հանձնել 45 հազար քառակուսի մետր արտադրական տարածություն։ Ժամկետից շուտ, մինչև դեկտեմբերի 20-ը, կատարել թեթև, սննդի ու մսակաթնեղենի արդյունաբերության օբյեկտների շինմոնտաժային աշխատանքների պլանը»։

Ի դեպ, թեթև, սննդի ու մսակաթնեղենի արդյունաբերության օբյեկտները համարվում են պետական նշանակություն ունեցող կարևոր կառույցներ։ Դրանք ժամանակին շահագործման հանձնելու պահանջը բխում է իններորդ հնգամյակի հիմնական խնդրի՝ բնակչության կենսամակարդակի բարձրացման շահերից։ Այս կապակցությամբ «Պրավդա» թերթի 1973 թ. նոյեմբերի 2-ի «Շինարարների պատվի գործը» առաջնորդող հոդվածում նշված է. «Իններորդ հնգամյակում բարձր տեմպերով զարգանում են մեր ինդուստրիայի՝ ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերը։ Ինչպես նախատեսված է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով, այդ նպատակին հատկացված կապիտալ ներդրումները աճել են, այժմ կառուցվում են ևս հարյուրավոր ձեռնարկություններ, որոնք պետք է թողարկեն մասսայական սպառման ապրանքներ»։ Առաջնորդող հոդվածը, վկայակոչելով 1973 թ. սկզբին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի ընդունած «1973—1975 թվականներին թեթև և սննդի արդյունաբերության ճյուղերի կարողությունների շահագործման հանձնումը ապահովելու միջոցառումների մասին» որոշումը, շինարարական կազմակերպությունների ղեկավարների, կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է համարում, շինարարական հրապարակներում աշխատանքի կազմակերպումը, մատակարարումների հստակությունը ապահովելու, սոցիալիստական գործարար մրցություն ծավալելու միջոցով, ամենակարճ ժամկետներում և բարձր որակով շահագործման հանձնել մասսայական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկություններն ու կարողությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի այս որոշումից ելնելով՝ ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոն 1973 թ. հուլիսի 6-ի նիստում քննարկել է «Թեթև, սննդի, մսեղենի ու կաթնեղենի և ձկնեղենի արդյունաբերության քաղաքային օբյեկտների շինարարության ընթացքի մասին» հարցը և մշակել դրանց կառուցման գործը բարելավելու միջոցառումներ։ Քաղկոմի բյուրոն այդ կարևոր օբյեկտների շինարարության դանդաղ տեմպը պատճառաբանել է շինմոնտաժային աշխատանքների վատ կազմակերպմամբ, շինանյութերի, առաջին հերթին, մետաղի ու ցեմենտի անբավարար մատակարարմամբ, բանուժի պակասով, պատվիրատու հիմնարկությունների ոչ հոգատար վերաբերմունքով։



Եվ ահա այս որոշումն ընդունելուց անցել է բավականաչափ ժամանակ, իսկ արձանագրված թերությունները շարունակում են մնալ շինարարական ու մոնտաժային կազմակերպությունների մշտական ուղեկիցները։ Փաստեր, որքան ուզեք։ Կաշվի գալանտերեայի ֆաբրիկայի արտադրական ու վարչական մասնաշենքերը կառուցում է «Երարդշին» տրեստի № 1 շինվարչությունը։ Տրեստի կուսկազմակերպության՝ 1973 թ. մայիսին տեղի ունեցած ժողովում շինվարչության պետ Լ. Շահբազյանը իր ելույթում ժողովականներին տեղեկացրել է, որ «Կաշվի գալանտերեայի ֆաբրիկայի պլանի կատարումը դժվարության հետ է կապված»։ Սեպտեմբերի վերջերին այդ օբյեկտի աշխղեկ Թ. Հակոբյանը դժգոհում էր շինանյութերի մատակարարումից. շենքերը պատրաստ են, բայց ցեմենտ չլինելու պատճառով սալահատակումը չենք կարողանում սկսել, ապա կես կատակ, կես լուրջ.

— Շենքերի կառուցումն ավարտել ենք, սպասում ենք մոնտաժողները գան քանդեն, որ նորից գործ անենք։

Հետո նա ինձ ու տրեստի կուսկոմիտեի քարտուղարին առաջնորդում է շենքի առաջին հարկը։ Պատերը սվաղված են, բայց էլեկտրամոնտաժողները, մի փոքրիկ փոս անելու փոխարեն, այնպես ուժգին են հարվածել պատին, որ խոշոր ճեղքվածք է առաջացել։ Սա սոսկ ակամայից աննշան թվացող փաստ է, բայց այդպիսի փաստերի, որքան ցանկանաք, կարող եք հանդիպել շատ օբյեկտներում։

Հայաստանի թեթև արդյունաբերության մինիստրության կապիտալ շինարարության բաժնի պետ Սվետլանա Մանթաշովան տեղեկացնում է, որ կաշվի գալանտերեայի շենքերի շինմոնտաժային աշխատանքների 10 ամսվա պլանը կատարվել է 96,5 տոկոսով։

Սոցիալիստական պարտավորությունների թերակատարման գործում № 14 տրեստն իր հավասարը չունի։ Այս տրեստի շինվարչություններն են հիմնականում զբաղված թեթև և սննդի արդյունաբերության օբյեկտների կառուցմամբ։ Տրեստի կոլեկտիվը սոցիալիստական մրցությամբ, ընդհանուր պարտավորություններից զատ, ստանձնել է այդ օբյեկտների շահագործման հանձնելու վերաբերյալ առանձին պարտավորություններ, որոնց տակ դրված են տրեստի կառավարիչի, կուսբյուրոյի քարտուղարի, արհմիության կոմիտեի նախագահի, շինվարչությունների պետերի և շինարարական իրերի կոմբինատի դիրեկտորի ստորագրությունները։ Ըստ այդ պարտավորությունների՝ Շահումյանի կաթի գործարանը, օրական 200 տոննա կաթնամթերքի արտադրության կարողությամբ, պետք է շահագործման հանձնվեր 1973 թ. դեկտեմբերի 20-ին, Երևանի ծխախոտի, ձեթ-օճառի, մսի կոմբինատների արտադրական կարողությունների շինարարության տարեկան պլանը կատարվեր նոյեմբերի 29-ին, Կ. Ցետկինի անվան կարի ֆաբրիկայինը՝ դեկտեմբերի 10-ին։ Բոլորել էր նոյեմբեր ամիսը, ու Հայաստանի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության կապիտալ շինարարության բաժնում հայտնում են, որ կաթի կոմբինատի իշնարարության 11 ամսվա պլանը կատարվել է 90,1, շինմոնտաժային աշխատանքներինը՝ 93 տոկոսով՝ ավելացնելով. «Շինարարությունը դանդաղ է ընթանում, կոյուղու, գազի ուղիները չեն անցկացվում, կաթսայատունը, սառեցման կայանը (գրադիրնի) դանդաղ են կառուցվում»։

— Կաթի գործարանն այս տարվա բան չէ,— այսպիսի կարծիք են հայտ-

նում տրեստի պատասխանատու աշխատողները և հենց ինքը՝ կառավարիչ Լ. Եգանյանը:

Առավել վատթար վիճակում է Կ. Ցետկինի անվան № 1 կարի ֆաբրիկայի շինարարությունը: Շինարարության աշխատանքների ծավալի 10 ամսվա պլանը կատարվել է ընդամենը 65 տոկոսով, իսկ մոնտաժային աշխատանքների համար նախատեսված 290 հազար ռուբլուց ծախսվել է միայն 181 հազարը:

Այսքանից հետո կարիք կա՞ բացատրելու, որ այդ օբյեկտների շինարարության տարեկան պլանները չեն կատարվի, հետևապես և թղթի վրա կմնան պարտավորությունները: Կարծում եմ՝ ոչ:

№ 14 տրեստի կառավարիչը, խոր հոգոց հանելով, եզրակացնում է, որ թերևս իրականացվեն միայն կոնյակի գործարանի և ծխախոտի կոմբինատի օբյեկտների շինարարության պարտավորությունները:

— Իսկ պարտավորություններն ստանձնելիս չգիտեի՞ք, որ հնարավոր չէ դրանք կատարել,— հարցնում եմ տրեստի կառավարչին:

— Գիտեինք, բայց, դե, պետք էր, գրեցինք:

Ինչպես պետական պլանները, այնպես էլ կոլեկտիվների պարտավորությունները պետք է ռեալ հիմք ունենան, բխեն տվյալ կոլեկտիվի իրական հնարավորություններից: Իր ժամանակին Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս չստանձնել ուժերից վեր պարտավորություններ: Մեր կուսակցությունը պահանջում է, պլանները կազմելիս ու պարտավորություններն ընդունելիս, ցուցաբերել գիտական մոտեցում, հաշվի առնել դրանց կատարման հնարավորությունները, ռեզերվները, օբյեկտիվ և սուբյեկտիվ մյուս գործոնները: Շինարարական կազմակերպությունների ղեկավարները, կուսակցական ու արհմիութենական կոմիտեներն ու բյուրոները պարտավոր են իմանալ, որ հենց այնպես, «գրելու» համար, սոսկ ձևի համար խոստում չեն տալիս, մտացածին ժամկետներ չեն սահմանում: Նրանք պետք է ելնեն հետևյալ սկզբունքից. «Կարո՞ղ ես, պարտավորվի՛ր, պարտավորվե՞լ ես, կատարի՛ր»:

Ասել, թե № 14 տրեստի ղեկավարներն ու կուսկազմակերպությունը չեն զբաղվել օբյեկտների կառուցման հարցերով, սխալ կլինի: Նրանց մտահոգել է շինարարության դանդաղ ընթացքը: 1973 թ. մարտի 29-ին շինտրեստի կուսբյուրոյի նիստում քննարկվել է կաթի գործարանի շինարարության ընթացքը: № 1 շինվարչության գլխավոր ինժեներ Ս. Պողոսյանը ցանկություն է հայտնել, որպեսզի «ցեմենտի, տախտակի ու ավազի մատակարարումը լինի սիստեմատիկաբար», իսկ շինտրեստի գլխավոր ինժեներ Հ. Մանվելյանը նկատել է, որ «Շինարարությունում չեն օգտվում ցանցային գրաֆիկից, որը պետք է փակցվի պատին և ամենօրյա հսկողություն սահմանվի դրա իրականացման նկատմամբ: Օբյեկտի աշխղեկներն իրենց ամենօրյա առաջադրանքները չեն ստանում: Երբեմն լինում են կրկնակի աշխատանքներ... բացակայում է շինարարական կուլտուրան, բանվորները չունեն հանգստի տարրական պայմաններ»:

Այդ նիստից վեցուկես ամիս անց տեղի ունեցած կուսակցական հաշվետու-ընտրական ժողովում տրեստի կուսբյուրոյի քարտուղար Ելենա Բաբայանը հաշվետու զեկուցման մեջ կաթի գործարանի օբյեկտի մասին ասում է. «Դրությունը չի փոխվում, չնայած կարծեցյալ ձեռնարկած միջոցառումներին, օբյեկտը դեռևս թափթփված վիճակում է, չի կազմակերպված երկհերթ աշխատանք, անբավարար են աշխատում ենթակապալառու կազմակերպությունները, օբյեկտը ժամանակին հանձնելու գործը կասկածի տակ է, օբյեկտում չկա



հսկող աչք, այնտեղ տեղի են ունենում չարաշահման և պետական ունեցվածքի նկատմամբ վատնումների ու անտնտեսվարության դեպքեր»:

Այս տրեստը կառուցում է արդյունաբերական, մշակութային այլ օբյեկտներ ևս, որոնց մեծ մասի կառուցման աշխատանքները նույնպես դանդաղ են ընթանում: Այսպես, № 1 ավտոբուսային պարկի վարչական շենքը, ըստ սոցիալիստական պարտավորությունների, պետք է շահագործման հանձնվեր երրորդ եռամսյակում: Սակայն նոյեմբերի վեցին այդ շենքի տանիքը տակավին չէր ծածկված, ծեփի, մանրահատակման, դռների ու պատուհանների տեղադրման, ջեռուցման, սանհանգույցի, էլեկտրացանցի անցկացման աշխատանքների զգալի մասը չէր կատարված:

«Հայհաստոցանորոգում» գործարանի շինարարության վերահսկիչ-ինժեներ Ռ. Մշեցյանը տեղեկացնում է, որ № 14 տրեստի № 3 շինվարչությունը իրենց ձեռնարկության արտադրական մասնաշենքը պետք է շահագործման հանձներ 1972 թ. դեկտեմբերին: Հետո ստորագրվել է համապատասխան փաստաթուղթ՝ այն 1973 թ. դեկտեմբերին ավարտելու մասին:

Բայց, «հաշվի առնելով իր հնարավորությունները», տրեստի կոլեկտիվը սոցմրցությամբ պարտավորվել է այդ շենքի կառուցումն ավարտել 1973-ի երրորդ եռամսյակում: Երբ դեկտեմբերի 17-ին այցելեցի այնտեղ, ականատես եղա անավարտ ու թերավարտ, ինչպես նաև ցածրորակ ու կրկնակի աշխատանք պահանջող շատ գործերի:

— Տարվա համար նախատեսված 200 հազար ռուբլուց,— ասում է վերահսկիչ-ինժեները,— 11 ամսում իրացվել է ընդամենը 146 հազար ռուբլի: 1974 թ. հունիսին կավարտվի:

— Ո՞րն է ձեր ամենալավ օբյեկտը,— հարցնում եմ № 14 տրեստի կառավարչին:

Առանց հիշողությունը փորփրելու՝ նա իսկույն պատասխանում է.

— Ծխախոտի կոմբինատի պահեստը, լայնէկրան կինոթատրոնի շենքը: Պահեստի շենքում աշխատում է Բաբկեն Անթանեսյանի կոմպլեքսային բրիգադան:

Հոյակապ, գեղեցիկ կառույց է լայնէկրան կինոթատրոնի շենքը, ունի ճարտարապետական ինքնատիպ լուծում: Երկհերթ աշխատանք է կազմակերպված այստեղ, բայց, այնուամենայնիվ, շինարարությունը դանդաղում է: Իսկ երիտասարդ աշխղեկ Ս. Ալեքսիսյանը դժկամում է.

— Ժամանակին շինանյութերով չեն ապահովել. մարմարն է պակասում, երեսպատման սալիկները և այլն:

Ես հիշեցնում եմ, որ ըստ սոցիալիստական պարտավորությունների՝ շենքը պետք է շահագործման հանձնվի 1973 թ. չորրորդ եռամսյակում:

— Ո՛չ միայն պարտավորությամբ, այլև պլանով պետք է շահագործման հանձնվեր այդ ժամկետում: Գործին խանգարել է մատակարարումների վատ կազմակերպումը:

Ծխախոտի կոմբինատի օբյեկտում եմ: Զրուցում եմ կոմպլեքսային բրիգադայի բրիգադավար Բ. Անթանեսյանի հետ: Իրոք, լավ են աշխատել շինարար տղաները, ժամանակից շուտ ոտքի են կանգնեցրել շենքը, բայց շինարարության «հիվանդությունը» խանգարել է նաև նրանց: Եվ բրիգադավարը բացատրում է.

— Զլոբինյան այս մեթոդը օգտակար է և՛ շինարարներիս, և՛ պետության

համար։ Բայց մեզ լավ չեն նայում, վատ են մատակարարում։ Օրինակ՝ ամբարանի երկաթը բերեցին այն ժամանակ, երբ մենք վաղուց ուրիշ կազմակերպությունից ձեռք էինք բերել և գործն ավարտել։ Հիմա այդ երկաթը շենքի ներսում թափված է։ Հետո, թե՝— հիմա անելիք չունենք, բայց նոր օբյեկտ չեն տալիս, փոխանակ խրախուսելու զլոբինյան մեթոդը, դեռ ավելին, իմ բրիգադայից երեք բանվորների էլ տարել են ուրիշ օբյեկտ։

— Սեպտեմբերին,— զրույցին միանում է, եռակցող բանվոր Մ. Սարգսյանը,— շենքն ավարտել ենք, բայց այստեղ գամված ենք, որովհետև պատուհանների ալյումինե շրջանակները ուշ բերեցին, հիմա էլ երեք թուրչքինը պակասում է։ Չգիտենք օգուտով ենք կառուցել, թե՞ վնասով։

Հիմա էլ բրիգադավարը.

— Տեսնո՞ւմ եք այս աշտարակային վերամբարձ կռունկը։ Սեպտեմբերից պարապ կանգնած է, բա ափսոս չէ՞, ուրիշ տեղ գուցե հարկավո՞ր է։

Մինչդեռ սեպտեմբերի 29-ին տեղի ունեցած տրեստի կուսակցական ժողովում մի ուրիշ օբյեկտի աշխղեկ Հ. Պետրոսյանը դժգոհել է, որ իր «օբյեկտը կարիք է զգում վերամբարձ կռունկի»։ Կամ «Երարդշին» տրեստի՝ զլոբինյան մեթոդով աշխատող բրիգադայի բրիգադավար Ռ. Եղիազարյանը ասում էր. «Շենքի կառուցումն սկսեցինք ապրիլի մեկին, բայց վերամբարձ կռունկը տրամադրեցին հունիսի մեկին, եթե կռունկը ժամանակին ստանայինք, երրորդ հարկը ավարտած կլինեինք»։ Իսկ «Երքիմշին» տրեստի կուսկոմիտեի քարտուղար Ռ. Մնացականյանը կշտամբում է սննդարդյունաբերության մինիստրությանը այն բանի համար, որ պիտակների ու տարաների կոմբինատի համար չնչին գումարներ է հատկացնում, մինչդեռ միայն աշտարակային վերամբարձ կռունկի օգտագործման օրական ծախսը կազմում է 35—40 ռուբլի։

Զարմանում ես. մի տեղ վերամբարձ կռունկը անգործ կանգնած է, մի ուրիշ տեղ հարկավոր է, բայց չկա։ Երկու դեպքում էլ վնասը հսկայական է։ Արդյոք № 14 տրեստի № 2 շինվարչության պետ Վ. Մանուկյանը այդպիսի հաշվարկ կատարո՞ւմ է։

ՍՄԿԿ XXIV համագումարի և «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներով պահանջվում է մրցողների համար ստեղծել նորմալ պայմաններ, օգնել նրանց՝ կատարելու ստանձնած պարտավորությունները։ Պիտի ընդունել, որ այս պահանջները վատ են իրականացվում։ Տակավին չեն ապահովվում շինանյութերի ու կառուցվածքների մատակարարման հստակությունը, կառուցող և ենթակապալառու կազմակերպությունների սերտ համագործակցությունը, ցածր է շինարարական կուլտուրան։ Վերջինս լայն հասկացություն է, այն ընդգրկում է շինարարական շատ գործոններ՝ նախագծերից ու նախահաշիվներից մինչև շինարարական աշխատանքի որակը։ Այս կարգի թերություններն իրենց զգացնել են տալիս շատ օբյեկտներում։

Համաշինական № 2 տրեստի կոլեկտիվը սոցիալիստական մրցությամբ խոստացել է կինոլեկտորիումի շենքը շահագործման հանձնել երկրորդ, իսկ շինբանկինը՝ երրորդ եռամսյակում։ Բայց ահա երրորդ եռամսյակն անցել էր, իսկ կինոլեկտորիումի աշխղեկ Կ. Հակոբյանը թե՝

— Առաջին հերթին պակասում է ապակեծրարը, նախատեսված 900 քմ-ից ստացել ենք 150-ը։ Շինանյութերի մինիստրությունը մարմարով չի ապահովում։ Հատակը պետք է պատենք գեղարվեստական մանրափայտով, բայց



Իջևանի գործարանը չի տալիս, երևի 5—6 ամիս կտևի մինչև էկրանի սարքավորումներն ստանանք։ Շենքը պետք է շահագործման հանձնեինք անցյալ տարի, բայց տեսնո՞ւմ եք, այս տարի ևս գլուխ չի գա։

Կարևոր այս կառույցի մոնտաժման աշխատանքներին մասնակցում են մի շարք ենթակապալառու կազմակերպություններ՝ «Հայարդվինտիլյացիա», «Հայսանտեխնիկա», «Հայկապմոնտաժ», «Հայէլեկտրամոնտաժ» տրեստները, հատուկ մետաղյա կառուցվածքների գործարանը, սակայն, ինչպես պարզվում է, նրանք վատ են կատարում իրենց պարտականությունները։

— Այս ենթակապալառու կազմակերպություններից ոչ մեկը,— ցավով ասում է աշխղեկ Կ. Հակոբյանը,— գործ չի անում, իսկ իմ աշխատանքը կախված է նրանցից։

Շինբանկի ներքին հարդարման աշխղեկ Ս. Մելքոնյանն էլ դժգոհում է.

— Պատուհանի 12 տոննա ալյումինե շրջանակ ենք ստանալու. սեպտեմբերն անցել է, իսկ հատուկ մետաղյա կառուցվածքների գործարանը մինչև օրս տվել է հինգ տոննա։

Վերն ասածից բնավ չթվա, թե շինարարության ասպարեզում լավ բաներ չկան։ Կան, իհարկե։ Ի պատիվ շինարարների պիտի ասել, որ արտադրական, դպրոցական ու բնակելի շատ շենքեր շահագործման են հանձնվել ժամանակին ու բարձր որակով։ Այդպես էլ պիտի լինի։ Չէ՛ որ շինարարական բոլոր կազմակերպությունները սոցիալիստական մրցության պայմանագրերում նշել են կառույցները շահագործման հանձնել «Լավ» և «Գերազանց» գնահատականներով։

Ցավով պետք է նշել, սակայն, որ երբեմն հարկ է լինում շենքը շահագործման հանձնելուց մի քանի ամիս հետո ևս զբաղվել փոքր ու մեծ թերությունների վերացմամբ։ Համաշինական № 2 տրեստի կուսկոմիտեի քարտուղար Ա. Զաքարյանի և արհկոմի նախագահ Բ. Աղաբեկյանի հետ № 8 շինվարչության պետ Ն. Աստվածատրյանի առանձնասենյակում ենք. վերադարձել ենք Էրեբունի թաղամասում այս շինվարչության կառուցած երկու օբյեկտներից (№ 160 դպրոց և № 28 մանկապարտեզ), որոնք «շահագործման» են հանձնվել սեպտեմբերի 1-ին։ Շինվարչության պետը բարյացակամությամբ ունկնդրում է մեզ և ծոցատետրում նշում մեր նկատած թերությունները։ Ահա դրանց ոչ լրիվ ցանկը։ Մանկապարտեզի շենքում ջրուղիները մոնտաժվել են անփութորեն, ջրի խողովակները չեն միացվել էլեկտրատաքացման հարմարանքներին, որոնք անգործության են մատնվել, խոհանոցի պատերի ու հատակի սալիկներն արդեն թափվում են և այլն։ Դպրոցի շենքում զանգը տակավին չի տեղադրված, սանիտարական հանգույցը վատ է գործում, ծորակները գլխիկներ չունեն, պատուհանների ճեղքերը չեն փակվել և այլն։

— Հասարակ բաներ են,— ասում է ընկ. Աստվածատրյանը և խոստանում կարճ ժամանակում վերացնել։

Եթե, իրոք, «հասարակ» բաներ են, արդյոք չէ՞ր կարելի ժամանակին վերացնել։ Ահա մի «հասարակ բան» ևս։ № 14 տրեստի № 2 շինվարչությունը ծխախոտի կոմբինատի պահեստի մի մասը մասնակի շահագործման է հանձնել 1972 թ. դեկտեմբերին։ Կազմվել է «մասնակի» ակտ թերությունները վերացնելու մասին։ Ակտով պահանջվել է նաև ապակեպատել մուտքին կից պատուհանները։ Բայց «հասարակ բանը» 11 ամիս շարունակ մոռացության է տրվել, որի պատճառով չուգունե խողովակները պայթել են, և ջուրը անարգել

*թափվում է նկուղը (ուր ապրանքներ կան), միաժամանակ փչացնում պատերը։ Կոմբինատից քանիցս գրություններ են հղել № 14 տրեստի կառավարչին և «Հայարդմոնտաժ» տրեստի № 4 մոնտաժային վարչության պետ Օ. Հովսեփյանին՝ հիշեցնելով, որ անհրաժեշտ է վերացնել «մասնակի» թերությունները, ապակեպատել ևս 720 քմ պատուհան։ Ու գրությունները մնացել են ձայն բարբառո հանապատի։*

*Կոմպլեքսային բրիգադայի բրիգադավար Բ. Աթանեսյանը իրավացիորեն զայրանում է.*

*— Ափսոս չէ՞ մարդկանց աշխատանքը, թող խողովակները տան, ես փոխեմ։*

*Կինոլեկտորիումի ու շինբանկի օբյեկտներն այցելեցի նաև դեկտեմբերի 12-ին։ Շինբանկի կառույցում եռուզեռ էր։ Մտածում եմ. «Եթե այսպես աշխատեին տարվա ընթացքում, հարկավ, պարտավորված ժամանակում շահագործման կհանձնեին շենքը»։ Աշխղեկը կինոլեկտորիումի օբյեկտում չէր, և աշխատում էր... ընդամենը հինգ մարդ։*

*— Սեպտեմբերի վերջերին,— դիմում եմ երեսպատող բանվոր Ռ. Մեսրոպյանին,— բողոքում էիք, թե շինանյութեր չկան, գործը մնում է, հիմա՞ ինչպես է վիճակը։*

*— Հիմա էլ շինանյութեր ունենք, աշխատող չունենք։ Աշխղեկին բանվորների հետ տարել են ուրիշ օբյեկտ։ 1974 թվականի մայիսին կավարտենք։*

*Ուսումնասիրում եմ շենքը։ Երկուսուկես ամիս է անցել իմ առաջին այցից, բայց վիճակը գրեթե նույնն է...*

*Ծանոթանալով շինարարության պրակտիկային, լսելով շինարարների օբյեկտիվ ու սուբյեկտիվ պատճառաբանությունները, ուզում եմ արդյունաբերական շինարարության մինիստրության և նրա երևանյան տրեստների ու շինվարչությունների ղեկավարներին հարցնել մեծագույն բանաստեղծի խոսքերով. «Ջաշխատեցիր ամառը, սա՛, ի՞նչն էր պատճառը»...*

*ՀԿԿ Կենտկոմի 1973 թ. նոյեմբերյան պլենումը հանգամանորեն քննարկեց նաև շինարարության խնդիրները։ Ըստ արժանվույն արժեքավորելով շինարարական առաջավոր կազմակերպությունների արդյունավետ գործունեությունը՝ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Քոչինյանն ասաց, որ շինարարության վիճակն ամբողջությամբ վերցրած դեռևս բավարար համարել չի կարելի և որ կառույցների կուսակցական կազմակերպությունները պարտավոր են մոտիկից խորամուխ լինել յուրաքանչյուր օբյեկտի ետ մնալու պատճառների մեջ, «Գործը կազմակերպելիս պետք է մշտապես նկատի ունենալ, որ արդյունաբերության մեջ հնգամյակի առաջադրանքների կատարման կարևորագույն պայմաններից մեկը նոր արտադրական կարողությունների գործարկումն է»։ Շինարարական ձեռնարկությունների ղեկավարների ու կուսկազմակերպությունների պարտքն է լուրջ հետևություն անել այս պահանջներից։*

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿԻՐԱՌՈՂՆԵՐԸ

**Ա. Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Եղեգնաձորի շրջկոմի առաջին քարտուղար

*Աղավնաձորի սովխոզը Եղեգնաձորի շրջանի խոշոր տնտեսություններից է։ Այստեղ վերջին տասնամյակում ջրաշինարարական և մելիորացիոն լայն աշխատանքներ են ծավալվել՝ տնտեսության բազմակողմանի զարգացման լավ հնարավորություններ ստեղծելով։ Սակայն դրանք բավական չէին տնտեսության վերելքն ապահովելու համար։ Հողերի իրացումը ձգձգվում էր, ջուրն օգտագործվում էր անարդյունավետ, իսկ տնտեսությունը չէր առաջադիմում։*

*Այսպիսի վիճակը, իհարկե, չէր կարող չանհանգստացնել կուսշրջկոմին և նրա բյուրոյին։ Մենք գտանք, որ սովխոզին, առաջին հերթին, լավ կազմակերպիչ է հարկավոր։ Եվ ահա 1969 թ. տնտեսության ղեկավար առաջադրեցինք մասնագիտությամբ գյուղատնտես, կուսշրջկոմի կուսակցական-կազմակերպական աշխատանքի բաժնի վարիչ Ռ. Ասատրյանին, որն ուներ կուսակցական ու տնտեսական գործունեության լավ փորձ, օժտված էր կազմակերպչական ունակություններով։ Ինչ խոսք, նրա համար հեշտ չէր այդ պաշտոնն ստանձնելը, որովհետև տեսնում էր տնտեսության զարգացման ճանապարհին եղած դժվարությունները։ Սակայն, ինչպես ինքն է խոստովանում, այդ դժվարություններն աստիճանաբար հաղթահարվեցին, արդեն երկրորդ տարվանից տնտեսությունն սկսեց հունի մեջ ընկնել։ Որպեսզի հնարավոր լինի ցույց տալ այսօրվա Աղավնաձորի աննախադեպ առաջընթացը, համեմատենք արտադրական հիմնական ճյուղերին բնորոշ թեկուզ և մի քանի տվյալներ։ Չորս տարի առաջ տնտեսությունում հացահատիկի միջին բերքատվությունը 3,4, խաղողինը՝ 16,7 ցենտներ էր, ամեն մի կովից ստացվել էր 1.004 կգ կաթ, մեկ ոչխարից՝ 1,94 կգ բուրդ և այլն։ 1972 թ. հացահատիկային կուլտուրաների միջին բերքը հասավ 13, խաղողինը (1971 թ.)՝ 50 ցենտների, կովերի միջին կաթնատվությունը՝ 1.947, մեկ ոչխարի բրդատվությունը՝ 2,78 կգ (ֆիզիկական քաշով)։ Միս արտադրությունն ավելացավ 25 տոկոսով։ Մեծ չափով ավելացավ նաև պետությանը միս հանձնումը։ Իրացված և բարելավված հողամասերում հիմնվեցին մոտ 200 հեկտար խաղողի և 100 հեկտար պտղատու նոր այգիներ, որոնք խնամքով մշակվում են և արդեն բերքի առաջին պտուղներն են տալիս։*

*Ջնյած երաշտը մեծ վնաս պատճառեց հատկապես դաշտավարությանը,*

բայց սովխոզն այս տարին էլ լավ ցուցանիշներով կփակի: Հայտնի է, որ յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը ֆիզիկական քաշով կազմելու է 3, հաշվարկայինով՝ 3,6 կգ: Այստեղ բուծվող «Բալբաս» ցեղի համար այսպիսի ցուցանիշը ռեկորդային է: Տնտեսությունը հաջողությամբ լուծել է կերի կուտակման խնդիրը:

Հաջողությունների գաղտնիքը պետք է որոնել, առաջին հերթին, պետական տնտեսության կադրերի արդյունավետ գործունեության մեջ: Ուրախալի է, որ դիրեկտորը, անասնապահական տեղամասի ղեկավարներն ու մասնագետները՝ գլխավոր անասնաբույժ Ս. Սուրմալյանը, կաթնապրանքային բրիգադայի բրիգադավար Ս. Ավագյանը, ոչխարաբուծական բրիգադայի բրիգադավար Ս. Ալավերդյանը քաջատեղյակ են գիտության նվաճումներին ու առաջավոր փորձին, անմիջապես ընկալում են նորն ու առաջավորը, դրանք ներդնում ու արմատավորում արտադրության մեջ: Նրանք երեք տարվա ընթացքում շատ բան են արել հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար:

Սկզբնական կուսկազմակերպությունը, նրա բյուրոն (քարտուղար՝ սովխոզի գլխավոր ինժեներ-մեխանիկ Վ. Մաթևոսյան) համախմբում է կադրերին, նրանց ջանքերն ուղղում արտադրության զարգացմանը:

Կուսկազմակերպության բյուրոն սովխոզի կազմակերպման հենց առաջին տարվանից խնդիր դրեց, որպեսզի տնտեսության արտադրական տեղամասերն ամրապնդվեն բանիմաց, մասնագիտական համապատասխան կրթություն ունեցող կադրերով: Ներկայումս սովխոզում աշխատող բոլոր ճյուղերի ղեկավարները, առանց բացառության, ունեն բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն: Կուսբյուրոն պարբերաբար լսում է կոմունիստների, մասնավորապես ճյուղերի ղեկավարների հաշվետվությունը, պարզում, թե նրանք որքանով են ունակ խելամտորեն զուգակցելու տնտեսական ու քաղաքական գործունեությունը, մասսաների հետ աշխատելու ինչպիսի հմտություն ունեն:

Հանրահայտ ճշմարտություն է, որ ամեն մի գործի հաջողություն պայմանավորված է նրանով, թե ում է հանձնարարված դրա կատարումը: Կուսակցությունը միշտ էլ շեշտել է կադրերի կարևոր դերը մեր առաջընթացի ապահովման գործում: Եվ միանգամայն բնականոն է, որ մեր կադրերի շահագրգռվածությունը բխում է կուսակցության գործին նվիրվածության սկզբունքից, այն բանից, թե աշխատանքային տեղամասի համար պատասխանատու անձնավորությունն ինչպիսի խորությամբ է ըմբռնում դրա կարևորությունը ժողովրդական տնտեսության ընդհանուր վերելքի համար, թե ո՛րչափով է նրա ինքնապատասխանատվությունը դրսևորվում իր պարտականությունների կատարման ընթացքում: Աղավնաձորի սովխոզի կադրերի արգասավոր գործունեությունը ճիշտ պատասխան է տալիս այս հարցերին:

Լավն այն է, որ Աղավնաձորն այժմ արդեն եզակի չէ մեզ մոտ: Նրա օրինակով է աշխատում շրջանի տնտեսությունների մեծ մասը: Մենք հույս ունենք, որ առաջիկայում առաջավոր, վերելքի ուղին բռնած այդ սովխոզի կողքին կունենանք Եղեգնաձորինը, որը վերջին 2—3 տարում հիանալի հաջողություններ է ձեռք բերել անասնապահության ու թռչնաբուծության զարգացման և մսի արտադրության ավելացման ասպարեզում: Սովխոզի դիրեկտոր, տնտեսագետ Հ. Բաղդասարյանը, գլխավոր գյուղատնտես, գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Զ. Զաքարյանը, կուսկազմակերպության քարտուղար, սովխոզի գլխավոր անասնաբույժ Ա. Դավթյանը, գլխավոր անասնաբույժ Ն. Հակոբյանը



ամեն ինչ անում են շրջկենտրոնի դժվարին պայմաններում տնտեսության առաջընթացն ապահովելու համար, և դա նրանց հաջողվում է: Սովխոզը վերջին տարիներին մի քանի անգամ արժանացել է շրջանային և հանրապետական մրցանակների, իսկ անցած մսուրային շրջանում, նախորդի համեմատությամբ անասնապահական մթերքների մեծ աճ ապահովելու համար, միութենական խրախուսանքի:

Ղալուշուղի սովխոզը կազմակերպվել է 1961 թ.՝ տնտեսապես թույլ չորս փոքր գյուղերի կոլտնտեսությունների բազայի վրա: Առաջին օրվանից դիրեկտոր է աշխատում Վ. Ջեյնալովը, որը երկար տարիներ եղել է ՀԿԿ շրջկոմի բյուրոյի անդամ: Լավ են աշխատում գլխավոր անասնաբույժ Ս. Սաֆարովն ու գլխավոր գյուղատնտես Ա. Միրզաևը, բրիգադավարներն ու մյուս մասնագետները: Տնտեսությունը ամեն տարի կատարում է արտադրական պլանները, ստանում մեծ օգուտ: Բավական է ասել, որ անասնապահական այս սովխոզն անցած 12 տարիներին ոչ մի անգամ վնաս չի կրել: Դա վկայում է, որ սովխոզի ղեկավարությունը հոգատարություն և պատասխանատվություն է դրսևորում գործի նկատմամբ:

Բազմաբնույթ միջոցառումների իրականացմամբ վերելքի ճանապարհ են բռնել նաև Խաչիկի, Ելփինի, Քարագլխի, Գյուլիդուզի անասնապահական սովխոզները, Գետափի, Արփիի այգեգործական-անասնապահական տնտեսությունները:

Մեր շրջանը թեև գյուղատնտեսական է, բայց ունենք նաև արդյունաբերական, շինարարական, տրանսպորտային, կապի ու այլ ծառայությունների բազմաթիվ կազմակերպություններ, որոնց արդյունավետ գործունեությամբ է պայմանավորված շրջանի ժողովրդական տնտեսության ընդհանուր վերելքը: Կուսշրջկոմը և նրա բյուրոն ուշադրության կենտրոնում են պահում նաև այդ բնագավառների համար հասուն կադրեր աճեցնելու գործը:

1966 թվականից ՀՍՍՀ ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստրության № 3 շինվարչությունը ղեկավարում է փորձառու մասնագետ Ա. Խալաթյանը, որը մինչ այդ ութ տարի եղել է նույն հիմնարկության գլխավոր ինժեները: Այդ տարիներին վարչությունը կատարել ու գերակատարել է իր առաջադրանքները, ստացել զգալի գերպլանային օգուտ: Կոլեկտիվը համախմբված ու միասնական է, աշխատում է մեկը՝ բոլորի, բոլորը՝ մեկի համար նշանաբանով:

Հիմնարկության հաջողությունները մասնավորապես պայմանավորված են կուսկազմակերպության, նրա բյուրոյի (քարտուղար՝ Սիրվարդ Մկրտչյան) արդյունավետ ու խելացի գործունեությամբ: Այստեղ ամուր հիմքերի վրա է մարդկանց շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը և սոցիալիստական մրցության կազմակերպման, բարոյական ու նյութական խրախուսանքի ճիշտ զուգակցման գործը:

Դրվատանքի նույնանման խոսքեր կարելի է ասել «Հայգյուղտնտեխնիկա» միավորման շրջանային բաժանմունքի կառավարիչ Ա. Հակոբյանի մասին, որը 1961 թ. անընդմեջ ղեկավարում է այս պատասխանատու կազմակերպության գործունեությունը: Բաժանմունքը բազմիցս արժանացել է հանրապետական ու միութենական խրախուսանքների: Այս կոլեկտիվը հաջողությամբ է կատարում գյուղատնտեսության վերելքին նպաստելու իր շնորհակալ պարտականությունը:

Կադրերի արդյունավետ գործունեության օրինակներ կարելի է շատ բերել:
Իրենց գործը սիրող, բարեխիղճ և գործունյա ղեկավարներ ու մասնագետներ
կան ամենուրեք: Նախընթաց տարիներին, կուսակցության հոգատարությամբ,
աճել են հարյուրավոր կադրեր, որոնք իրենց քաղաքական գիտելիքներով ու
աշխատանքային ուսանելի փորձով ունակ են կատարելու այսօրվա պահանջնե-
րը: Բավական է ասել, որ շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների միջին
օղակի 100-ից ավելի ղեկավարների մի ստվար մասն ունի բարձրագույն և միջ-
նակարգ մասնագիտական կրթություն: Նրանց 22 նախագահներից և դիրեկ-
տորներից 15-ը բարձրագույն կրթությամբ մասնագետներ են: Գյուղատնտե-
սության բնագավառում աշխատանքային բեղմնավոր գործունեություն են ծա-
վալում բարձրագույն կրթությամբ 54 գյուղատնտեսներ, անասնաբույժներ և
անասնաբուժներ, ինժեներներ և տնտեսագետներ: Կուսշրջկոմը և սկզբնական
կուսկազմակերպությունները հոգատարությամբ են շրջապատել նրանց, աշխա-
տում են հմտորեն օգտագործել նրանց ուժերը և արդյունավետ կազմակերպել
դաստիարակությունը:

Կուսակցական կադրերի դաստիարակության հիմնական օղակը քաղաքա-
կան լուսավորության ցանցն է, ուր ներգրավված են գրեթե բոլոր կոմունիստ-
ներն ու անկուսակցական ակտիվիստները: 120 քաղխմբակների պրոպագան-
դիստներ ու տեսական սեմինարների ղեկավարներ ունեն բարձրագույն կըր-
թություն, նրանցից 4-ը հանրապետության վաստակավոր մասնագետներ են,
3-ը՝ գիտությունների թեկնածու: Կադրերի դաստիարակությանը և ուսուցմանը
մեծապես նպաստում է կուսշրջկոմին կից գործող կուսակցական ակտիվի դըպ-
րոցը, որի պարապմունքների ժամանակ հանդես են գալիս նաև հիմնարկ-ձեռ-
նարկությունների ու տնտեսությունների ղեկավարներ, կուսակցական, սովե-
տական և տնտեսական պատասխանատու աշխատողներ:

Կադրերի դաստիարակության ասպարեզում ծավալած իր գործունեությամբ
կուսշրջկոմը ձգտում է բարձրացնել յուրաքանչյուր աշխատողի ինքնա-
պատասխանատվության զգացումը: Այդ գործը չափազանց բազմազան և դըժ-
վար է: Այստեղ մոտեցումը խիստ անհատական պետք է լինի, քանի որ խոսքը
վերաբերում է ոչ թե ընդհանուր պատասխանատվության, այլ ինքնապատաս-
խանատվության բարձրացմանը: Կուսկազմակերպությունների ժողովներում
հաճախակի լսում ենք կոմունիստների հաշվետվությունը, պարզում, թե նրանք
ինչպես են ապահովում իրենց ավանգարդային դերն արտադրության մեջ, ինչ-
պիսի պարտավորություններ են ստանձնել և ինչպես են կատարում դրանք:

Կադրերի դաստիարակության գործում չափազանց կարևոր է որոշումների
կատարման ստուգումը: Երբ աշխատողը համոզված է, որ իրեն տրված հանձ-
նարարության կատարումն ստուգվելու է և ինքը պատասխան է տալու կո-
լեկտիվին, ապա պատասխանատվության զգացումը ամենուր կհետևի նրան
(եթե, իհարկե, տվյալ աշխատողը ճիշտ է ընտրված), և նա անպայման կկա-
տարի հանձնարարությունը: Հանձնարարության պարտաճանաչ կատարումը
դառնում է բնավորության հատկանիշ, նպաստում ինքնապատասխանատվու-
թյան բարձրացմանը:

Կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով կուսկազ-
մակերպությունների բյուրոներն ու քարտուղարները տեղյակ են պահում կազ-
մակերպությանը, թե ինչ է արվել նախորդ նիստից կամ ժողովից հետո, ինչ-
պես է կատարվել ընդունած որոշումը, ինչպես և ինչով է զբաղվել կուսկազմա-



կերպության բյուրոն նախորդ ժողովից հետո և այլն: Այսպիսի հաշվետվու-
թյունը պրակտիկա ենք դարձնում նաև շրջկոմի բյուրոյի համար, որի առաջին
քարտուղարը պլենումին ինֆորմացիա է տալիս նախորդ նիստից հետո բյուրո-
յի ծավալած գործունեության մասին, լսում դիտողությունները, շտկում սխալ-
ները:

Կյանքը ցույց է տալիս, որ կուսակցության կադրերի հզոր բանակում եր-
կարատև ու արդյունավետ գործունեություն ծավալում են նրանք, ովքեր հաս-
կանում են ու կիրառում մեր գաղափարախոսության սկզբունքները և, կազմա-
կերպչի ու տնտեսավարի իրենց հմտությունը զուգակցում են գաղափարական
կոփվածության հետ, կարողանում են ճիշտ կողմնորոշվել աշխատանքի կազ-
մակերպման կամ հանձնարարության կատարման տարբեր իրադրություննե-
րում և հաջողությամբ պսակել սկսած գործը: Եվ, հակառակը, այն կադրե-
րը, որոնք, հույսը դնելով միայն իրենց կազմակերպչական ու վարչական ունա-
կությունների վրա, դադարում են խորացնել գիտելիքները, կարճ ժամանակից
հետո չեն կարողանում ճիշտ կողմնորոշվել, հաճախակի սայթաքում են կազ-
մակերպչի իրենց պարտականությունների կատարման ընթացքում և, ի վեր-
ջո, թեև տհաճությամբ, բայց ստիպված են լինում իրենց տեղը զիջել ուրիշ-
ներին:

Պատահում են նաև այնպիսիները, որոնք, գերագնահատելով իրենց տեսա-
կան գիտելիքները, կարծում են, թե միայն դա բավական է կոլեկտիվ ղեկա-
վարելու և անհրաժեշտ արդյունքի հասնելու համար: Փորձը ցույց է տալիս, որ
այդպիսիներն ավելի շուտ են ձախողվում՝ չկարողանալով իրենց տեսական
գիտելիքները պետքական դարձնել հասարակությանը: Այլ է՝ սերտել կյանքի
այս կամ այն բնագավառին վերաբերող գիտական մշակումները, գիտատեխ-
նիկական առաջընթացի տեսական կողմերը և այդ մասին զեկուցումներ կար-
դալ ու ճառեր արտասանել: Սա դեռևս հարցի մի կողմն է, մեր ժամանակի
համար թերևս հեշտ կողմը: Խնդիրը գիտական այդ մշակումները և գիտա-
տեխնիկական նվաճումները պրակտիկայում կիրառելն է, այնպիսի միջավայր
ստեղծելը, որ տեսական ըմբռնումները հեշտությամբ ներդրվեն ու գործնակա-
նորեն արմատավորվեն: Հենց դա էլ տեսության ու պրակտիկայի ճիշտ զուգա-
կցումն է: Մենք ձգտում ենք դաստիարակել այնպիսի կադրեր, որոնք առավե-
լագույն չափով կարողանան նպաստել կյանքի առաջընթացին:

Կադրերի դաստիարակության հաջող կազմակերպման և հնգամյակի խըն-
դիրների լուծման գործում նրանց պատասխանատվությունը բարձրացնելու հա-
մար կարևոր նշանակություն ունեցավ մեր շրջանի կոմունիստների ավանգար-
դային դերի բարձրացման ասպարեզում տարվող աշխատանքի վիճակի քըն-
նարկումը ՀԿԿ Կենտկոմի բյուրոյում: Ձեռք բերած լավի հետ նշվեցին նաև այն
բոլոր բացերն ու թերությունները, որոնք տեղ էին գտել մեր գործունեության
մեջ: Կենտկոմի բյուրոյի որոշման հիման վրա շրջկոմի պլենումը գործնական
միջոցառումներ մշակեց շրջանում արտադրության մեջ կոմունիստների ավան-
գարդային դերն է՛լ ավելի բարձրացնելու համար:

Հնգամյակի առաջին տարում շրջկոմի բաժինների միջոցով հանգամանո-
րեն մշակվեց ու շրջկոմի բյուրոյում հաստատվեց ՍՄԿԿ XXIV համագումարի
որոշումների կենսագործումն ապահովող միջոցառումների պլան, որտեղ հա-
տուկ ուշադրություն է նվիրված նաև կադրերի քաղաքական-գաղափարական
կոփվածության, նրանց տնտեսական գիտելիքներով զինելու և կազմակերպ-

չական ունակություններով օժտելու խնդիրներին։ Ինչ խոսք, շրջանային կոմիտեն չի բավարարվել կադրերի պատասխանատվության ու նրանց ավանգարդային դերի բարձրացման մասին հարցեր քննարկելով և միջոցառումների պլան մշակելով։ Շրջկոմի բյուրոն պարբերաբար քննարկում է նաև այն տնտեսությունների ու կազմակերպությունների գործունեության վիճակը, որտեղ թուլացել է կազմակերպչական աշխատանքը, և արտադրության ղեկավարը չի կատարում կուսակցության առաջադրած նոր պահանջները։ Ընդ որում, բոլոր դեպքերում մեր ուշադրության կենտրոնում մարդն է, կոմունիստը և հոգատարությունը նրա նկատմամբ։

Սակայն չենք կարող ասել, թե կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն ամեն ինչ արել են կադրերի հետ տարվող աշխատանքը անհրաժեշտ հունի մեջ դնելու և նրանց դաստիարակության հարցերը լիովին լուծելու համար։ Այս ասպարեզում դեռևս կան լուրջ թերություններ։ Մեր միջին և բարձր օղակի ղեկավարների ու մասնագետների շարքերում կան մարդիկ, որոնք իրենց կոչման բարձրության վրա չեն, թերանում են կատարել պարտականությունները։

Կյանքի բոլոր բնագավառներում ամենամեծ չարիքը անտարբերությունն է՝ իր ծնած բազմաթիվ բացասական երևույթներով։ Մեր գործունեության ընթացքում աշխատում ենք հաղթահարել դրանք, հատկապես ղեկավար աշխատանքի վստահված մարդու մոտ։ Անտարբերությունից մինչև հանցագործություն մի քայլ է միայն, թեև ինքն անտարբերությունը հենց հանցագործություն է։ Ավելի հեշտ է պայքարել ուղղակի վնասարարի դեմ, սաստել հանձնարարված գործը չկատարողին, քան գործ ունենալ անտարբերի հետ։

Բնակչության սպասարկումը գործունեության կարևոր բնագավառ է, կուսակցությունը որոշակի պահանջներ է առաջադրում սպասարկման կազմակերպություններին ու դրանց ղեկավար կադրերին։ Անժխտելի է, որ սպասարկման ոլորտում կան բազում դժվարություններ, դրանք հաղթահարելու համար շատ ջանքեր են հարկավոր։ Սակայն, եթե այդ դժվարություններին գումարվի այդ ոլորտի կադրերի անհոգությունը, որը երբեմն հասնում է խիստ վնասակար անտարբերության, ապա ոչ մի խնդիր հնարավոր չի լինի լուծել։ Արդեն մի քանի տարի շրջանային կոմունալ սպասարկման գրասենյակի պետ է աշխատում ՍՄԿԿ անդամ Դ. Համբարձումյանը։ Գործին ծանոթ է, առանձին դժվարություններ չկան Եղեգնաձորի նման փոքր շրջկենտրոնում կոմունալ սպասարկումը պատշաճ կերպով կազմակերպելու համար։ Սակայն նորմայից տասնապատիկ անգամ ավելի խմելու ջրի առկայությամբ էլ բնակչությունը դժգոհում է ջրամատակարարման վիճակից։ Բոլոր պայմանները կան փոքրաթիվ ասֆալտապատ փողոցներում պատշաճ մաքրություն պահպանելու, ջրային մակերեսները նպատակին ծառայեցնելու համար։ Մինչդեռ այս բնագավառում ևս թերությունները և, հետևաբար, բողոքները շատ են։ Ցավոք, կուսշրջկոմի բազմաթիվ միջամտություններից հետո էլ Համբարձումյանը չի վերակառուցել գրասենյակի գործունեությունը։ Չգիտեմ պատճառը անհոգությո՞ւնն է, անտարբերությո՞ւնը աշխատավորների սպասարկման հույժ կարևոր գործի նկատմամբ, թե՞ գործը ղեկավարելու անկարողությունը։ Որն էլ լինի, վտանգավոր է։ Դրա համար էլ ստիպված ենք այսպիսի կադրերի դաստիարակությամբ զբաղվել գերհամբերատարությամբ։



Ի հակադրություն սրան, նկատվում է մի այլ դրսևորում, որը ևս հասցնում է հանցագործության։ Կան աշխատողներ, որոնք ձևանում են, թե գործին անսահման նվիրված են, մեծ ձգտում ունեցող ու ընդունակ մարդիկ են, և, ինչպես ասում են, կարող են սարեր շուռ տալ։ Այսպիսիները սովորաբար ուրիշներին չեն վստահում և փորձում են ամեն ինչ անել իրենց ձեռքով։ Նրանց համար սովորական երևույթ են պաշտոնի չարաշահումը, ֆինանսական կարգապահության խախտումը (իբրև գործի շահերի համար), ուրիշներին արհամարհելը և այլն։ Շրջանի գործարաններից մեկում դիրեկտոր էր Բ. Գլոյանը, որն իրեն դրսևորում էր որպես գործարար ու ձեռներեց անձնավորություն։ Սակայն ընդամենը երկուսուկես տարվա ընթացքում երևան եկան նրա բացասական հատկությունները. արհամարհում էր բոլորին, հաշվի չէր առնում մասնագետների կարծիքը. այն տպավորությունն էր ստեղծում, թե առանց Գլոյանի գործարանի կյանքը կարող է կանգ առնել։ Այսպիսի «ձեռներեցությունը» ոչ մի դրական արդյունք չտվեց գործարանին ու բանվորական կոլեկտիվին։ Չնայած արտադրական կարողության առկայությանը՝ ձեռնարկությունը գործում էր առանց որոշակի ռիթմի, թույլ էր աշխատանքային կարգապահությունը, ցածրորակ էր արտադրանքը։ Վերջերս կատարված ստուգումները ցույց տվեցին, որ Գլոյանը չարաշահել է իր պաշտոնական դիրքը ո՛չ միայն ուրիշների նկատմամբ ավելորդ իշխանություն սահմանելով, այլև գործարանի միջոցներն իրենն է համարել։ Իր անձի նկատմամբ ստեղծած պաշտամունքի (ավելի ճիշտ վախի) զգացումը ստիպել է մարդկանց հոժարությամբ կատարել նրա կամքը։

Շրջկոմի բյուրոն Բ. Գլոյանին հանեց աշխատանքից, կլուծի նաև կուսակցության մեջ մնալու կամ չմնալու հարցը, դատական օրգանները կասեն իրենց խոսքը։ Սա մեր կուսակցական աշխատանքի բացն է, քանի որ Գլոյանը գործում էր մեր աչքի առաջ։ Սակայն եղած կասկածները ժամանակին չբացահայտելու և անվճռականության պատճառով գործը հասավ հանցագործության։

Կուսակցության շահերը պահանջում են ամենուրեք հսկողություն սահմանել կադրերի գործունեության նկատմամբ, որովհետև հիմնականում սխալներ կատարում են ու սայթաքում այն ղեկավարները, որոնք հսկողությունից դուրս են, իրենց ազատ են զգում։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ջանում են հետևողականորեն իրականացնել վերահսկողության իրենց ֆունկցիան։ Մեր պարտքն է ընդմիշտ հիշել Վ. Ի. Լենինի իմաստուն խոսքերը. «քաղաքական ղեկավարը պատասխանատու է ո՛չ միայն այն բանի համար, թե ինչպե՛ս է ղեկավարում, այլև այն բանի համար, թե ի՛նչ են անում նրանք, որոնց ղեկավարում է նա» (Երկեր, հ. 32, էջ 21—22)։ Եթե այս պահանջները ճիշտ հասկանային Քարագլխի սովխոզի դիրեկտոր Հ. Հարությունյանը, սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Հ. Խուդոյանը, գյուղսովետի գործկոմի նախագահ Ռ. Հովհաննիսյանը, ապա, անկասկած, գլխավոր հաշվապահ, ՍՄԿԿ անդամ Պ. Սաֆարյանը և գանձապահ Յու. Մարգարյանը կեղծիքի միջոցով չէին յուրացնի դրամական միջոցները։

Ամեն ինչ որոշում են կադրերը, որոնք, աճելով ու դաստիարակվելով կուսակցության շարքերում, նրա գաղափարներով, իրենց հետ կոփում են շատերին, դառնում իրենց գործի էնտուզիաստներ։ Համոզելու համար հարկավոր է համոզված լինել։ Այս ճշմարտությունը պետք է ուղենիշ լինի բոլոր այն կադրերի համար, որոնք նպատակադրվել են համոզել։

# ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

## ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՀԱՄԱՐ

Թ. Ն. ԹՈՒՄԱՆՅԱՆ

ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչության պետ

Եզրափակվեց ընթացիկ հնգամյակի երրորդ, վճռական տարին: Սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, կատարելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, մի նոր քայլ կատարեց կոմունիզմի կառուցման ճանապարհին: Մեր հանրապետությունում անցած տարվա առաջին տասն ամսվա արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը կատարվել է 102 տոկոսով, աճի տեմպերը կազմել են 105,2 տոկոս:

Կոմունիստական կուսակցությունը, որպես առավել հրատապ խնդիրներից մեկը, միշտ էլ դրել է թողարկվող արտադրանքի արմատական բարելավման հարցը: Չէ՞ որ, որքան բարձր լինի արտադրանքի որակը, այնքան արդյունավետ և արտադրողական կլինի հանրային ողջ արտադրանքը, որքան բարձր է թողարկվող մեքենաների, սարքավորումների, լայն սպառման ապրանքների որակը, այնքան մեծ է նրա պահանջը շուկայում: Ահա թե ինչու այժմ հարց է դրված հասնել համաշխարհային ստանդարտի լավագույն նմուշների մակարդակին, բարձրացնել մեքենաների ծառայությունների ժամկետը, ապահովել դրանց հուսալի աշխատանքը:

ՍՄԿԿ XXIV համագումարին տված կուսակցության Կենտկոմի հաշվետվությունում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, անդրադառնալով արտադրության որակին, նշեց. «Այն պայմանների բերումով, որոնցում մենք գտնվում էինք, գործը պատմականորեն այնպես է դասավորվել, որ առաջին տեղում միշտ դրվել են քանակական գնահատականները՝ տալ այնքան տոննա պողպատ, այսքան նավթ, այսքան հաց, այսքան տրակտոր: Իհարկե, քանակական կողմը մեզ համար հիմա էլ կարևոր է: Բայց այն պետք է ավելի լրիվ և ավելի հետևողականորեն լրացվի այնպիսի ցուցանիշներով, որոնք վերաբերում են արտադրանքի որակին և ձեռնարկությունների գործունեության տնտեսական կողմին» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 85):

Այդ տնտեսական խնդիրների լուծման մեջ կարևոր նշանակություն ունի ստանդարտիզացիան: ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է,



որ մեծ է ստանդարտների դերը գիտատեխնիկական մակարդակի բարձրացման և արտադրանքի որակի բարելավման գործում: Ստանդարտիզացիայի հիման վրա արտադրանքի որակի բարձրացման հարցերը իրենց արտացոլումն են գտել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1970 թ. նոյեմբերի 10-ի՝ «Թողարկվող արտադրանքի որակի բարելավման հարցում ստանդարտների դերի բարձրացման մասին» որոշման մեջ:

Պետք է ասել, որ բոլոր երկրներում ստանդարտիզացիայի լայն կիրառման հետ են կապված տնտեսության զարգացումը, արտադրության մակարդակի բարձրացումը, արտադրանքի որակի բարելավումը, բնակչության կենսամակարդակի աճը: Սակայն ստանդարտիզացիայի հնարավորությունների լիակատար օգտագործման համար բացարձակ բարենպաստ պայմաններ ապահովում է միայն տնտեսության սոցիալիստական համակարգը: Պետական ստանդարտիզացիայի զարգացումը, մեր երկրում մշակված ստանդարտիզացիայի սկզբունքորեն նոր ուղիները, ստանդարտների ներդրումից ստացված բարձր տնտեսական արդյունքը համապատասխանում են տեխնիկական առաջընթացի նվաճումներին և սոցիալիստական հասարակարգի առավելություններին:

Գիտատեխնիկական առաջընթացին զուգընթաց մեծանում է ստանդարտիզացիայի դերը: ՍՍՀՄ-ում ստանդարտիզացիայի աշխատանքների կարևորագույն ուղղություններից մեկն է առաջագնաց (опережающий) ստանդարտների մշակումը: Դրանց ներդրման արդյունքն է պետական որակի նշանի արժանացած արտադրանքը: Այսպիսով, արտադրանքի պետական ատեստացիան և լավագույն արտադրանքին պետական որակի նշանի արժանացնելը կարևորագույն փուլ են արտադրանքի որակի համար մղվող պայքարում:

Ինչպես ցույց է տալիս տնտեսական վերլուծությունը, ստանդարտիզացիան արդյունաբերական արտադրանքի վերելքի արդյունավետ միջոցներից մեկն է: Համաձայն սովետական տնտեսագետների տվյալների, այդ նպատակով ներդրված յուրաքանչյուր 1 ռուբլու արդյունավետությունը կազմում է 10 ռ., արտադրության առանձին ճյուղերում այդ ցուցանիշն ավելի բարձր է:

Սովետական Հայաստանի աշխատավորները, խորապես հասկացել ու իրենց սրտին մոտ են ընդունել կուսակցության XXIV համագումարի պահանջը՝ աշխատել բարեխղճորեն, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը: Յուրաքանչյուր սրտացավ աշխատող ամենուրեք ձգտում է բարձր պահել իր ձեռնարկության մակնիշի պատիվը: Վերջին տարիներին Հայաստանի արդյունաբերությունը յուրացրել և հաջողությամբ արտադրում է հարյուրավոր նոր տիպի ժողովրդական սպառման ապրանքներ: Լավագույն արտադրանքներն արժանացել են պետական որակի նշանի— որակի բարձրագույն չափանիշի: 1973 թ. նոյեմբերի 1-ի դրությամբ, «Ա» խմբի 13 ձեռնարկություններում թողարկած արտադրանքի 33 տեսակ արժանացել են պետական որակի նշանի: Դրանք են՝ էլեկտրական ագրեգատներ, սինխրոն գեներատորներ (Հայէլեկտրագործարան), ընդհանուր օգտագործման էլեկտրական լամպեր (Երևանի էլեկտրալամպերի գործարան), առաստաղային օդափոխիչներ (Երևանի «էլեկտրաշարժիչ» գործարան), գոդող այրիչներ (Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարան), քացախաթթվային նատրիում (Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարան). Ժողովրդական սպառման 63 տեսակի ապրանք-

ներ արտադրող 16 ձեռնարկություններում՝ մետաքսյա գործվածքներ (Երևանի Լենինի անվան մետաքսի կոմբինատ), տղամարդու և կանացի ջեմպերներ (տրիկոտաժի միավորման «Անուշ» գլխավոր ձեռնարկություն և Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկա), տեսակավոր կոնյակներ (Երևանի կոնյակի գործարան), կոշտ և փափուկ՝ «Ախթամար», «Արին-Բերդ» և այլ փաթեթավորումով սիգարետներ (Երևանի փորձնական ծխախոտի ֆաբրիկա), «Մայրաքաղաքային» և «Մոսկովյան» հում ծխեցրած երշիկեղեն (Լենինականի և Երևանի մսի կոմբինատներ), շվեյցարական պանիրներ (Կալինինոյի և Բաղարշայի պանրագործարաններ և այլն)։

Թողարկվող արտադրանքի որակի բարձրացման գործում մեծ դեր են խաղում ստանդարտիզացիայի և մետրոլոգիայի սկզբունքով կատարվող ծառայությունները, որոնց թիվն այժմ մեր հանրապետությունում անցնում է 300-ից։

35 ձեռնարկություններից ավելին ապահովված են օրինակելի չափիչ և չափող սարքերի լաբորատորիաներով։ ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչությունը շարունակում է մեթոդիկ ու պրակտիկ օգնություն ցույց տալ ձեռնարկություններին՝ ստանդարտիզացիայի և որակի վերահսկողության ծառայությունների կազմակերպման գործում։

Մշակված միջոցառումների շնորհիվ վերջին տարիներում տասնյակ ձեռնարկություններ բարելավել են իրենց արտադրանքի որակը (Ջրվեժի «Պրոմովյազ», Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական, Սպիտակի վերելակաշինական, Կիրովականի ճշգրիտ հաստոցների, Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների, Չարենցավանի հաստոցաշինական գործարանները, Երևանի Լենինի անվան մետաքսի կոմբինատը, Երևանի թռչնաբուծական ֆաբրիկան և այլն)։

Սակայն, ցավով պետք է նշել, որ հանրապետությունում դեռևս կան ձեռնարկություններ, որոնք սիստեմատիկաբար ցածրորակ արտադրանք են թողարկում, խախտելով ստանդարտների և տեխնիկական պայմանների պահանջները ու դանդաղ են բարձրացնում արտադրանքի առանձին տեսակների որակը։ Օրինակ, «Արագած» սառնարաններ թողարկող «Հայէլեկտրամաշ» արտադրական միավորումը։ Սառնարանները ցածրորակության պատճառով չեն սպառվում ինչպես հանրապետությունում, այնպես էլ նրա սահմաններից դուրս։ Վաճառող կազմակերպությունների և սպառողների կողմից կան շատ բողոքներ։ 1972 թ. թողարկած 142.403 սառնարանների համար գործարանն ստացել է 12.601 բողոք։ 1973 թ. բողոքողների թիվը խիստ աճել է։ Միայն առաջին կիսամյակում գործարանը ստացել է 9047 բողոքագիր՝ թողարկած 89.000 սառնարանների դիմաց։ Սառնարանների որակի ստուգման ժամանակ այս տարի, տարբեր թերությունների պատճառով, խոտանվել է ողջ արտադրանքը։

Երևանի «Էլեկտրաշարժիչ» գործարանի թողարկած շարժիչները պատրաստվում են՝ խախտելով ստանդարտների և տեխնիկական պայմանների պահանջները— ինչպես էլեկտրական պարամետրերը, տեխնիկական պահանջները, այնպես էլ փաթեթավորումը և պիտակավորումը։ Գործարանի համար սովորական երևույթ է դարձել սպառող ձեռնարկություններից բողոքներ և բողոքագրեր ստանալը (Տամբովի մեխանիկական, Օրշայի «Լեգմաշ» գոր-



ծարանները և այլն)։ Սպառողների բողոքների հիմնական պատճառներն են՝ աղմուկի նորմայից գերազանցումը, ընդհատումները փաթույթներում, առանցքակալների թխկթխկոցը, միջպարույրային միացումները և այլն։ Ուստի, բազմիցս արգելվել է անորակ արտադրանքի բեռնաթափումը։ Նույն վիճակում են նաև Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի թողարկած էլեկտրաշարժիչները, որտեղ չեն պահպանվում էլեկտրական և երկրաչափական պարամետրերը։

Լենինականի սառնարանային կոմպրեսորների գործարանն արտադրում է ցածրորակ կոմպրեսորներ։ Այդ հետևանք է այն բանի, որ թողարկման և արտադրողականության ոլորտում կոպիտ կերպով խախտվում են ստանդարտների և տեխնիկական պայմանների պահանջները։ Գործարանին արգելվել է ամբողջ արտադրանքի իրացումը, իսկ սպառված ապրանքների վերաբերյալ կիրառված է տնտեսական սանկցիա, հանելով պլանային ցուցանիշներից 287 հազար ռուբլի։ Վատորակ կոմպրեսորները բացասաբար են անդրադառնում նաև «Արագած» սառնարանի որակի վրա։

Երևանի կաբելի գործարանի թողարկած պլաստմասսային մեկուսիչներով ալյումինե տեղակայման լարերը ճկունությամբ, փաթեթավորմամբ և պիտակավորմամբ չեն համապատասխանում ստանդարտներին, ինչպես նաև տարբեր գույներով չեն ներկվում լարերը։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության ստուգված ձեռնարկություններում անցյալ տարի 10 ամսվա ընթացքում կիրառվել է երեք տնտեսական սանկցիա և 7 դեպքում արգելված է ոչ ստանդարտ արտադրանքի սպառումը։

Ստանդարտների պահանջները խախտում են նաև հանրապետության հաստոցաշինական ձեռնարկություններից շատերը։ Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանում խախտվում է ստանդարտների պահանջը թողարկվող լայնունիվերսալ ֆրեզերային հաստոցների տեխնիկական պահանջների և արտաքին տեսքի նկատմամբ։ Գործարանում չի պահպանվում կարևոր թափքերի չուգունե մասերի հնացման տեխնոլոգիան, որի պատճառով չեն ապահովվում հաստոցների հուսալիությունն ու երկարակեցությունը։

Սարքաշինական արդյունաբերության ձեռնարկությունների նկատմամբ կիրառվել է երեք տնտեսական սանկցիա և երեք դեպքում արգելվել է արտադրանքի սպառումը։ Ստանդարտները սիստեմատիկաբար խախտում են միութենական պատկանելության մի շարք ձեռնարկություններ՝ Երևանի ավտոդողերի և ավտոպահեստամասերի գործարանները և այլն։

Ցածրորակ արտադրանք են թողարկում Հոկտեմբերյանի հաստոցաշինական և Երևանի «Հաստոցանորմալ» գործարանները։

Արտադրանքի որակի հարցերը բարվոք չեն նաև «Բ» խմբի մի շարք և միութենահանրապետական ենթակայության ձեռնարկություններում, որոնք մեծ մասամբ թողարկում են լայն սպառման ապրանքներ։ «Ըստ երևույթին,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— դրա հետևանքով պահեստներում պառկած մնում են մասսայական պահանջարկ վայելող ոչ քիչ ապրանքներ՝ կոշկեղեն, կարվածքեղեն և տրիկոտաժեղեն» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 642—643)։

Ընդունված նորմաների և պահանջների կոպիտ խախտումներ են կատարվում ՀՍՍՀ անտառային և փայտամշակման արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում։ Ստուգված ձեռնարկություններում խոտանվել է

արտադրանքի 30—100 տոկոսը. Լենինականի կահույքի ֆաբրիկայում՝ կենցաղային կահույքի 100, Կամո քաղաքի կահույքի ֆաբրիկայում կահույքի՝ 36, Արաբկիրի կահույքի ֆաբրիկայում՝ տրյումոների, ննջարանի կոմպլեկտների, մահճակալների 59, Կիրովի անվան փայտամշակման կոմբինատի արտադրած լաբորատոր կահույքի, ուսանողական նստարանների, մանկական սեղանների 100 տոկոսը։ Խոտանված արտադրանքները վերադարձվել են ձեռնարկություններին՝ թերությունները շտկելու համար։

Ստանդարտների խախտման պատճառով ցածրորակ արտադրանք է ստացվել նաև ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում։ Ստուգված համարյա բոլոր ձեռնարկություններում հայտնաբերվել են ստանդարտների պահանջների տարբեր խախտումներ։ «Անուշ» տրիկոտաժային միավորման գլխավոր ֆաբրիկայում (Երևան) 5.860 տրիկոտաժային ապրանքներից 509-ը վերադարձվել է, տարբեր արտադրական թերությունների համար 452-ի տեսակը իջեցված է։ Լենինականի տրիկոտաժի ֆաբրիկայում 660 առաջին տեսակի ապրանքներից 66-ի տեսակը իջեցվել է, իսկ 57-ը վերադարձվել է թերությունները շտկելու համար։

Ցածրորակ արտադրանք են թողարկում Երևանի մահուդի ֆաբրիկան, Երևանի բրդեղենի կոմբինատը, «Արագած» մանվածքային ֆաբրիկան, «Գարուն» կարի և «Մասիս» արտադրական միավորումները։

Բարվոք վիճակում չէ արտադրանքի որակի հարցը նաև ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրության մի շարք ձեռնարկություններում։ Հանրապետության պահածոների գործարանների մեծ մասը սիստեմատիկաբար արտադրում և իրացնում են ցածրորակ ապրանքներ։ Դրանք օրգանոլեպտիկ ցուցանիշներով, ֆիզիկո-քիմիական բաղադրությամբ, պիտակավորմամբ, փաթեթավորմամբ, արտաքին տեսքով, պահպանման և փոխադրման պայմաններով չեն համապատասխանում ստանդարտին։ Այդ խախտումները եղել են Մասիսի պահածոների գործարանում. այնտեղ արգելվել է պատրաստի պահածոների իրացումը, իսկ սպառված ոչ ստանդարտ արտադրանքի նկատմամբ կիրառվել է տնտեսական սանկցիա, հանելով պլանային ցուցանիշներից 12 հազար ռուբլի։ Արտաշատի պահածոների գործարանում հայտնաբերված է, որ տոմատի մածուկը պարունակում է միայն 24,6 տոկոս չոր նյութեր (30 տոկոսից ոչ պակասի փոխարեն) և իր մեջ ունի օտար նյութեր։ Պովիդլոն ունի պակաս կշիռ, այրուք և այլն։ Այրումի պահածոների գործարանը շարունակում է թողարկել թերակշռված և ցածր թթվայնությամբ պահածոներ։ Արտաշատի գինու գործարանում պղտոր նստվածքի պատճառով խոտանվել են 562 դկլ «Հրազդան», 2.800 դկլ «Կագոր» գինի՝ ոչ կայուն տարալցման պատճառով։ Եղվարդի գինու գործարանում արգելվել է 7.820 դկլ «Սպիտակ պորտվեյն» գինու իրացումը, քանի որ այն պատրաստված էր առանց 35 տոկոսանոց թրմօղային նյութի։

Ստանդարտների պահանջները խախտվում են ՀՍՍՀ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության, տեղական արդյունաբերության, արդյունաբերական շինարարության, գյուղատնտեսության մինիստրությունների և Հայկոոպի ձեռնարկություններում։ Անցած 10 ամիսների ընթացքում տնտեսական սանկցիաներ են կիրառվել մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության 7 ձեռնարկությունների նկատմամբ և արգելվել է ցածրորակ արտադրանքի թողարկումը։



Հիմնականում ստանդարտների պահանջների խախտումների և ցածրորակ արտադրանքի թողարկման պատճառներն են— տեխնոլոգիական պրոցեսների խախտումը, տեխնիկական վերահսկողության բաժինների թույլ հսկողությունը, չափիչ ու փորձարկիչ տեխնիկայի անբավարար վիճակը, բարձրորակ մասնագետների բացակայությունը, նյութերի, հումքի, կիսաֆաբրիկատի վատ որակը, տեխնոլոգիական և արտադրական կուլտուրայի ցածր մակարդակը, համապատասխան սարքավորումներ և տեխնոլոգիական հարմարանքներ չունենալը։

Այս կարևորագույն պրոբլեմներից մեկի՝ արտադրանքի որակի բարձրացման համար պետք է աշխատեն բոլորը, ում համար թանկ է իր գործարանի, արտադրամասի մակնիշի պատիվը։ Որակի պրոբլեմը չի կարելի լուծել միայն հաստատելով «ռացիոնալ միօրինակություն» կամ վերացնելով իրեն «չարդարացնող բազմօրինակությունը»։ Չպետք է մոռանալ, որ պետական ստանդարտի խախտումը, ցածրորակ արտադրանք թողարկելը նաև պետական և աշխատանքային կարգապահության խախտման հետևանք են։ Ահա թե ինչու այժմ կուսակցական կազմակերպությունների, արհեստակցական միությունների և տնտեսական ղեկավարների առաջնահերթ խնդիրներից մեկն է՝ ամեն կերպ ամրապնդել պետական և աշխատանքային կարգապահությունը, որովհետև առանց դրա չի կարելի պատկերացնել բարձրորակ արտադրանքը։ Չի կարելի հանդուրժողական վերաբերմունք ցուցաբերել նաև խոտանարարների նկատմամբ։ Պետք է նկատի ունենալ, որ ցածրորակ արտադրանքը զգալի վնաս է պատճառում ոչ միայն տվյալ ձեռնարկությանը, այլև մեր ողջ ժողովրդական տնտեսությանը։

«Այժմ,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— երբ մենք դուրս ենք եկել համաշխարհային լայն շուկա և մրցապայքարի մեջ մտել առավել զարգացած կապիտալիստական երկրների հետ, շատ կարևոր է, որ սովետական մեքենաները, հաստոցները, սարքավորումները, մի խոսքով, ամբողջ արտադրանքը ոչ միայն չզիջեն օտարերկրյա նմուշներին, այլև նրանցից լավը լինեն» (Լենինյան կուրսով, հ. 1, էջ 427)։

Բարձրորակ արտադրանքը թողարկում են մարդիկ։ Եվ դրա համար որակի բարձրացման կարևոր միջոցներ են նաև հասարակական և տնտեսական ազդեցությունը, բարձրորակ արտադրանք հանձնելու համար բարձր աշխատավարձ սահմանելը, կադրերի ուսուցումը, նրանց որակավորման բարձրացումը, արտադրության կազմակերպման բարելավումը և այլն։

Զարգացող տեխնիկան պահանջում է հարստացնել աշխատողի գիտելիքները, որոնք անհրաժեշտ են աշխատանքի պրոցեսներն իրացնելու համար։ Հակառակ դեպքում տեխնիկայի օգտագործման և աշխատանքային պրոցեսներում անխուսափելի են դժվարությունները։ Այլ կերպ ասած, պետք է սովորել որակի հարցում ղեկավարվել արդի գիտության տվյալներով։ Այսօրվա կարևորագույն խնդիրն է՝ ստեղծել որակի կատարելագործման այնպիսի սիստեմներ, որոնք կարող են վերակառուցվել կոնկրետ պայմանների պահանջներին համապատասխան։

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՖՈՆԴԸ ՍԱՐՔԱՇԻՆԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. սեպտեմբերյան պլենումի որոշմամբ ստեղծվել է տնտեսական խթանման սկզբունքորեն նոր սիստեմ, որը մեծապես նպաստում է տեխնիկական առաջընթացի արագացմանը, արտադրաֆոնդերի ռացիոնալ օգտագործմանը և արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Այդ սիստեմում կարևոր տեղ է տրված արտադրության զարգացման ֆոնդին։ Այդ նպատակի համար հատկացված միջոցները նախատեսվում են նոր տեխնիկայի ներդրման, արտադրապրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, սարքավորումների այժմեականացման, հիմնական ֆոնդերի նորացման, տրանսպորտային միջոցների ձեռքբերման, արտադրության և աշխատանքի կազմակերպման և այլ նկատառումներով։ Դրա հետ միասին, այդ ֆոնդից ձեռնարկությունները կարող են կատարել շինմոնտաժային աշխատանքներ՝ կապված սարքավորումները փոխելու և տեղակայելու, արտադրական, կենցաղային և պահեստային հրապարակները լավացնելու և ուրիշ միջոցառումների հետ։

Ներկայումս արտադրության զարգացման ֆոնդի միջոցները մեծ դեր են խաղում ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացի գործում։ Օրինակ, Երևանի ժամացույցի գործարանում 1966—1970 թթ. այդ ֆոնդից օգտագործված գումարները կազմել են 487 հազար, Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանում՝ 558 հազար, իսկ Երևանի սարքաշինական գործարանում՝ 264 հազար ռուբլի (1967—1970 թթ.) և այլն։ Արդյունքը եղել է այն, որ լավացել են ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները— բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, մեծացել արտադրության իրացման ու համախառն արտադրանքի ծավալը։ Սակայն, արտադրության զարգացման ֆոնդը դեռևս լրիվ չի արդարացնում իրեն (օգտագործման տեսակետից)։ Արդյունաբերական ձեռնարկություններում այն լրիվ չի իրացվում։ Օրինակ, Երևանի սարքաշինական գործարանում 1968 թ. օգտագործվել է 69, ժամացույցի գործարանում 1966 թ.՝ 57, 1970-ին՝ 83, էլեկտրաստուգասարք գործարանում՝ 1967 թ.՝ 11, իսկ 1969-ին՝ 13 տոկոսով, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանում 1967 թ.՝ 72, 1970-ին՝ 57, Արզնու ճըշգրիտ տեխնիկական քարերի գործարանում 1966 թ.՝ 69, 1968 թ.՝ 76, 1969 թ.՝ 41 տոկոսով և այլն։

Արտադրության զարգացման ֆոնդը ոչ միայն լրիվ չի օգտագործվում, այլև այդ գումարները ծախսվում են ոչ նպատակային։ Հաճախ ձեռնարկու-



թյունների արտադրության զարգացման ֆոնդից զգալի գումարներ են հատկացվում ոչ ստանդարտ սարքավորումների և այդպիսի հիմնական ֆոնդեր ձեռք բերելու համար (դրասենյակային կահույք, պահարաններ, լաբորատոր սարքավորումներ, սառնարաններ և այլն), որոնք ուղղակի արտադրական արդյունք չեն տալիս։ Շատ դեպքերում այդ գումարների նշանակալի մասը հատկացվում է ավտոմոբիլային ճանապարհաշինության և վերանորոգման աշխատանքներին։ Օրինակ, 1966 թ. Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանն այդ նպատակների համար օգտագործել է 15 հազար ռուբլի, որը կազմում է տվյալ տարվա արտադրության զարգացման ֆոնդի ամբողջ ծախսերի 18,8 տոկոսը։

Արտադրության զարգացման ֆոնդի միջոցներն անարդյունավետ են ծախսվում կամ բոլորովին չեն ծախսվում աշխատանքի կազմակերպման համար։ Սարքաշինական համարյա բոլոր ձեռնարկություններում չկան աշխատանքի գիտական կազմակերպման բաժիններ կամ խմբեր։ Իսկ եթե կան էլ, մեկ-երկու մարդ են, այն էլ ձևականության համար։ Այդ հաստիքների անվան տակ մարդիկ հիմնականում գործում են աշխատանքի ու աշխատավարձի բաժիններում։

Այս ամենը հետևանք են այն բանի, որ ձեռնարկություններում չկան արտադրության զարգացման ֆոնդի ընթացիկ և հեռանկարային պլաններ։

Չի կարելի լրջորեն խոսել արտադրության զարգացման ֆոնդի արդյունավետ օգտագործման մասին, եթե չկան նոր տեխնիկայի ներդրման, ֆիզիկապես մաշված և բարոյապես հնացած սարքավորումների ու մեքենաների փոխարինման կոմպլեքս, գիտական հիմնավորված պլաններ, որոնք հաշվի են առնում ձեռնարկությունների հեռանկարները, իրականացվող միջոցառումների փուլերն ու հաջորդականությունը։ Այդ ձեռնարկություններից շատերը համարյա չեն կատարում արտադրության զարգացման ֆոնդից ծախսումների արդյունավետության հաշվարկները, որը նույնպես պատճառ է հանդիսանում արտադրության զարգացման ֆոնդերի ոչ ռացիոնալ օգտագործման։

Արտադրության զարգացման ֆոնդի ոչ ռացիոնալ օգտագործումը բացատրվում է նաև անբավարար հսկողությամբ։ Ձեռնարկություններին տրված է արտադրության զարգացման ֆոնդն ինքնուրույն ծախսելու իրավունք։ Բայց դա չի նշանակում, որ վերադասը պետք է թուլացնի հսկողությունը։ Ինքնուրույնություն է տրված ձեռնարկություններին հատկապես նրա համար, որպեսզի կարողանան ընդունել և արդյունավետ իրականացնել հասարակական շահերին մաքսիմում չափով պատասխանող որոշումները։ Դրա համար ձեռնարկությունների ինքնուրույնության ընդլայնումը ո՛չ միայն չի բացառում, այլ, ընդհակառակը, ենթադրում է վերադաս կազմակերպությունների կողմից անընդհատ և նպատակային հսկողություն։

Ճիշտ է, արտադրության զարգացման ֆոնդի օգտագործմանը որոշ չափով հսկում է պետական բանկը։ Միջոցների ծախսումը կատարվում է պետական բանկին ներկայացրած տեղեկանքի հիման վրա, որի մեջ ցույց են տրվում ձեռնարկության անհրաժեշտ գումարը և օգտագործման բնույթը։

Ձեռնարկությունների տարեկան հաշվետվությունների միայն մեկ ձևի մեջ է, որ որոշ չափով երևում է արտադրության զարգացման ֆոնդի միջոցների օգտագործումը (ձև № 10, հատուկ ֆոնդերի միջոցների շարժում)։ Մեկ տողով ցույց է տրված արտադրության զարգացման ֆոնդի մնացորդը տարվա սկըզ-

քին, նոր տարվա հատկացումները, ծախսերը և մնացորդը տարվա վերջին։
Իսկ այդ ձևին կից լրացման մեջ, ուր ամփոփված են տնտեսական խթանման
ֆոնդերի միջոցների օգտագործման վերաբերյալ հաշվետու նյութերը, ընդհա-
նուր տեղեկություններ կան այն ծախսերի մասին, որոնք կատարվել են հիմ-
նականում միայն արտադրության տեխնիկական զարգացման համար։ Սակայն
արտադրության զարգացման ֆոնդի միջոցների օգտագործումը միայն այդ
միջոցառումներով չի սահմանափակվում։ Դրանք, ինչպես նշեցինք վերը, օգ-
տագործվում են ավելի շատ միջոցառումների համար և տարբեր բնագավառ-
ներում։

Արտադրության զարգացման ֆոնդի ոչ ռացիոնալ օգտագործման հիմնա-
կան պատճառներից է նաև այն, որ դրա միջոցները դեռևս քիչ են։ Շատ ձեռ-
նարկություններ սարքավորումների նորացման խիստ կարիք են զգում։ 1970 թ.
տվյալներով, Երևանի սարքաշինական գործարանում սարքավորումների պար-
կը ունեցել է 607 միավոր, այդ թվում՝ մինչև 5 տարին լրացած 234, 5—10
տարին՝ 199, 10-ից բարձր՝ 172, էլեկտրատասյգապասք գործարանում՝ 308,
այդ թվում՝ մինչև 5 տարին լրացած՝ 158, 10-ից բարձր՝ 150 միավոր, իսկ ժա-
մացույցի գործարանում՝ 1.009, այդ թվում՝ մինչև 5 տարին՝ 257, 5—10 տա-
րին՝ 235, իսկ 10-ից բարձր՝ 517 միավոր։

Սակայն 1970 թ. տվյալներով, Երևանի սարքաշինական և էլեկտրատասյգ-
ապասք գործարաններում արտադրության զարգացման ֆոնդի պլանով նախա-
տեսված գումարները հնարավորություն էին ընձեռում տարեկան փոխելու
միայն 30-ական, ժամացույցի գործարանում՝ 66 միավոր սարքավորում։ Իսկ
միայն 10 տարուց բարձր տարիք ունեցող սարքավորումները արտադրության
զարգացման ֆոնդի հաշվին փոխելու համար Երևանի սարքաշինական գործա-
րանում պահանջվում է 6, էլեկտրատասյգապասք գործարանում՝ 5, իսկ ժա-
մացույցի գործարանում՝ 8 տարի (հաշվարկները կատարված են ձեռնարկու-
թյան տարեկան հաշվետվությունների հիման վրա)։ Ստացվում է այնպես, որ
այս ձեռնարկություններում արտադրության զարգացման ֆոնդի միջոցները,
եթե նույնիսկ ուրիշ ոչ մի միջոցառման վրա էլ չօգտագործվեն, չեն բավակա-
նացնի նույնիսկ 10 տարուց ավելի օգտագործված սարքավորումները փոխե-
լու համար։

Արտադրության զարգացման ֆոնդի ոչ ռացիոնալ օգտագործումը բացա-
տրվում է նաև արտադրամիջոցների բաշխման խիստ կենտրոնացումով։ Ար-
դյունաբերական նոր սարքավորումները ձեռնարկություններին բաց են թող-
նըվում միայն ըստ կարգագրերի՝ համապատասխան մինիստրությունների մի-
ջոցով։ Պլանից ավելի սարքավորումներ ձեռք բերելու համար կարգագրեր ստա-
նալն այժմ բացառիկ երևույթ է, որովհետև պլանավորող օրգանները պա-
կասեցնում են պետական պլանից բարձր կապիտալ ներդրումների համար
հատկացված ռեսուրսները, չնայած ձեռնարկությունների պահանջի հիմնա-
վորվածությանը։ Ավելի դժվար է հասնել կապալային կարգով շինմոնտաժա-
յին աշխատանքների կատարմանը, քանի որ կապալային կազմակերպություն-
ների աշխատանքների պլաններում դրանք չեն նախատեսվում։ Այդպիսի դըժ-
վարությունների են հանդիպում ձեռնարկությունները նաև նախագծային, նա-
խահաշվային փաստաթղթերը կազմելիս բարոյապես հնացած կամ ոչ պիտանի
սարքավորումներն իրացնելիս։
Շատ ձեռնարկություններ խնդրում են վերադասներին բարոյապես հնա-



ցած ոչ պիտանի սարքավորումները հատկացնել ուրիշ կազմակերպություննե-
րի, որովհետև դրանք զբաղում են ոչ միայն պահեստային, այլև արտադրա-
կան հրապարակները, ավելացնում արտադրության ծախսերը և դանդաղեցնում
ժամանակակից բարձր արտադրողականություն ունեցող սարքավորումների
մոնտաժումը։ Բայց առանց հիմնավորված պատճառների ձգձգվում է այդ գոր-
ծը։ Կան արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք հաճախ դուրս չեն
գրում հնացած սարքավորումները, որովհետև չեն ուզում վատացնել իրենց
գործունեության ցուցանիշները։

Որպեսզի արտադրության զարգացման ֆոնդն իր նպատակին ծառայի,
անհրաժեշտ է դրամական ֆոնդերին համապատասխան հատկացնել նաև նյու-
թական միջոցները։ Պետք է հասնել այն բանին, որպեսզի ձեռնարկություն-
ներն առավելագույն չափով և օպերատիվ օգտագործեն այդ միջոցները, ան-
հրաժեշտության դեպքում պատվիրեն կամ գնեն պահանջվող սարքավորում-
ները, իրացնեն ոչ պիտանի մեքենաներն ու մեխանիզմները։ Արտադրության
զարգացման ֆոնդից ռեալ շահումը ոչ թե գումարի, այլ ձեռք բերված ու տե-
ղադրված նոր տեխնիկայի, մեքենայացման և ավտոմատացման աճի, արտա-
դրության կուլտուրայի, աշխատանքների պայմանների բարելավումն է։

Արտադրության զարգացման ֆոնդի թերի օգտագործումը հետևանք է նաև
այն բանի, որ միջին ու մանր ձեռնարկություններին քիչ գումարներ են հատ-
կացվում։ Իսկ ձեռնարկությունների միջև միջոցները փոխանցելը հնարավո-
րություն չի տալիս կատարել խոշոր և օգտակար գործեր, որոնք շատ անհրա-
ժեշտ են գիտատեխնիկական առաջընթացի համար։ Մեր կարծիքով, ավելի
նպատակահարմար է, որ արտադրության զարգացման ֆոնդը կենտրոնացված
կարգով օգտագործվի ըստ գերատեսչությունների, ճյուղային վարչությունների։

Վ. Հ. ՍԻՄՈՆՅԱՆ
ՍՍՀՄ պետպլանին առընթեր պլանավորման և նորմա-
տիվների գիտահետազոտական ինստիտուտի
հայկական մասնաճյուղի ավագ գիտաշխատող

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՀԱՆՈՒՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԻ՝ ԴՐԱՄԱՏԻԿԱԿԱՆ ՓՈՐՁԻ ՀԱՇՎԱՌՄԱՄԲ*

ՎՈԼՈԴՅԱ ՏԵՅՏԵԼԲՈՅՄ

Չիլիի կոմկուսակցության Կենտկոմի
քաղհանձնաժողովի անդամ

### ՍՈՎՈՐԱԿԱՆ ՖԱՇԻԶՄ

Չիլին թողնում է նացիստների իշխանության տակ գտնվող երկրի տպա-
վորություն: Իրոք, սեպտեմբերի 11-ի զինվորական ռեակցիոն հեղաշրջումը
երևան է բերում հիտլերականների գործողություններին բնորոշ գծեր: Այն,
ինչ տեղի էր ունենում 1933 թվականին Բեռլինում, 40 տարի անց նույնու-
թյամբ կրկնվում է Սանտյագոյում: Իհարկե, ժամանակներն այժմ այլ են:
Մեծացել են սոցիալիզմի կշիռն ու ժողովուրդների դերն աշխարհում: Պատ-
մությունը հիմա այլ կերպ է կերտվում: Եվ, այնուամենայնիվ, հոսում են
արյան գետեր, ծավալվում է մարդորսությունը: Մարդասպանությունների
թիվը հասնում է տասնյակ հազարների: Օրեցօր աճում է մահապատժի են-
թարկվածների ցուցակը: Երբ սկսվում է պարետային ժամը, խավարի քողի
տակ իրականացվում է «գիշեր և մշուշ» չարագուշակ գործողությունը: Ուշ
գիշերը մասսայական հաշվեհարդարների նախասիրված ժամանակն է: Ամե-
րիկյան քաղաքացիներ Ադամ և Պատրիցիա Գերրետ-Ծեշ ամուսինները հայ-
տարարում են. «Մենք տեսանք, թե ազգային ստադիոնում ինչպես գնդա-
կահարվեցին 400—500 կալանավորներ: Նրանց սպանում էին խմբերով՝
30—40-ական մարդ»:

Խուզարկում են թաղ առ թաղ, տուն առ տուն: Մանկահասակ երեխա-
ների լաց ու կականի տակ զինվորները ջարդոտում են դռները: Փողոց են
նետվում գրքերը: Գրքերի խարույկներ են վառում, սարքում աուտոդաֆեներ:
Անվերջանալիորեն կրկնվում են միևնույն տեսարանները. ձեռքերը ծոծրակ-
ներին դրած անցնում են գերիների խմբերը (խոսելով խունտայի ծառայու-
թյան մեջ գտնվող գրչակների օգտագործած զինվորական լեզվով)՝ ավտո-
մատներով զինված զինվորների ուղեկցությամբ: Վկատում են 25 միլիմետրա-
նոց հրանոթներով զինված զրահամեքենաները: Ամենուրեք կարելի է տեսնել
գնդացիրներ, բազուկաներ, դատական բժշկության ինստիտուտի դիականոցում
իրենց հարազատներին փնտրող բազմաթիվ մարդկանց. դիակների կույտեր,
բանվորների, ուսանողների մարմիններ՝ այլանդակված դեմքերով: Մեռած-
ներին ուղղակի փողոց են շպրտում՝ որպես «դաս և օրինակ»: Մասսայական

* Տպագրվում է որոշ համառոտումներով:— Խմբ.:



մահապատիժների ականատեսները պատմում են. «Կալանավորվածների
խմբերը քայլում էին «Ինտերնացիոնալ» երգելով: Մեկ կամ երկու րոպե լըռ-
վեցին կրակոցներ: Լավում էր երգող բանվորների ձայնը: Այնուհետև երգն
ընդհատվեց»:

Փարիզի պրոլետար-կոմունարների, ցարական Ռուսաստանի պրոլետա-
րիատի, բոլոր նրանց նման, ում գնդակահարում էին նացիստները, Չիլիի
ժողովուրդը երես առ երես դիմավորում է մարդասպաններին: Նա գիտե, որ
կգա օրը, և նրանք կկանգնեն իրենց նյուրնբերգյան դատարանի առջև:

Խռովարարները հույս ունեին կատարելու անարյուն, հասարակ ու անա-
կընկալ հեղաշրջում: Նրանք կարծում էին, թե բավական է սեղմել դավա-
դրության կոճակը՝ գործի դնելու համար հեռվից՝ Վաշինգտոնի Կենտրոնա-
կան հետախուզական վարչության կաբինետներից կառավարվող մեքենան և
գրավելու իշխանությունը, առանց ձեռքերը կեղտոտելու:

Նրանց համար առաջին փորձաքարը դարձավ պրեզիդենտ Ալիենդեի
դիմադրությունը: Խռովարարները ենթադրում էին, թե նա անձնատուր կլինի
առաջին իսկ սպառնալիքից կամ ուլտիմատումից հետո, ինչպես այդ եղել էր
լատինաամերիկյան շատ պրեզիդենտների հետ, որոնց ուղղակի գիշերազգես-
տով նստեցնում էին ինքնաթիռ և ուղարկում քիչ թե շատ պատվարժան աք-
սորավայր: Ալիենդեն պատասխանեց որպես իսկական չիլիացի. «Եթե նույն-
իսկ դավաճաններն ինձ դուրս բերեն «Լա Մոնեդայից», ապա միայն փայտե
գիշերազգեստով»[1]: Արտասահման, աքսորավայր մեկնելու համար նրան
խոստացան պահպանագրեր: Արիաբար, զայրույթով նա մերժեց բոլոր նրանց
առաջարկությունները, որոնց կողմն էր ուժը, բայց ոչ ճշմարտությունը: Սալ-
վադոր Ալիենդեն զոհվեց՝ ավտոմատը ձեռքին: Նա ընկավ անհավասար
մարտում՝ խռովարար կապիտան Գարրիդոյի ձեռքից:

Խռովարարների համար երկրորդ խոչընդոտը ամենուր մարտնչող ժողո-
վըրդի դիմադրությունն էր: Նրա արժանապատվությունն ու տոկունությունն
ամբողջովին ձախողեցին իշխանությունն անցավ զավթելու պուտչիստների
պլանները, բնակչությանը վախեցնելով զինվորական պուտչով և զենքի շա-
ռաչով, զենք, որ երկիրը վստահել էր նրանց բնավ ոչ չիլիացիների հետ
հաշվեհարդար տեսնելու համար:

Նրանք, որ Չիլիի պատմության մեջ առաջին անգամ բարբարոսական
օդային ռմբակոծության ենթարկեցին պրեզիդենտական պալատը, առանց
տատանվելու սկսեցին օդից ու ցամաքից գնդակոծել գործարաններն ու ֆաբ-
րիկաները: Ազգայնացված «Սումար» տեքստիլ ձեռնարկությունում սպանվեց
500 բանվոր: Նողկալի արարքներն ավարտում էին պատժիչների ջոկատնե-
րը: Տեխնիկական համալսարանում գնդակահարվեց յուրաքանչյուր տասնե-
րորդ ուսանողը: Նույնն էր տեղի ունենում նաև այն շրջաններում, ուր չքա-
վորությունն է:

Մի վիթխարի արյունոտ բծի նման տեռորն սկսեց տարածվել երկրով
մեկ՝ Արիկայից մինչև Մագալյանես: Սկսվել է ժողովրդական միասնության
ճակատի ղեկավարների ու կողմնակիցների մի կատարյալ որս: Ռադիոյով և
հեռուստատեսությամբ հաղորդվում են այն մարդկանց ցուցակները, որոնց
որոնում է խունտան: Այս տողերը գրվելու օրերին հաշվեհարդար է պատ-
րաստվում միջազգային կոմունիստական և բանվորական շարժման ականա-
վոր գործիչ, Չիլիի կոմկուսակցության գլխավոր քարտուղար ընկ. Լուիս Կոր-
վալանի նկատմամբ: Նա ձերբակալված է, հանձնված, այսպես կոչված՝ ռազ-
մական տրիբունալին: Ի պատասխան ռեպրեսիաների՝ Չիլիի ժողովուրդը
բարձրացրեց դիմադրության դրոշը: Այդ դիմադրությունը ճնշված չէ: Խռովա-
րարների խունտան երկրում հայտարարեց քաղաքացիական պատերազմի
վիճակ: Մրի մի հարվածով նա վերացրեց բոլոր օրենքները՝ բացի պատե-

[1] «Լա Մոնեդա»— պրեզիդենտական պալատը Չիլիում: Փայտե գիշերազգեստը— չիլիական
փոխաբերություն: Մեր երկրում այսպես են անվանում դագաղը:

րազմական ժամանակի օրենքներից: Բայց անցյալ դարի դրակոնյան այդ օրենսդրությունն անգամ քող է միայն, քանի որ ըստ էության խունտայի համար սարսափից ծնված իրենց կամայականությունից բացի այլ օրենքներ գոյություն չունեն:

Խունտան իր ծնունդը նշեց արյունով ու հրով, լողաց ժողովրդի արյան մեջ: Բայց նա անմիջապես իմացավ, թե ինչ է ժողովրդի զայրույթը, նրա հավատարմությունը իդեալներին, ինչ է ժողովրդական դիմադրության բոցը, չնայած պայքարն անհավասար է: Ֆաշիզմին ցույց տվող հայրենասիրական, ժողովրդական, ազգային դիմադրությունը կարող է ստանալ տարբեր ձևեր, բայց այն չի դադարի, քանի դեռ ժողովուրդը չի վերստացել իր ազատությունը, դեմոկրատիան, սուվերենությունը, քանի դեռ երկիրը չի վերադարձել իր նախկին ուղուն: Այսօրվա Չիլին գործող հրաբուխ է:

Ֆաշիստներին չի հաջողվի հաստատել գերեզմանային հանգստություն: Ժողովրդի այդ նախազգուշացումը հնչեց բանաստեղծ Պաբլո Ներուդայի թաղման ժամանակ: Խունտան անողոքաբար արագացրեց XX դարի լատինաամերիկյան մեծագույն բանաստեղծի մահը: Մահվան մահճում իսկ, նա գրում էր ֆաշիզմը մերկացնող բոցաշունչ բանաստեղծություններ: Նա մեռավ մարտնչելով, ձեռքին իր գրիչն ու իր պոեզիան— այն զենքը, որին տիրապետում էր հիանալի վարպետությամբ: Վրեժխնդրության համար խունտան հրամայեց կողոպտել նրա բնակարանը Սանտյագոյում և տունը՝ Իսլա-Նեգրայում: Սենյակը, ուր ժողովուրդը հրաժեշտ էր տալիս մեռած բանաստեղծին, այնպիսի տեսք ուներ, ասես, ենթարկվել էր բարբարոսների արշավանքին: Այնտեղ սուլում էր քամին, հատակը թաց էր, թափված էին կոտրատված ապակու փշրանքներ, ջարդոտված կահույքի մասեր, պատառոտված գրքեր, արվեստի անարգված ստեղծագործություններ: Ներուդային հրաժեշտ տալու էին եկել նրա բարեկամները: Բանաստեղծի պաշտոնական թաղումն արգելված էր:

Սեպտեմբերի 25-ի առավոտյան Պաբլո Ներուդան թաղվեց «Ինտերնացիոնալի» հնչյունների տակ, չնայած այն մարդկանց սպառնալիքներին, որոնց ձեռքում էին թնդանոթներն ու բազուկաները: Պետական հեղաշրջումից 14 օր անց նրա թաղումը վերածվեց օպոզիցիայի առաջին մասսայական-քաղաքական ցույցի: Գնալով աճում էր թաղման մասնակիցների բազմությունը. լսվում էին բացականչություններ. «Ընդդե՛մ ֆաշիստական խունտայի, ընդդե՛մ դիկտատուրայի: Դու մեզ հետ ես, ընկե՛ր Պաբլո Ներուդա»: Մնտաղյա համեստ դագաղի շուրջն էին հավաքվել կոմունիստները, բանաստեղծի ընկերները, մեր անընկճելի ժողովրդի լավագույն մասի ներկայացուցիչները: Նրանք վանկարկում էին. «Մենք կանգնած ենք և միշտ կանգնած կմնանք այս դիրքերում»: Ժողովրդական միասնության ներկայացուցիչների հետ միասին բանաստեղծին հրաժեշտ տալու էր եկել 1970 թվականին պրեզիդենտի պոստի նախկին թեկնածու, քրիստոնեական-դեմոկրատական կուսակցության ձախ թևի ներկայացուցիչ Ռադոմիրո Տոմիչը: Բանաստեղծի դագաղի մոտ սկսվեց կյանքը, կազմավորվեց դիմադրության հայրենասիրական լայն ճակատի նախատիպը:

Թաղման ժամանակ մի բանվոր ասաց ժուռնալիստին. «Պաբլո Ներուդայի հետ ես ծանոթ չեմ եղել, բայց մեզ համար ազատ երկրի իսկական խորհրդանիշն է նա»: Իմաստուն, անհերքելի խոսքեր ասաց համեստ աշխատավորը:

## „made in USA“

Իմպերիալիստները, տեղական օլիգարխիան, ռեակցիոն բուրժուազիան ի՞նչ երեսով են հիմա խոսելու դեմոկրատիայի, ազատության, սահմանադրության, օրինականության, մարդկանց իրավունքների պահպանության և ազատասիրության մասին այն ամենից հետո, ինչ նրանք արեցին Չիլիում, ուր այդ արժեքները թաթախվել են արյունով, որտեղ ո՛չ միայն սպանված են պրեզիդենտն ու հազարավոր չիլիացիներ, այլ ի չիք են դարձել սահմանադրական բոլոր իրավունքները: Ավերակների է վերածվել պրեզիդենտական պալատը: Ցրված է պառլամենտը, չնայած նրան, որ պուտչիստներին հլու հնազանդ նրա մեծամասնությունը, կրակի հետ խաղալով, խրախուսում էր ռեակցիայի քայքայիչ գործունեությունը: Իժը խայթում է նաև նրան, ով տաքացրել է նրան իր ծոցում:

Նրանք, ովքեր այսօր մասսայական սպանություններ են կատարում, ովքեր խախտել են զինվորական երդումը և դեն նետել գովաբանված պրոֆեսիոնալ պատիվը, ամբարտավանորեն իրենց անվանում են «նացիոնալիստներ»: Բայց նրանք օտարերկրյա գործակալության մշակած պլանի արյունարբու կատարողներ են միայն:

«Ինտերնեշնլ տելեֆոն էնդ տելեգրաֆի» (ԻՏՏ) հաղորդալարերով անընդհատ խոսակցություններ էին տեղի ունենում Չիլիի, դավադիրների գրասենյակների հետ: Եթե հիմա, բոլոր իրադարձությունների լույսի տակ, նորից անդրադառնանք ԻՏՏ-ի այն գաղտնի փաստաթղթերին, որ ժամանակին ԱՄՆ-ի մամուլում հրապարակեց ամերիկյան ժուռնալիստ Ջեկ Անդերսոնը, կարելի է հասկանալ, թե ինչպես կազմակերպվեց դավադրությունը Չիլիի ժողովրդական կառավարության դեմ: Ցինիկ խոստովանություններին հատուկ է անսահման պարզությունը: Վաշինգտոնում, սենատի ենթահանձնաժողովում, դեմոկրատ Ֆրենկ Չերչի նախագահությամբ, ԻՏՏ-ի փոխնախագահ Ուիլյամ Մերիեմը հայտարարեց, որ ոմն գործակալ Բրոյի միջոցով ինքը բանակցություններ էր վարում և ինֆորմացիա փոխանակում Կենտրոնական հետախուզական վարչության և Սպիտակ տան հետ: Այդ անկեղծությունն այնքան նողկալի էր, որ «Նյու-Յորք թայմսը» 1971 թվականի մարտի 22-ի իր համարում զետեղեց մի խմբագրական հոդված ԻՏՏ-ի լկտի վարքագծի մասին: Սպիտակ տուն՝ Հենրի Քիսինջերին և ԿՀՎ-ի այն ժամանակվա դիրեկտոր Ռիչարդ Հոլմսին ուղարկվեց մի խնդիրք: Ո՞վ էր հանձնել այդ: ԿՀՎ-ի նախկին դիրեկտոր Ջոն Ա. Մաքկոունը (մինչև օրս էլ ԿՀՎ-ի խորհրդական է նա և, միաժամանակ, ԻՏՏ-ի դիրեկտորը): Այդ առթիվ վերոհիշյալ խմբագրական հոդվածում «Նյու-Յորք թայմսը» ընդգծում էր. պ-րն Մաքկոունը ասում է (և դրանում կասկածելու հիմքեր չկան), որ ԻՏՏ-ն չի եղել այն պլանի հեղինակը, որի իրականացմանը խնդրում էին աջակցել: Այդ խնդիրքից մեկ տարի անց, Չիլիում ԻՏՏ-ի վերահսկողության տակ գտնվող հեռախոսային ընկերությունը բռնագրավելուց հետո, հյուսիսամերիկյան այդ միավորումը Սպիտակ տուն ներկայացրեց մի պլան, որի 18 կետերում խոսվում է Չիլիի դեմ ուղղակի ագրեսիայի մասին, ցուցումներ են տրվում հակահեղափոխության: Այդ կոնկրետ մասը սկսվում է այն խոսքերով, որ Չիլիում տիրող դրությունը պահանջում է ամբողջ ադմինիստրացիայի լարված ուշադրությունը և որ պետք է գաղտնի, բայց էֆեկտիվորեն ամեն ինչ անել, որպեսզի Ալիենդեն առաջիկա կրիտիկական վեց ամսից ավելի չդիմանա: Այնուհետև, մենք կարող էինք առաջարկել, որ Սպիտակ տունը Ազգային անվտանգության խորհրդում ստեղծեր հատուկ աշխատանքային ռեժիմ՝ Չիլիի վրա ճնշում գործադրելու նպատակով:

Հենց այդ խումբն էլ ղեկավարում էր բոլոր համաձայնեցված գործողությունները ժողովրդական կառավարության դեմ: 18 կետերը ամենատարբեր հարցերի մասին են: Այլ կերպ ասած, դրանք պարունակում են բոլոր մակարդակներում և բոլոր բնագավառներում հարձակման, դավադրության մանրամասն մշակված պլան— ֆինանսա-տնտեսական բլոկադա, թերթերի ու ժուռնալիստների կաշառում և այլն: Դա մի նախապատրաստություն էր բոլոր կանոններով, որտեղ հաշվի էին առնված բոլոր ուղղությունները:

Եվ այսպես, տնտեսական ու քաղաքական դավադրություն կազմակերպելու մասին որոշման հետ միասին, պրոպագանդիստական ապարատն օգտագործելու հետ մեկտեղ սկսվեց զինված ուժերի շարքերը թափանցելու աշխատանքը: Հենվելով փոխադարձ օգնության պայմանագրի վրա, օգտագործելով ԱՄՆ-ի զինվորական միսիաների տրամադրության տակ գտնվող բոլոր միջոցները, ամենամյա համատեղ ռազմական մանևրները, Միացյալ Նա-

հանգները թափանցում են Չիլիի զինված ուժերի մեջ, ազդեցություն գործում նրանց վրա: Դրա կոնկրետ ապացույցներից մեկը սպաների պատրաստումն է Պանամայի, Պուերտո-Ռիկոյի և ԱՄՆ-ի «հակաքայքայիչ» դպրոցներում:

Հյուսիսամերիկյան ռազմա-ծովային հետախուզության սպաներն ակտիվ գործունեություն ծավալեցին Չիլիի նավատորմում և մյուս զորատեսակներում (հարկ է նկատի ունենալ, որ դրանց զինումը տեխնիկայով և հանդերձանքով կախված է ԱՄՆ-ի մատակարարումներից): Ստեղծվում է մի ամբողջ մեխանիզմ, որը կապված է Միացյալ Նահանգներից կառավարվող դավադրության կենտրոնի հետ:

Աջ սպաները ագիտացիա են մղում զինվորների շրջանում: Ձախ մասսայական կազմակերպությունների ոչնչացումը նախապատրաստելու գործի առաջին քայլը պետք է լիներ, նրանց կարծիքով, զենքի նկատմամբ վերահսկողության մասին օրենքի կիրառումը: Նրանք համաձայնության են գալիս վաճառականների հետ, որպեսզի վերջիններս հրաժարվեն ենթասպաներին և զինվորներին պարենամթերք վաճառելուց: Չարաշահելով ենթակաների դըժգոհությունը, նրանք սկսում են բացահայտորեն պետական հեղաշրջման կոչ անել:

Հունիսի 29-ի զինված խռովությունից (այսպես կոչված «տանկասոյից») հետո նավատորմում սկսվում են հեղաշրջման դեմ հանդես եկող նավաստիների ու ենթասպաների մասսայական ձերբակալություններն ու հալածանքները: Պուտչիստները ջանում են վախեցնել զինված ուժերի այն մասին, որ դեռ պահպանում էր հավատարմությունը կառավարությանը: Ֆաշիստական տարրերը համանման մեթոդներով գործում են նաև ավիացիայում: Նրանք ռազմաօդային ուժերին հրահրում էին ակտիվ մասնակցելու հեղաշրջմանը, օգտագործելու բոլոր միջոցները՝ ընդհուպ մինչև բանավանների ու արդյունաբերական շրջանների ռմբակոծումները: Օգոստոսի վերջին հաճախակի են դառնում սահմանադրությանը հավատարիմ զինվորականների, ինչպես, օրինակ՝ գեներալ Պրատսի, տեղափոխությունները: Դրա հետևանքով ընդլայնվում են պուտչիստական պլանների իրականացման հնարավորությունները:

Ամերիկացիները հանդես էին գալիս պուտչի ոգեշնչողների և կապավոր գործակալների դերում: Նրանք ղեկավարում էին նաև քրիստոնեական-դեմոկրատական կուսակցության՝ ռեակցիոն ազգային կուսակցության աջ թևի քաղաքացիական ապարատը և «պատրիա ի լիբերտադ» ֆաշիստական հարվածային խմբերը: Նրանց գործողությունները խռովարարների հետ համաձայնեցնելու համար նշանակվեց «զինված ճակատի քաղաքացիական խորհրդականների» խումբ:

Հունիսի կեսերին որոշվեց սկսել ճակատային հարձակումը, զուգահեռաբար նախաձեռնել մի շարք այլ գործողություններ:

Օգոստոսի 29-ին յանկիների գործակալ Ագուստին Էդվարդսին պատկանող «Մերկուրիո» թերթը հրապարակեց մանիֆեստ հեղաշրջման մասին: Այնտեղ առանց այլևայլության ասված էր, «մեր զինված ուժերի միացյալ ղեկավարության ներքո միայն Չիլին կարող է հավաքել իր լավագույն մարդկանց՝ հանուն նոր սահմանադրականության...»: Պուտչի նախապատրաստման գագաթնակետն էր այդ:

Այսպիսին է յանկիների իմպերիալիզմի քաղաքականությունը: 1920—1973 թթ. Լատինական Ամերիկայում կատարվել է 90 զինվորական հեղաշրջում: Մեծ մասամբ դրանց հետև կանգնած էր հյուսիսամերիկյան հետախուզական կենտրոնը:

Սեպտեմբերյան պուտչը Չիլիում իր վրա կրում է «Պատրաստված է



ԱՄՆ-ում» պիտակը[1]: Այդ բացահայտորեն հակադրվում է երկրի ողջ քաղաքական կյանքին, պրոֆեսիոնալ պարտքի և սահմանադրության նկատմամբ զինված ուժերի ավանդական հավատարմությանը: Այն կրում է իմպերիալիստական միջամտության կնիքը: Բոլոր զինված ուժերի անունից հեղաշրջում կատարելու համար դավադիրներն ստիպված էին ազատել առավել ընդունակ զորահրամանատարներին, նրանց, ովքեր հավատարիմ էին կառավարությանը: Նրանց փոխարեն նշանակվեցին զինվորի պարտքին, ժողովրդին և հայրենիքին դավաճանած մարդիկ: Պուտչիստները տեռոր ծավալեցին զինվորական ուժերում: Նրանք գնդակահարում էին այն զինվորներին, ովքեր հրաժարվում էին կատարել սպանելու մասին հրամանները, ձգտում զինված ուժերը դարձնել «դաժան ու կոպիտ զինվորական ուժ», ինչպես դրանց մասին մի ժամանակ ասում էր Մաքիավելին: Խռովարարներն իրենք ցանեցին ապագա պարտության սերմերը անգամ բանակում և իրենց ցանքը ջրեցին ժողովրդի արյամբ:

## ՀԵՂԱՇՐՋՄԱՆ ՆՊԱՏԱԿՆԵՐԻ ԵՎ ԲՆՈՒՅԹԻ ՄԱՍԻՆ

Պուտչիստները չեն կարող անվերջ հանդես գալ որպես իմպերիալիզմի պրետորյանական գվարդիա, որպես շահագործողների ենիչերիներ երկրում: 1967 թ. ապրիլի 21-ին հույն գնդապետների կատարած պետական հեղաշրջումը խարդախության ու դավաճանության արգասիք էր: Չիլիի հեղաշրջումը չի զիջում դրան: Երկու պուտչերն էլ նման են իրար, քանի որ երկուսին էլ ղեկավարել է միևնույն ձեռքը: Եթե Հունաստանում իրականացվում էր ինչ-որ մի «արտասահմանյան կոմիտեի» կողմից մշակված «Պրոմեթևս» պլանը, ապա մեր երկրում կիրառվեց նույն կենտրոնի կողմից նախապատրաստված «Կենտավր» պլանը[2]:

Ակնհայտ են դառնում հեղաշրջման նպատակները, չնայած դրանք խաբեբայական ֆրազներով, նացիոնալիզմի թզենու տերևով քողարկելու բոլոր փորձերին. հեղաշրջման ոգեշնչողներն ու կատարողները խոստացան ապազփորձերին: Խռովարարներն ամենևին գայնացնել երկրի հիմնական հարստությունները: Խռովարարներն ամենևին էլ «ազգի արժեքները պահպանողներն ու պաշտպանները» չեն, նրա ճակատագրի առևտրականներն են նրանք, այդ ազգի դավաճանները: Բայց չէ՞ որ ժողովուրդն է հայրենիքի, ազգի հիմնական ողնաշարը:

Չիլիի իրադարձությունները պարզապես հակակոմունիստական, հակամարքսիստական հեղաշրջում չէին: Դրա նախաձեռնողները, մրցակցելով օսաական գեներալների հետ, ձգտում են վերջ տալ դեմոկրատիայի բոլոր ձևերին, վերջ տալ այն բոլոր իրավունքներին, որ ժողովուրդն ու երկիրը նվաճել են անկախության 163 տարիների ընթացքում և դարձրել Չիլիի հասարակության սեփականությունը:

Խունտան արդեն հիասթափեցրել է բուրժուազիային, միջին խավերին: Թունավորված պուտչիստական պրոպագանդայի քարոզած ատելությամբ, նրանք սկզբում իրենց ծառայություններն առաջարկեցին ֆաշիստական հեղաշրջման նախաձեռնողներին, աջակցեցին նրան պառլամենտի և քաղաքական կուսակցությունների միջոցով: Առավել մեծ եղավ նրանց հիասթափությունը, երբ պուտչից երկու օր հետո ցրվեց կոնգրեսը, չնայած, որ նրա մե-

---

[1] ԱՄՆ-ի շտաբների պետերի կոմիտեի նախագահ, ադմիրալ Թ. Հ. Մուրերը ս. թ. մայիսի 22-ին Պուերտո-Ռիկոյում հայտարարեց, որ իր երկիրը ժամանակակից ինդուստրիալ հասարակության համար անհրաժեշտ նյութերի 74 հիմնական տեսակներից 22-ով կախված է արտասահմանյան երկրներից: Դրանց թվում է և պղինձը: Նա ավելացրեց, որ ԱՄՆ-ի քաղաքական, տնտեսական և ռազմական ստրատեգիայի նպատակն է՝ ապահովել երկրի մատակարարումը այդ նյութերով:

[2] Ի դեպ նշենք, որ Չիլիի հեղաշրջման քաղաքական նպատակներից մեկն էլ Արգենտինայի մեկուսացումն է:

ծամասնությունը կազմում էին ագրեսիվ ռեակցիոն տարրերը: Գեներալները սենյոր Ֆրեյին[1] տեղեկացնում էին, որ իրենք չեն էլ մտածում նրան հանձնել իշխանությունը և կամ ընտրություններ անցկացնել մոտ ապագայում: Դրանով իսկ խունտան ցուցադրում էր ո՛չ միայն իր ծայրահեղ հակակոմունիստական, հակամարքսիստական էությունը, այլև հակաժողովրդական, հակաազգային բնույթը: Նա ցույց տվեց, որ մտադիր է լկտիաբար, ուղղակի ձգտել հաստատելու ֆաշիստական տիպի ռազմական դիկտատուրա, որի ժամանակ քաղաքական գործիչները պետք է խաղան միայն հասարակ զինվորների դեր: Գուցե ապագայում նրանց ծառայությունները պետք կգան Բրազիլիայի ԱՐԵՆԱ-ի տիպի մարիոնետային կուսակցություն ստեղծելու համար: Իհարկե, այն դեմոքրիստոնյաները, որոնք կանգնած են ժողովրդի կողմը, հանդես են գալիս խունտայի, դեմոքրիստոնեական ղեկավարության կործանարար կույր քաղաքականության դեմ, ղեկավարություն, որն այնպես ջանասիրաբար դաստիարակում է պուտչիստ գիշատիչներին:

Խունտան մտադիր է հրատարակել ֆաշիստական տիպի սահմանադրություն, ընդօրինակելով բրազիլական «գորիլլաների», այսպես կոչված՝ ինստիտուցիոն ակտերը: Ընդօրինակելով Մուսոլինիի կորպորատիվիզմը, իբրև զենք օգտագործելով ֆրանկիզմի չարանենգ փորձը, նա սարքեց արյունալի սպանդ, հետևելով Ջակարտայի գեներալների օրինակին: Չիլիական ֆաշիստներն այդ բանը նախապես խոստացել էին ժողովրդին՝ Սանտյագոյի տների պատերին գրած իրենց լոզունգներով: Նրանց նպատակն է՝ աշխատավորներին զրկել արդյունաբերական ձեռնարկությունների հանրային սեփականության իրավունքից, որոնք նրանք մտադիր են վերադարձնել օտարերկրյա և չիլիական մոնոպոլիաներին: Բնական է, որ այդ կհարուցի պրոլետարիատի դիմադրությունը: Խունտայի մյուս նպատակն է՝ գյուղացիներին քշել այն հողերից, որ նրանց տվել է Ժողովրդական միասնությունը: Պուտչիստների համար դժվար կլինի հասնել այդ նպատակին:

Նրանց կեղծավորությունն անսահման է: Իրենց բարոյախոսության մեջ ռեակցիոն տարտյուֆները ծիծաղելի են: Պատանիներին նրանք արգելում են երկար մազեր պահել, իսկ կանանց տաբատ հագնել, և հույս ունեն այդպիսով լուծել երկրի արմատական խնդիրները: Թեև Չիլիում տեղի է ունենում կատարյալ ողբերգություն (սպանված է Ալիենդեն, արյունալի սպանդ է սարքված ժողովրդի համար), նրա գլխավոր դերակատարները՝ դավադիր գեներալները, պիտանի են միայն կոմիկական կամ տրագիկոմիկական դերերի համար: Նրանք կհամոզվեն, որ ճշմարիտ է այն հայտնի սարկաստիկ ասույթը, թե սվինները կարող են շատ բանի պետք գալ, բայց ամենից քիչ՝ դրանց վրա նստելու համար: Չիլիական գեներալները դեռ ստիպված կլինեն ծանոթանալ այս ճշմարտությանը:

Նրանց լոզունգները, որ լայնորեն պրոպագանդում է «Մերկուրիո» թերթը (այն ո՛չ միայն իմպերիալիստական մոնոպոլիաների խոսափողն ու մունետիկն է, այլև Չիլիի ազատության դեմ ոտնձգությունների ոգեշնչողը), հետևյալներն են. ճնշել քաղաքացիական ու զինվորական ամեն մի օպոզիցիա, բռնությունների մեխանիզմի, հրի ու արյան երկաթյա ռեժիմի օգնությամբ ամրանալ իշխանության բարձրագույն օրգաններում, ցրել քաղաքական բոլոր կուսակցությունները:

Խռովարարները ձգտում են զրկել մասսաներին ղեկավարությունից, ճնշել նրանց տեռորի օգնությամբ: Բայց սխալվեցին: Ժողովրդական միասնության կուսակցությունների ղեկավարությունը գլխավորեց դիմադրությունը,

---

[1] *Մեծ է չիլիական դեմոքրիստոնյաների այս ղեկավարի մեղքը ժողովրդի հանդեպ։ Նա ամեն կերպ սաբոտաժի էր ենթարկում կարդինալ Ռաուլ Սիլվա Էնրիկեսի պահանջած դիալոգը, ձգտում էր ուղի բաց անել չիլիական պրոբլեմը լուծելու, ապահովելու համար փոփոխություններ՝ առանց քաղաքացիական պատերազմի, ազգային զոհաբերության և դեմոկրատական ինստիտուտների վերացման։*



ընդհատակում պայքարում է հանուն դեմոկրատիայի և ազատության: Հակադիկտատորական տրամադրություններով է համակված երկրի վիթխարի մեծամասնությունը, ներառյալ նաև միջին խավերը, որոնք նախքան հեղաշրջումը քննադատում էին ժողովրդական կառավարությունը, բացասաբար վերաբերվում դրան: Իսկ այժմ, սթափվելով, նրանցից շատերն ափսոսում են իրենց կուրության համար:

Պուտչիստները փորձում են բնակչությանը, զինված ուժերին, ամենից առաջ՝ զինվորներին, ստիպել ենթարկվելու հրամանին՝ «Չդատել»: Նրանք ցանկանում են ստեղծել կույր հնազանդության մթնոլորտ, երկիրը վերածել բանտի, այդ ամենն սկսելով զորանոցները բանտերի վերածելուց: Նրանք ձգտում են զինվորների «ուղեղները լվանալ»՝ մեկուսացնելով նրանց հասարակությունից, խլել նրանց ընտանիքների գրկից, հավատացնելով, թե ժողովուրդն իրենց թշնամին է: Բայց մի՞թե կարելի է հասնել այդ նպատակին, եթե ժողովուրդը զինվորի հայրն է, եղբայրը, որդին և, վերջապես, հենց ինքը:

Հաշվի առնելով դաժան փորձը, հիշեցնելով այն ակնհայտ ճշմարտությունը, որ, եթե ժողովուրդն ուզում է լինել իր բախտի տերը, նա անպայման պետք է ձգտի զինված ուժերի՝ կենսականորեն անհրաժեշտ դեմոկրատականացման: Ժողովուրդը չի կարող թշնամի լինել նրանց: Զինված ուժերի փիլիսոփայության հիմքում չպետք է դրվի գազանության տրամաբանությունը:

Ո՛չ ժողովրդին, ո՛չ զինվորներին չի կարելի զրկել մտածելու իրավունքից...

## ՄԻՇՏ ԼԵՆԻՆԸ

Պայքարի ամեն մի կտրուկ շրջադարձին մենք մշտապես դիմում ենք Լենինին: Չիլիում ստեղծված դրամատիկական իրադրության մեջ առանձին ուժով են հնչում նրա «Պետություն և հեղափոխություն» աշխատության մտքերը: Մենք չպետք է մոռանանք դասակարգային անտագոնիզմների հետևանքով կյանքի կոչված ինստիտուտների դասակարգային բնույթը: Չիլիի իրադարձությունները հաստատում են Լենինի այն խոսքերը, թե «Ճնշող դասակարգերը, մեծ հեղափոխականների կենդանության ժամանակ, նրանց մշտական հետապնդումներով են հատուցել, նրանց ուսմունքին վերաբերվել են ամենավայրենի չարությամբ, ամենակատաղի ատելությամբ, ստի ու զրպարտության ամենաանսանձ արշավանքով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 494): Հենց այդպես վարվեց չիլիական ռեակցիան Ալիենդեի նկատմամբ, բոլոր հեղափոխականների նկատմամբ, մարտնչող ժողովրդի նկատմամբ:

Դաժան փորձությունների ժամին նրանք իրենց արիությամբ գրեցին մեր պատմության լավագույն էջերը: Հեղափոխականները գիտեն, որ իմպերիալիզմն ու բուրժուազիան, ձգտելով պահպանել իրենց տիրապետությունը, ինչպես և վերահսկողությունը արտադրության միջոցների նկատմամբ, առանց տատանվելու արյան մեջ կխեղդեն ամեն մի ձգտում դեմոկրատիայի, ազատության ու մարդկային իրավունքների նկատմամբ: Դրա համար նրանք կգործադրեն իրենց տրամադրության տակ եղած տնտեսական իշխանությունը, ողջ պետական ապարատը: Չիլիում բուրժուազիան վերահսկում էր պառլամենտին, դատարանին, բյուրոկրատական ապարատին, տեղական ադմինիստրացիային, մամուլի, մասսայական ինֆորմացիայի մեծ մասին:

Ժողովրդական շարժումը պետք է քննության առնի ստացված դասերը, ուսումնասիրի և յուրացնի, նաև ինքնաքննադատաբար գնահատի իր գործունեությունը: Ընդսմին պայքարը չպետք է դադարի ոչ մի րոպե: Լենինյան այն ցուցումները, որ ժողովուրդը դեմոկրատիայի օրինական արտահայտիչն է, և որ նա պետք է լրիվ վերահսկողություն սահմանի ամբողջ պետության նկատմամբ, անհերքելի ճշմարտություն է:

Չիլիի փորձի կապակցությամբ աշխարհի ժողովուրդների առջև ծառանում են բազում հարցեր: Մեր ժողովուրդը ևս պետք է խորապես վերլուծի

իր ապրած ողբերգությունը, քննության առնի իրադարձությունների պատճառները, նշի իր իրավունքները եւ նվաճելու հեռանկարները:

Շատերը հարցնում են՝ Չիլիում նո՞ւյնն է մնում արդյոք հեղափոխության ուղին: Մեր կարծիքով, նրա էությունը մնում է ուժի մեջ: Առաջվա նման մենք գտնում ենք, որ խունտայի դեմ հասարակության մեծագույն մասի դաշինքը միայն (պոտենցիալ կերպով այդպիսի հնարավորություն ներկայումս կա) կարող է վերջ դնել մեր պատմության մեջ աննախադեպ մռայլ, դառը ժամանակաշրջանին: Մենք, անշուշտ, պետք է հաղթահարենք մասնատվածությունը, թուլությունը, եռանդուն կերպով ուղղենք թույլ տված սխալները: «Կոմունիստների պարտականությունն է,— ասում էր Վլադիմիր Իլյիչը,— լռության չմատնել իրենց շարժման թուլությունները, այլ բացահայտորեն քննադատել դրանք, որպեսզի շուտով և արմատականորեն ազատվեն դրանցից» (Երկեր, հ. 31, էջ 216):

Անհրաժեշտ է ուսումնասիրել ժողովրդական կառավարության իշխանության՝ երեք տարիների ընթացքում կուտակված դրական և բացասական փորձը: Այդ տարիները մեր երկրի պատմության մեջ կմտնեն որպես առավել ստեղծագործական ու նշանակալի ժամանակաշրջան, որպես մի նոր դարաշրջան, երբ կատարվեցին կառուցվածքային արմատական փոփոխություններ, վերացվեց օտարերկրյա իմպերիալիզմի, տեղական ֆինանսական, արդյունաբերական օլիգարխիայի և լատիֆունդիզմի տիրապետությունը երկրի էկոնոմիկայում: Այդ պատճառով էլ նրանք որոշեցին վերջ տալ ժողովրդական կառավարությանը, մոռանալով իրենց շաղակրատությունները ազատության ու դեմոկրատիայի մասին: Երբ նրանց դիրքերին վտանգ է սպառնում, նրանք (արդեն որերորդ անգամ) դիմում են ֆաշիզմին:

Մենք գտնում ենք, որ ուժի մեջ է մնում ժողովրդական զանգվածների հեղափոխության կոնցեպցիան, որին մասնակցում են և՛ մարքսիստները, և՛ քրիստոնյաները, և՛ ռացիոնալիստները. բոլոր նրանք, ովքեր հանդես են գալիս հանուն սոցիալական փոփոխությունների և հեղափոխության: Ընդսմին համոզված ենք, որ ֆաշիզմին, նրա հայր իմպերիալիզմին և մեղսակից ներքին ռեակցիային հաղթելու համար անհրաժեշտ է դիալեկտիկական ճիշտ կապեր հաստատել առաջավոր կուսակցության և մասսաների միջև:

Անհաջողությունների պահերին, ինչպես սունկերը անձրևից հետո, երևան են գալիս թերահավատներ ու նվնվացողներ: Ռուսական առաջին հեղափոխությունից հետո Լենինը հակահարված տվեց նրանց և՛ քաղաքականապես, և՛ փիլիսոփայական առումով: Բանավիճելով Պլեխանովի հետ, նա պնդում էր, որ 1905 թվականի պարտությունը չի նշանակում, թե Ռուսաստանում հեղափոխական ժամանակաշրջանն ավարտվել է, և կոչ էր անում պատրաստվել նորանոր մարտերի (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 10, էջ 135, 137—138): Չիլիում սկսվում է հեղափոխական, հայրենասիրական պայքարի նոր, ֆաշիստական դիկտատուրային ազգային դիմադրություն ցույց տալու փուլը: Մենք հավատացած ենք, որ կակտիվանան ժողովրդի մեծամասնության ուժերը, մասսաների եռանդն ու նախաձեռնությունը կծավալվեն բոլոր մարզերում, կպայքարեն տարբեր դիրքերից և ամենատարբեր ճակատներում:

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

Ադմիրալ Տորիբիո Մերինոն (պուտչիստների գլուխ կանգնած քառյակից մեկը) խոստովանել է, որ հեղաշրջման մասին միտքը տեսության բնագավառից կոնկրետ հնարավորությունների բնագավառն անցավ մարտի վերջին կամ ապրիլի սկզբին, պառլամենտական ընտրություններից հետո: Մեծացավ ժողովրդական միասնության օգտին տրված ձայների թիվը, և դավադիրները համոզվեցին, որ նրանց երբեք չի հաջողվի ժողովրդից իշխանությունը խլել դեմոկրատական ճանապարհով: Ուստի և նրանք արագացրին հեղաշրջումը: Նման հայտարքը մեղադրական ակտ է ռեակցիոն բուրժուազիայի դեմ, որը հրաժարվում է ամեն մի օրինականությունից, երբ տեսնում է, որ իր արտոնությունները վտանգի տակ են:



Այժմ, երբ կործանվել, թշնամու կողմից ոտնահարվել են դեմոկրատական և մարդկային բոլոր արժեքները (որոնք, բուրժուազիայի պնդմամբ իբր ինքը պահպանել է ավելի քան հարյուր տարի), դրանք պահպանել կարող է միայն դրանց օրինական պաշտպանը՝ ժողովուրդը: Մենք դեմ ենք եղել հեղաշրջումների և քաղաքացիական պատերազմի և չենք ցանկանում բռնություն հանուն բռնության: Բայց ժողովուրդը պետք է պաշտպանվի սանձարձակ ֆաշիզմից, մարդկային արյան ծարավի ավանտյուրիստներից: Եվ նա կպաշտպանվի, մասսայական, միավորիչ պայքար կմղի այն ուղղություններում, որ նրան թելադրում են պատմությունը և իրականությունը: Մեր կուրսը միշտ եղել է, կա և կլինի մարտական գիծը, մասսաների վրա, ժողովրդի մեծամասնության վրա հենվող պայքարի գիծը: Այդ կուրսի հիմքն է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների միասնությունը:

Հաշվի առնելով, որ միջին խավերը վերջին երեք տարում ողբերգականորեն չըմբռնեցին մեր ստրատեգիան, անհրաժեշտ է լայնորեն պարզաբանել այն, դրանով իսկ ընդլայնելով հայրենասիրական, դեմոկրատական հակաֆաշիստական ճակատը, ճկունորեն զուգակցելով պայքարի ձևերը:

Խոսելով միասնության մասին, հարկավոր է նկատի ունենալ, որ հեղաշրջումից հետո անցած ժամանակամիջոցում քաղաքական ուժերի տեղաբաշխման մեջ տեղի ունեցան զգալի փոփոխություններ, որոնց հիմնական բովանդակությունն է պուտչիստների հարաճուն մեկուսացումը Չիլիում և նրա սահմաններից դուրս:

Մենք հանդես ենք գալիս ոչ թե բոլոր զինվորների ու սպաների, այլ ֆաշիզմի դեմ՝ լինի այն զինվորական համազգեստով, թե քաղաքացիական: Զինված ուժերում ժողովրդին և մարդուն հարգող դեմոկրատական տարրերը պետք է լինեն ժողովրդի և հայրենիքի կողքին, աշխատավորների, հերոսական ուսանողության, բանվորական երիտասարդության, բոլոր հայրենասերների կողքին:

Ալիենդեի մահը, ժողովրդի ժամանակավոր պարտությունը չջնջեցին Ժողովրդական միասնության ծրագիրը: Այն պահպանում է իր գործունեությունը, քանի որ համապատասխանում է մեր հասարակության արմատական պահանջներին: Եվ այսպես, հաշվի առնելով դրամատիկական փորձը, չիլիացիները պետք է լրջախոհ գործեն հասունացած հեղափոխության համար մղվող պայքարում: Աշխատավորները թույլ չեն տա, որ ֆաշիզմը իշխի երկրում: Ժողովուրդն առայժմ նահանջել է, բայց նա պատրաստվում է համապատասխան պահին վճռական հարված հասցնելու համար:

Երկրագնդի ժողովուրդները դատապարտում են ֆաշիզմի ոճրագործությունները Չիլիում, հանդես գալիս դեմոկրատների պաշտպանությամբ: Ամենաանհետաձգելի գործն է՝ հասնել արյունալի սպանդի, մահվան խրախճանքի դադարեցման, բացել համակենտրոնացման ճամբարների ու բանտերի դռները, թույլ չտալ ֆիզիկական հաշվեհարդար Լուիս Կորվալանի հետ, դադարեցնել Չիլիի բոլոր հայրենասերների հալածանքները, բռնությունները նրանց նկատմամբ: Կանգնեցնել մարդասպանների ձեռքը— այս է ամբողջ մարդկության պահանջը:

Անդերի և Խաղաղ օվկիանոսի միջև ծավալվում է նոր դիմադրությունը, ստեղծվում է միասնական կազմակերպություն՝ պայքարը շարունակելու նպատակով: Նրա կողմն են մեր երկրի և ամբողջ աշխարհի բնակչության մեծամասնության համերաշխությունն ու համակրանքը: Նրա կողմն է Սովետական Միության աջակցությունը: Ինչպես ասաց ընկ. Բրեժնևը Բուլղարիայում «Ունիվերսիադ»-ի պալատում կազմակերպված միտինգում, «այս օրերին սովետական կոմունիստները և ամբողջ սովետական ժողովուրդը առանձին ուժով են արտահայտում Չիլիի աշխատավորների հետ դասակարգային համերաշխության զգացմունքները և խորին վրդովմունքը՝ չիլիական ռեակցիայի արյունալի ոճրագործությունների առթիվ»: Չիլիական դիմադրության կողմն են նաև սոցիալիստական մյուս պետությունները, մյուս ժողովուրդները, բարի կամքի տեր բոլոր մարդիկ, բոլոր ազնիվ մարդիկ, որոնք երբեք չեն համաձայնի, որ մարդասպանությունը դառնա երկրի կառավարման լավագույն միջոցը:

«Проблемы мира и социализма», № 11, 1973.

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ




# ՏԻԵԶԵՐԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

**Գ. Ա. ԻՎԱՆՅԱՆ**
Լենինգրադի պետական համալսարանի դասախոս

### (ԿՈՆԳՐԵՍԻ ԴԱՀԼԻՃԻՑ)

Խորիմաստ է 1973 թ. հոկտեմբերի 8-ից մինչև 13-ը Բաքվում տեղի ունեցած՝ աստղագնացության XXIV միջազգային կոնգրեսի խորհրդանշանը, ուր պատկերված է Երկրագնդի ֆոնի վրա սավառնող Երկրի առաջին սովետական արբանյակը: Կոնգրեսից 16 տարի առաջ այդ արբանյակի ազդանշաններն ավետեցին տիեզերական դարաշրջանի սկիզբը:

Այդ կարճ ժամանակամիջոցում տիեզերագնացությունը դարձավ ժամանակակից գիտության ու տեխնիկայի առաջավոր ու կարևորագույն բնագավառներից մեկը, որը բնութագրվում է զարգացման բացառիկ արագ տեմպերով, գիտական ու պրակտիկ պատկառազդու արդյունքներով, մեր կյանքի շատ կողմերի վրա զգալի ազդեցությամբ: Այս առումով պատահական չէր նաև կոնգրեսի նշանաբանը՝ «Տիեզերական հետազոտությունները, ազդեցությունը գիտության և տեխնիկայի վրա»:

Միջազգային այս կոնգրեսը կազմակերպել էր Աստղագնացության միջազգային ֆեդերացիան (ԱՄՖ), որի կազմում այժմ կան 36 տարբեր երկրների 56 գիտական կազմակերպություններ: Հիշենք, որ 1950 թ., երբ հիմնադրվեց ԱՄՖ-ն, այն ուներ միայն 11 անդամ: Ամենամյա միջազգային կոնգրեսները սովորաբար հրավիրվում են տարբեր երկրներում:

Բաքվի կոնգրեսին մասնակցեցին աշխարհի 29 երկրների ավելի քան 1500 գիտնականներ. նրանք լսեցին ու քննարկեցին տիեզերական տարածության հետազոտման և յուրացման բազմազան պրոբլեմներին նվիրված ավելի քան 350 զեկուցում (126-ը ներկայացրել էին ՍՍՀՄ-ի, 100-ը՝ ԱՄՆ-ի, մոտ 40-ը՝ Ֆրանսիայի գիտնականները): Հետաքրքրական էին նաև տիեզերական հետազոտությունները միայն վերջերս սկսած երկրների ներկայացուցիչների գիտական հաղորդումները:

Կոնգրեսի նիստերին մասնակցում էին ավելի քան 800 սովետական գիտնականներ, այդ թվում՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի 15 ակադեմիկոսներ և 62 թղթակից-անդամներ: Ամերիկյան պատվիրակությունը բաղկացած էր 200 հոգուց, որի կազմում կային շատ նշանավոր գիտնականներ: Այդ պատվիրակությունը գլխավորում էր օդագնացության և աստղագնացության ամերիկյան ինստիտուտի պրեզիդենտ, պրոֆեսոր Հոլտ Էշլին:

Կոնգրեսին մասնակցում էին նաև ՍՍՀՄ տիեզերագնաց-օդաչուներ, Սովետական Միության կրկնակի հերոսներ Գ. Տ. Բերեգովոյը և Վ. Ա. Շատալովը, Սովետական Միության հերոսներ, բժշկական գիտությունների թեկնածու Բ. Բ. Եգորովը, տեխնիկական գիտությունների թեկնածու Վ. Ի. Սևաստյանովը, ամերիկացի աստղագնաց Թոմաս Սթաֆորդը: Նա կլինի «Ապոլոնի» հրամանատարը 1975 թ. կայանալիք սովետա-ամերիկյան համատեղ թռիչքում:

Կոնգրեսը բացեց կազմկոմիտեի նախագահ, ակադեմիկոս Լ. Ի. Սեդովը: Բացահայտելով մեր մոլորակի մարդկանց կյանքի համար տիեզերական հետազոտությունների բացառիկ նշանակությունը՝ ակադեմիկոս Սեդովն այն համոզմունքն է հայտնում, որ տիեզերական հետազոտությունները նպաստում են երկրների բարեկամական համագործակցության զարգացմանը, երկրագնդի բոլոր ժողովուրդների բարեկեցությանը, հերոսական մեծ սխրանքների նկատմամբ մարդկանց հոգևոր ձգտումների իրականացմանը:

Կոնգրեսում հրապարակվեց ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, ակադեմիկոս Մ. Վ. Կելդիշի ելույթը, որը նվիրված էր մարդկության կյանքում տիեզերական հետազոտությունների հարաճուն նշանակությանը: Ընդամենը մեկուկես տասնամյակի ընթացքում, ասված է ելույթում,— տիեզերական հետազոտությունների միջոցով մենք շատ բան իմացանք վերին մթնոլորտի, Երկրի մագնիսոլորտի, Արեգակի, ինչպես և արեգակնային համակարգության մեջ և Երկրի վրա տեղի ունեցող պրոցեսների վրա Արեգակի ազդեցության վերաբերյալ:

Այնուհետև ելույթում նա անդրադարձել էր Լուսնի և մոլորակների, հատկապես Մարսի ու Վեներայի հետազոտություններին, որոնց շնորհիվ ստացվել է մեծ ու սկզբունքորեն նոր ինֆորմացիա, որն անկարելի էր աստղադիտարկումների հին եղանակներով:

Տիեզերական տեխնիկայի կիրառությունը կապի, օդերևութաբանության, Երկրի բնական ռեսուրսների ուսումնասիրության և շատ այլ բնագավառներում,— ասված է ելույթում,— այսօր իսկ տնտեսական վիթխարի օգուտ է տալիս: Հրթիռային-տիեզերական տեխնիկայի զարգացման փորձը լայնորեն կիրառվում է մեքենաշինության, սարքաշինության բնագավառում, տրանսպորտում և նույնիսկ բժշկական պրակտիկայում:

Կոնգրեսի հանդիսավոր բացումից հետո կայացավ առաջին պլենար նիստը, որի թեման կրկնում էր կոնգրեսի նշանաբանը՝ Տիեզերական հետազոտությունները. ազդեցությունը գիտության ու տեխնիկայի վրա: Նիստն անցավ Կալիֆոռնիայի տեխնոլոգիական ինստիտուտի հրթիռային շարժիչների լաբորատորիայի պրոֆեսոր Ու. Պիկերինգի (ԱՄՆ) նախագահությամբ:

ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Ս. Ն. Վեռնովի Առաջադիմությունը միջմոլորակային ֆիզիկայի ճանաչման բնագավառում զեկուցումը նվիրված էր երկրամերձ և միջմոլորակային տիեզերական տարածության հատկությունների վերջին ուսումնասիրություններին: Զեկուցողը հայտնեց, որ վերջերս Երկրի արտաքին ճառագայթային գոտուց ավելի հեռու հայտնաբերվել է, այսպես կոչված, «ճառագայթման ոչ կայուն» գոտի, որտեղ սովետական «Էլեկտրոն» սերիայի արբանյակները գրանցել են ավելի քան 150 հազար էլեկտրոնվոլտ էներգիա ունեցող էլեկտրոնների կուտակում: Գիտնականի կարծիքով Երկրի մագնիսական դաշտում արագացված այդ էլեկտրոնները հետագայում թափանցում են Երկրի արտաքին ճառագայթային գոտին:

Պրոֆեսոր Վ. Էշլեմանը (ԱՄՆ) Հեղաշրջում մոլորակային աստղագիտության մեջ թեմայով իր զեկուցման մեջ բարձր գնահատեց Սովետական Միությունում այդ ասպարեզում տարվող աշխատանքները: Անդրադառնալով Մարսի վերաբերյալ վերջին տարիներին ստացված տվյալներին՝ նա նշեց այդ մոլորակի և Լուսնի նմանությունը, հայտնեց այն կարծիքը, թե ամենայն հավանականությամբ, այդ մոլորակի վրա կյանքի առկայությունը բացառված է: Զեկուցողը բերեց Վեներայի ռադարային հետազոտությունների՝ ամերիկյան գիտնականների ստացած տվյալները և այն ենթադրությունը հայտնեց, թե Մարսի ու Վեներայի, ինչպես և Երկրի ռելիեֆների ձևավորմանը մասնակցել է ջուրը:

Սովետական Միությունում Արեգակի նորագույն տիեզերական ապարատներով հետազոտություններին էր նվիրված ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր Ս. Լ. Մանդելշտամի՝ Նորը Արեգակի ֆիզիկայում զեկուցումը:

Ակադեմիկոս Բ. Ե. Պատոնի (ՍՍՀՄ) զեկուցման մեջ էլեկտրազոդման օրինակով ցույց տրվեց տիեզերական տեխնոլոգիայի աճող ազդեցությունը գիտա-տեխնիկական առաջադիմության վրա: Կասկածից վեր է, նշեց զեկուցողը, որ ապագայում կպահանջվեն տիեզերքում մետաղների տաքացման, հալման ու զոդման հետ կապված տեխնոլոգիական զանազան գործողություններ: Պատահական չէ, որ այդ մարզի աշխատանքներին խոշոր նշանակություն են տալիս և՛ մեզ մոտ, և՛ ԱՄՆ-ում:

Ավտոմատիկայի և , մասնավորապես, կառավարման տեսության զարգացումը մեծ չափով խթանեց Լուսնի հետազոտության ավտոմատ սարքերի ստեղծումը Սովետական Միությունում: Այդ հարցերին էր նվիրված ակա-

դեմիկոս Բ. Ն. Պետրովի և տեխնիկական գիտությունների դոկտոր Վ. Ե. Իշևսկու (ՍՍՀՄ) զեկուցումը: Պլենար նիստի վերջին զեկուցումը, որը ներկայացրել էին սովետական գիտնականներ, պրոֆեսորներ Ն. Մ. Ռուդնին և Ա. Դ. Վոսկրեսենսկին, նվիրված էր տիեզերական բժշկության և առողջապահության փոխադարձ կապերի բացահայտմանը:

Կոնգրեսի առաջին օրը՝ հոկտեմբերի 8-ին, անցկացվեց նաև տիեզերական իրավունքին նվիրված XVI կոլոկվիումի առաջին նիստը (նախագահ, իրավաբանական գիտությունների դոկտոր Գ. Պ. Ժուկով— ՍՍՀՄ), որը կազմակերպել էր տիեզերական իրավունքի միջազգային ինստիտուտը: Նույն օրը դերասանի տանը կայացավ Անվտանգությունը հրթիռային տեխնիկայի ասպարեզում պատանեկան գիտափորձերում թեմայով գիտաժողովը, որին մասնակցում էին նաև տարբեր երկրներից եկած ուսանողներ:

Բաքվի աստղագնացության միջազգային կոնգրեսում, կարելի է ասել, քննարկվեցին տիեզերական հետազոտությունների գրեթե բոլոր կարևորագույն հարցերը: Բավական է նշել, որ կոնգրեսի օրերին տեղի ունեցան սիմպոզիումներ՝ տիեզերական իրավունքի դասավանդման, տիեզերքում հարաբերականության տեսության հարցերի, տիեզերական տարածությունում ապահովության ու փրկության, աստղագնացության պատմության, տիեզերական հետազոտությունների արժեքի իջեցման, արտաերկրային քաղաքակրթությունների վերաբերյալ. հրավիրվեցին կոլոկվիումներ՝ նվիրված միջազգային տիեզերական իրավունքի և ընդհանուր միջազգային իրավունքի, արբանյակների միջոցով Երկրի բնական ռեսուրսների, Լուսնի և երկրային մյուս մարմինների ուսումնասիրման, ուղեծրային տիեզերական կայանների ստեղծման իրավաբանական հարցերին, դիսկուսիաներ՝ Մարսի միջազգային լաբորատորիայի և միջազգային ուղեծրակայանի ստեղծման, մթնոլորտի վերին շերտերի մասին և այլն:

Բացի սիմպոզիումներից, կոլոկվիումներից, դիսկուսիաներից և սեկցիոն նիստերից կոնգրեսի օրերին երկու անգամ հրավիրվեցին ՄԱՖ-ի գլխավոր անսամբլեաներ, որոնցից վերջինի ժամանակ ընտրվեց ՄԱՖ-ի բյուրոյի նոր կազմ: ՄԱՖ-ի պրեզիդենտ վերընտրվեց իտալացի գիտնական, Նեապոլի համալսարանի պրոֆեսոր Լուիջի Նապոլիտանոն. փոխպրեզիդենտներ ընտրվեցին Մ. Բարերը (Ֆրանսիա), Լ. Ջաֆեն (ԱՄՆ), Լ. Ի. Սեդովը (ՍՍՀՄ), Վ. Ֆիշդանը (Լեհաստան): Հրավիրվեց նաև Աստղագնացության միջազգային ակադեմիայի ընդհանուր ժողով: Ակադեմիայի պրեզիդենտ վերընտրվեց ամերիկյան ականավոր գիտնական, «Ապոլոն» տիեզերանավերի կառավարման ու նավարկության սիստեմի առաջատար կոնստրուկտոր և ստեղծող, Մասաչուսետի համալսարանի պրոֆեսոր Չարլզ Ստարկ Դրեյփերը: Կոնգրեսի երիտասարդ մասնակիցները՝ տարբեր երկրների տասնյակ ուսանողներ ու երիտասարդ գիտաշխատողներ, տիեզերական հետազոտություններին նվիրված զեկուցումներով հանդես եկան ՄԱՖ-ի ուսանողական միջազգային համաժողովի նիստերում:

Ինչպես նշել ենք վերևում, ՄԱՖ-ի Բաքվի աստղագնացության միջազգային կոնգրեսում լսված զեկուցումների թիվը հասնում է 350-ի: Պարզ է, որ ամսագրային մի հոդվածի սահմաններում անհնար է պատմել դրանցում արծարծված բոլոր հարցերի մասին, մանավանդ որ զեկուցումները, որպես կանոն, նվիրված էին ո՛չ միայն արդեն ձեռք բերված արդյունքներին, այլ նաև տվյալ ուղղությամբ առաջիկայում նախատեսվող աշխատանքներին: Ստորև մենք կպատմենք տիեզերական հետազոտությունների միայն մի քանի բնագավառներում վերջերս ստացված արդյունքների մասին, որոնք ներկայացվել էին Բաքվի կոնգրեսում:

Բիոտիեզերագնացությունը տիեզերական հետազոտությունների կարևորագույն բնագավառներից մեկն է և, պատահական չէ, որ կոնգրեսի ծրագրում այն զգալի տեղ էր զբաղեցնում: Ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում, բիոտիեզերագնացության զարգացումը,— իր ելույթում ասաց ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից- անդամ, ՍՍՀՄ առողջապահության մինիստրության բժշկա-կենսաբանական պրոբլեմների ինստիտուտի դիրեկտոր Օ. Գ. Գազենկոն,— ընթանում է տարբեր ուղղություններով: Այստեղ գլխավորն է՝ ապահովել, թռիչքների ժամանակ, մարդու երկարատև մնալը տիեզերքում: Այդ խնդիրը լուծելու համար անհրաժեշտ է, առաջին հերթին, տիեզերական թռիչքում ճիշտ կազմակերպել մարդու անմիջական շրջապատը, ստեղծել օպտիմալ գազային միջավայր, սնունդ, ջրապահովում, մկանային բեռնվածություն և այլն:

Բիոտիեզերագնացության սեկցիայի հատուկ նիստ էր նվիրված առողջապահության մեջ տիեզերական բժշկության նվաճումների գործնական կիրառմանը: Պրոֆեսոր Լ. Ի. Կակուրինի (ՍՍՀՄ) զեկուցման մեջ, մասնավորապես, խոսվեց սովորական կլինիկական պրակտիկայում այն միջոցների կիրառման արդյունքների մասին, որոնք մշակվել են թռիչքների ժամանակ՝ տիեզերագնացների օրգանիզ-



մում ջրի և աղի փոխանակության խանգարումները վերացնելու նպատակով:

Հյուստոնի բժշկական կոլեջի պրոֆեսոր Պոլ Թաքայսի (ԱՄՆ) զեկուցման մեջ բերված փաստերը վկայում են, որ թռիչքներում տիեզերագնացների առողջության վերահսկման համար ստեղծված զանազան սիստեմներ, մասնավորապես հաշվողական տեխնիկան, ախտորոշման սիստեմները, գրանցման զանազան սարքերը լայնորեն կկիրառվեն նաև կլինիկական պրակտիկայում:

Գիտա-տիեզերական հետազոտությունների ազգային կենտրոնի կենսաբան Ռենե Բոստը (Ֆրանսիա) իր զեկուցման մեջ, անդրադառնալով տիեզերքում մարդու գտնվելու ժամանակի պրոբլեմներին, մասնավորապես ասաց, որ դեռևս հնարավոր չէ որոշակի պատասխանել այդ հարցին, թեպետ այդ բնագավառի վերջին հաջողությունները, մանավանդ ամերիկյան «Սքայլեբ» ուղեծրակայանի անձնակազմերի բարեհաջող թռիչքների արդյունքները, վկայում են, որ տիեզերագնացը կարող է բավական երկար ժամանակ թռիչքում գտնվել:

Ժամանակակից տիեզերագնացության կարևորագույն պրոբլեմներից մեկը ուղեծրային այնպիսի լաբորատորիաների ստեղծումն է, ուր գիտնականները կարողանային աշխատել երկար ժամանակ և տիեզերքի ուսումնասիրման ու յուրացման տարբեր գիտափորձեր կատարել: Նման կայանների սպասարկումը պահանջում է ստեղծել հատուկ տրանսպորտային հրթիռանավեր, որոնք ի վիճակի լինեն կատարելու Երկիր—ուղեծիր—Երկիր բազմակի ուղերթեր: Դրանց օգնությամբ հնարավոր կլինի փոխել կայանների անձնակազմերը, գիտական ապարատները, տեխնիկական նյութերը, սննդամթերքը, սարքերը:

Նման փոխադրամիջոցների ստեղծման նախագծերի քննարկմանն էին նվիրված Տիեզերական տրանսպորտի պրոբլեմները սեկցիայի երկօրյա նիստերը:

Այդ ասպարեզի խոշոր մասնագետ, ամերիկյան նշանավոր գիտնական Ֆիլիպ Կալբերտսոնի կարծիքով այժմ մարդկությունը թևակոխում է տիեզերագնացության զարգացման հերթական՝ շատ կարևոր փուլը— տիեզերքի ուսումնասիրման ու յուրացման հիմնական աշխատանքով և Երկրի ուսումնասիրություններով այսուհետ կզբաղվեն մշտապես գործող ուղեծրակայանները: Դրանց սպասարկելու համար ժամանակակից, միայն մի անգամ գործող հրթիռա-տիեզերական կոմպլեքսներին կըփոխարինեն բազմակի գործող փոխադրանավեր, որոնք կկարողանան մեկնարկ վերցնել Երկրից՝ որպես հրթիռներ և տիեզերքից վերադառնալ՝ որպես պլանյորներ: Այդ հնարավորություն կընձեռի մեկ ապարատով 100 կամ ավելի մեկնարկներ իրագործելու դեպի ուղեծիր:

Նման հրթիռանավերի նմուշներից մեկը տիեզերական այն հրթիռանավն է, որն Ամերիկայում անվանել են «Շաթլ» (մաքոք): Այդ նախագիծը ևս քննարկվեց հիշատակված սեկցիայում:

Սեկցիոն նիստի մասնակիցներին խորապես հետաքրքրեց նաև ամերիկյան գիտնականներ Ռ. Սալկելդի և Ռ. Սկուլսկու միաստիճան հրթիռի նախագիծը, հրթիռ, որ կարող է փոխադրանավի դեր կատարել Երկիր—ուղեծիր—Երկիր տրասայում: Նրանց հաշվումներով, նըման թռիչքային ապարատի օգնությամբ բեռների առաքումն ավելի էժան կլինի, քան «Շաթլ» տիպի նավմաքոքով:

Հետաքրքրական էր նաև պրոֆեսոր Դևիդ Համֆրիեսի (Անգլիա) զեկուցումը. նրա կարծիքով ավելի նպատակահարմար է այնպիսի տրանսպորտային փոխադրանավի ստեղծումը, որը դառնա հրթիռա-տիեզերական կոմպլեքսի երրորդ աստիճանը:

Տիեզերական միջազգային ուղեծրային լաբորատորիայի վերաբերյալ դիսկուսիան հիմնականում նվիրված էր այդ պրոբլեմի հոգեբանաֆիզիոլոգիական կողմերին: Նրա մասնակիցների ուշադրության կենտրոնում էին՝ թռիչքում և, հատկապես, ինտերնացիոնալ կոլեկտիվի կազմում տիեզերագնացի աշխատունակության հարցերը:

Տիեզերական թռիչքների անընդհատ բարդացող խնդիրների առնչությամբ ուսումնասիրվող հիմնական պրոբլեմը,— ասաց բժշկական գիտությունների դոկտոր Լ. Ս. Խաչատրյանցը, — ունի երեք հիմնական ասպեկտ-տիեզերքի պայմաններում՝ մարդն ինչպես է ընկալում ինֆորմացիան, ինչպես է այն վերամշակում և ինչպես է այդ ինֆորմացիայի հիման վրա ընդունում այս կամ այն որոշումը: Պետք է նշել, որ տիեզերագնաց-օպերատորի ինֆորմացիա ստանալու հիմնական միջոցը տեսողությունն է: Լ. Ս. Խաչատրյանցը և նրա զեկուցման համահեղինակ, բժշկական գիտությունների թեկնածու Վ. Ա. Պոպովը հաղորդեցին, որ «Վոսխոդ» և «Սոյուզ» տիպի տիեզերանավերի թռիչքների ժամանակ մի խումբ տիեզերագնացների տեսողական ֆունկցիաների օբյեկտիվ հետազոտությունները հիմնավորում են այն, որ տևական անկշռելիությունը հիմնականում չի ազդում տեսողության սրության վրա: Մի շարք թռիչքների ընթացքում հետազոտվել են նաև տիեզերագնացների օպերատիվ հիշողությունը,

նրանց՝ արագ որոշում կայացնելու ունակությունը:

Ինտերնացիոնալ տիեզերական թռիչքի խմբային հոգեբանության պրոբլեմները զեկուցմամբ դիսկուսիայում հանդես եկան սովետական գիտնականներ Մ. Ա. Նովիկովը և Յու. Ա. Սենկևիչը: Նրանք մասամբ օգտագործել էին Անտարկտիդայում, զանազան գիտարշավներում և, մանավանդ, Տուր Հեյերդալի հետ Յուրի Սենկևիչի՝ պապիրուսային «Ռա» նավակով Անդրատլանտյան նավարկությունների ժամանակ ստացված տվյալները: Հեղինակների կարծիքով կուտակված փորձից կարելի է եզրակացնել, որ տևական թռիչքների ժամանակ, բազմազգ անձնակազմի հոգեբանական պրոբլեմները լուծելիս, անհրաժեշտ է հաշվի առնել անձնակազմի անդամների հոգեբանական ու սոցիալական համատեղելիությունը: Հատկապես մեծ ուշադրություն պետք է նվիրել ներխմբային կառավարման և անձնակազմի ղեկավարի ընտրության հարցերին:

Կոնգրեսի կենտրոնական հարցերից էին և մարդուն շրջապատող միջավայրի ու Երկրի բնական ռեսուրսների ուսումնասիրման մեջ տիեզերական ապարատների ու մեթոդների օգտագործման պրոբլեմները, որոնք քննարկվեցին ինչպես այդ սեկցիայի նիստերում, այնպես էլ Միավորված ազգերի կազմակերպության տիեզերական տեխնոլոգիայի կիրառությունը ազգային զարգացման համար թեմայով հրավիրված դիսկուսիայում: Այդ պրոբլեմների վերաբերյալ կարդացվեցին մի քանի տասնյակ զեկուցումներ ու հաղորդումներ:

Լենինգրադի պետական համալսարանի մթնոլորտի ֆիզիկայի ամբիոնում, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Կ. Յա. Կոնդրատևի ղեկավարությամբ, 1968 թվականից զգալի աշխատանքներ են տարվում մեր մոլորակի ուսումնասիրման մարզում՝ տիեզերական հեռաչափումների կիրառման տեսական ու գործնական շատ հարցերի լուծման նպատակով: Այդ ամբիոնի աշխատակիցներ Ա. Ա. Բուզնիկովի, Օ. Բ. Վասիլևի, Ալ. Ն. Գրիգորևի, Օ. Մ. Պոկրովսկու, Ա. Մ. Պոկրովսկու, Գ. Ա. Իվանյանի և նրանց համահեղինակների զեկուցումներում ներկայացվեցին ո՛չ միայն արդեն ձեռք բերված արդյունքները, այլև քննարկվեցին այն նորագույն ուղղություններն ու եղանակները, որոնք առաջիկայում կկիրառվեն տիեզերքից Երկիրը հետազոտելու գործում:

Այդ սեկցիայի առաջին՝ Մարդը և շրջապատող միջավայրը. տիեզերական հեռաչափումներ թեմայով զեկուցման մեջ, որով լենինգրադյան գիտնականների և սովետական տիեզերագնացներ Ա. Գ. Նիկոլաևի, Վ. Ա. Շատալովի, Ե. Վ. Խրունովի և Վ. Ի. Սևաստյանովի անունից հանդես եկավ Վ. Ի. Սևաստյանովը, հանգամանորեն բացահայտված էին տիեզերական հեռաչափումների առավելությունները մեր մոլորակի աշխարհագրական թաղանթի վերաբերյալ այլ եղանակներով ստացվող ինֆորմացիայի համեմատությամբ:

Այսօր արդեն,— ասաց Վ. Ի. Սևաստյանովը,— տիեզերական ապարատներից (օդերևութաբանական արբանյակներ, ավտոմատ միջմոլորակային կայաններ, կառավարող տիեզերանավեր և ուղեծրակայաններ) ստացվող ինֆորմացիան լայնորեն կիրառվում է օդերևութաբանության, մթնոլորտի ֆիզիկայի և կլիմայագիտության, երկրաբանության և գեոմորֆոլոգիայի, աշխարհագրության, քարտեզագրության, օվկիանոսագիտության, գյուղատնտեսության, հողագիտության և գիտության շատ այլ բնագավառներում:

Լենինգրադյան գիտնականների զեկուցումներում, մասնավորապես, քննարկվեցին տիեզերական հեռաչափումների համար սպեկտրի տիրույթների օպտիմալ ընտրության, մթնոլորտի փոխանցիկ դերի (Երկրի մակերևույթի և տիեզերական ապարատի միջև) ճիշտ գնահատման, Երկրի մակերևույթի՝ ինքնաթիռներից և տիեզերական ապարատներից համատեղ կատարվող գիտական առավել արդյունավետ դիտարկումների և դրանց անցկացման մեթոդիկայի, բնական ռեսուրսների արբանյակների ստեղծման հարցեր:

Ամերիկյան գիտնականներ Լ. Ջաֆեն, Ջ. Լեոնբլը, Ս. Ֆրիցը, Ս. Ֆրիդենը, Դ. Լանդգրեբը, Ջ. Կուկը ինչպես նաև Ա. Գրեգորին (Կանադա), իրենց զեկուցումներում վերլուծեցին 1972 թ. հուլիսին ԱՄՆ-ում արձակված բնական ռեսուրսների առաջին արբանյակից ընդունված տվյալները, որոնք լայնորեն ներդրվում են Երկրի մասին գիտությունների շատ բնագավառներում: Ցուցադրվեցին երկրաբանական, աշխարհագրական բազմաթիվ գոյացությունների լուսանկարներ, որոնք կա՛մ չեն պատկերվել առայժմ կազմված քարտեզների վրա, կա՛մ սխալ են պատկերվել: Ամերիկյան գիտնական Լ. Ջաֆեն, մասնավորապես, բնական ռեսուրսների արբանյակից ստացված լուսանկարների վրա, ցույց տվեց Ամազոն գետի միջին հոսանքի շրջանում գտնվող մինչ այդ աշխարհագրագետներին անհայտ հսկայական մի սարահարթ:

Եթե Բրազիլական կառավարությունը ժամանակին ունենար նման լուսանկարներ, ապա Բրազիլիայով անցնող մայրցամաքային ավտոխճուղին կարելի էր նախագծել ավելի լավ տրասսայով, և այն զգալիորեն էժան կլիներ:

Բաքվի կոնգրեսի շրջանակներում հրավիրվեց տիեզերքում հարաբերականության տեսության հարցերին նվիրված առաջին միջազգային սիմպոզիումը: Դրա կազմակերպիչներից մեկը՝ Մոսկվայի համալսարանի պրոֆեսոր Վ. Բրագինսկին, լրագրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ նշեց, որ այժմ արդեն անհնար է հեռավոր տիեզերական թռիչքները հաշվարկել առանց նկատի առնելու Էյնշտեյնի տեսությունից բխող ուղղումները: Նա նշեց նաև երկրի արբանյակների միջոցով գրավիտացիոն ալիքների հայտնագործման նախագծերի մասին: Դրանցից մեկի համաձայն մեծ ճշտությամբ պետք է չափվի երկու արբանյակների միջև եղած հեռավորությունը, և մշտապես գրանցվեն այդ հեռավորության ամենաաննշան փոփոխությունները՝ մեր գալակտիկայի կենտրոնից եկող գրավիտացիոն ալիքների ազդեցությամբ: Կոնգրեսի վերջին օրը՝ հոկտեմբերի 13-ին, կայացավ II միջազգային սիմպոզիումը արտաերկրային քաղաքակրթությունների վերաբերյալ: ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Վ. Ս. Տրոիցկին և ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների դոկտոր Ն. Ս. Կարդաշովը ներկաներին պատմեցին մեր երկրում արտաերկրային քաղաքակրթություններից սպասվող ազդանշանների հայտնագործման ուղղությամբ տարվող աշխատանքների մասին: Այդ նպատակով Սովետական Միությունում ստեղծվել են ընդունման չորս կայան՝ Ղարադաղում (Ղրիմ), Ուսուրիյսկում, Տուլոմա (Մուրմանսկի մարզ) և Պուստին (Գորկու մարզ) բնակավայրերի մոտ. 1969 թվականից այդ կայաններում անց են կացվել դիտումներ 50, 30, 16, 8, 3 սմ երկարության ռադիոալիքների գրանցումներով: 80 օրվա ընթացքում գրանցված 4500 շեղումներից 250-ը համընկել են երկու, իսկ 130-ը՝ երեք կայաններում. Վ. Ս. Տրոիցկին այդ բացատրում է Երկրի իոնամագնիտոսֆերայում տեղի ունեցող երևույթներով:

Առայժմ ո՛չ ամերիկյան և ոչ էլ սովետական գիտնականներին չի հաջողվել հայտնաբերել արտաերկրային քաղաքակրթություններից առաքված որևէ ազդանշան:

ՄԱՖ-ի հաջորդ՝ XXV կոնգրեսի թեման կլինի Տիեզերակայաններ, դրանց գործունեությունը ներկայում և ապագայում: Նոր կոնգրեսի անցկացման համար հայտեր են ներկայացրել Հոլանդիան, Իտալիան և ԳՖՀ-ն:

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## «ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ» ՁԵՌՆԱՐԿԸ ՀԱՅԵՐԵՆ

*«Հայաստան» հրատարակչությունը թարգմանաբար (ռուսերեն երկրորդ, լրացված հրատարակությունից) լույս է ընծայել* Կուսակցական շինարարություն[1] *ուսումնական ձեռնարկը։*

*Գրախոսվող աշխատությունը քաղաքական գրականության մեջ հայերեն հրատարակված առաջին ծավալուն գիրքն է՝ նվիրված մի կարևորագույն ու բարդ բնագավառի, ինչպիսին կուսշինարարությունն է։ Այն ուշագրավ երևույթ է, քանի որ այնտեղ պատշաճ խորությամբ և նյութի խելացի ընտրությամբ հետևողականորեն շարադրված է կուսակցական շինարարության կուրսը։ Նման ձեռնարկի հայերեն հրատարակման անհրաժեշտությունն ակներև է։*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կուսակցական ղեկավար կադրերին, կոմունիստների լայն մասսաներին սովորեցնում է մշտապես տիրապետել և խորությամբ ուսումնասիրել կուսակցական շինարարության լենինյան հիմունքները, նրա դրույթներն ստեղծագործաբար կիրառել ամենօրյա պրակտիկ աշխատանքում։ Վ. Ի. Լենինը նշում էր. «Միմիայն նա է արժանի կուսակցության անդամի և բանվորական կուսակցություն կառուցողի անվան, ով ուշի ուշով ուսումնասիրում, խորհում և ինքնուրույն կերպով լուծում է իր կուսակցության հարցերն ու բախտը» (Երկեր, հ. 19, էջ 180—181)։*

*Ի՞նչ է իրենից ներկայացնում կուսակցական շինարարություն առարկան, որի ուսումնասիրությունն այնպես կարևոր է այդ բնագավառի մեր գործիչների համար։ Դրա գիտական սահմանումը տրված է գրախոսվող գրքի ներածությունում. «Կուսակցական շինարարությունը գիտություն է կոմունիստական կուսակցության զարգացման օրինաչափությունների, կառուցման սկզբունքների, կազմակերպման ձևերի ու նրա ներքին կյանքի կանոնների մասին. մասսաների շրջանում տարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքի, տնտեսական ու կուլտուրական շինարարության, պետական և աշխատավորների հասարակական կազմակերպությունների ղեկավարման ձևերի ու մեթոդների մասին» (էջ 4)։ Կուսշինարարությունն անխզելիորեն կապված է ՍՄԿԿ պատմության հետ։ Նրա հիմքը կոմունիստական կուսակցության անցյալ և ժամանակակից փորձն է, միջազգային կոմունիստական շարժման փորձը։*

*Գրքում շարադրված են նաև կուսակցական շինարարության՝ որպես գիտական և ուսումնական դիսցիպլինի գլխավոր խնդիրները։ Հեղինակներին հաջողվել է ցույց տալ կուսակցական շինարարության տեղն ու դերը հասարակական գիտությունների սիստեմում։*

*Կուսակցական շինարարության տեսության ու պրակտիկայի հարցերը մեծ տեղ գրավեցին ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում և փաստաթղթերում։ Համագումարը խոշոր ավանդ մուծեց կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի զարգացման գործում, այն հարստացրեց նոր եզրակացություններով և դրույթներով։ Համագումարի հաշվետու զեկուցման մեջ, նրա փաստաթղթերում խոր ու բազմակողմանի լուսաբանված են կուսշինարարության առավել կարևոր և արդիական պրոբլեմները, որոնք բխում են կուսակցության գործունեության ժամանակակից պայմաններից։ Ձևակերպելով կուսակցության առաջիկա գործունեության հիմնական ուղղությունները՝ Լ. Ի. Բրեժնևը համագումարում արտասանած եզրափակիչ ճառում ասաց. «Կու-* սակցության շինարարության բնագավառում *դա հասարակության կուսակցական ղեկավարման մեթոդները կատարելագործելու, կուսակցական կյանքի լենինյան նորմերը խստիվ կիրառելու, մեր կուսակցության շարքերը է՛լ ավելի համախմբելու գիծն է. դա բանվոր դասակարգի, ամբողջ սովետական ժողովրդի հետ կուսակցության կապերն ըստ ամենայնի ամրապնդելու գիծն է» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 416)։*

*Գրախոսվող մենագրության մեջ կուսշինարարության գիտության բոլոր կատեգորիաները լուսաբանվում են դրանց պատմական զարգացման պրոցեսում։ Գիրքը շոշափում է կուսշինարարության առարկայի այնպիսի կարևոր թեմաներ, ինչպես՝ ՍՄԿԿ-ն սովետական հասարակության ղեկավարող և ուղղություն տվող ուժն է. ՍՄԿԿ անդամությունը, դեմոկրատական ցենտրալիզմը, ներկուսակցական հարաբերությունները. կուսակցության ղեկավար օրգանների և սկզբնական կազմակերպությունների դերը. կուսկազմակերպությունների և քաղաքական օրգանների աշխատանքը սովետական բանակում և ռազմածովային նավատորմում. կադրերի ընտրությունը և կատարման ստուգումը. կուսակցության գաղափարական աշխատանքը. տնտեսական շինարարության և աշխատավորների մասսայական կազմակերպությունների կուսակցական ղեկավարումը. կուսակցական տնտեսությունը և գործավարումը կուսկոմիտեներում և սկզբնական կուսկազմակերպություններում։ Ընդ որում, գրքի հեղինակները տեսական դրույթներն ամրապնդում են հմտորեն հավաքած, ամփոփած բազմահարուստ փաստական նյութերով։*

*Աշխատությունում նշանակալից տեղ է հատկացված կոմունիստական կուսակցության՝ որպես սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժի մասին մարքս-լենինյան ուսմունքի հիմունքներին։ Հանգամանորեն շարադրված են գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ելակետային դրույթները պրոլետարական կուսակցության կազմակերպման և գործունեության վերաբերյալ, համոզիչ փաստերով ցույց է տրված Վ. Ի. Լենինի պատմական ծառայությունը նոր տիպի կուսակցության մասին ուսմունքի մշակման և կենսագործման ասպարեզում։ Հեղինակային կոլեկտիվը հատկապես ընդգծում է, որ մարքս-լենինյան կուսակցությունների դերի հարցը վերջին տարիներին դրվում է բացառիկ սրությամբ, այն դարձել է սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև մղվող պայքարի հանգուցակետը։ Դրա շուրջ վիճում են մարքսիստ-լենինյանների և ռևիզիոնիզմի ներկայացուցիչները։ Մեր դասակարգային թշնամիներն իրենց թունոտ նետերը, առաջին հերթին, ուղղում են մարքս-լենինյան կուսակցությունների ղեկավար դերի դեմ, հակակոմունիստական պրոպագանդան լայնորեն օգտագործում է նաև մարքսիզմ-լենինիզմին խորթ՝ չինական կոմունիստական կուսակցության մաոիստական ղեկավարության գաղափարա-քաղաքական պլատֆորմը։*

*Կոմունիզմի հակառակորդները ձգտում են կուսակցությունը շեղել կոմունիզմի և սոցիալիզմի կառուցման արմատական պրոբլեմների լուծումից, ժողովրդական մասսաների կյանքից և ստեղծագործ աշխատանքից։ Սակայն. ինչպես նշում են ձեռնարկի հեղինակները, ՍՄԿԿ պատմական փորձը, եղբայրական կոմունիստական և բանվորական կուսակցությունների փորձը սոցիալիզմի երկրներում համոզիչ հաստատում են կուսակցության ղեկավար դերի մասին լենինյան ուսմունքի ճշմարտացիությունը և պարզորոշ ցույց տալիս, որ միայն մարքս-լենինյան կուսակցությունն է ի վիճակի բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին հասցնել սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակին։*

*Աշխատության II—VII գլուխները նվիրված են կուսակցության կազմակերպական կառուցվածքին, նրա ներքին կյանքին։*

*Քննարկելով ՍՄԿԿ անդամության հարցը, կուսակցության կազմի, ծրագրի և կանոնադրության նշանակությունը՝ հեղինակային կոլեկտիվը հանգամանորեն անդրադառնում է կոմկուսի զարգացման կարևոր օրինաչափությանը, ցույց տալիս, որ մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ անչափ ընդլայնվել է ՍՄԿԿ սոցիալական բազան. կուսակցությունը ո՛չ միայն դարձել է բանվոր դասակարգի, այլև կոմունիզմ կառուցող ողջ ժողովրդի ավանգարդը։ Հեղինակներն իրավացիորեն նշում են, որ կուսակցությունը* եղել և մնում է բանվոր դասակարգի իդեալների արտահայտիչը։ *Հետևողականորեն պաշտպանելով ՍՄԿԿ անդամության լենինյան սկզբունքները՝ կուսակցությունն իր շարքերը լրացնում է բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և սովետական մտավորականության լավագույն ներկայացուցիչներով, միաժամանակ առաջնակարգ նշանակություն տալիս կուսակցության կազմում բանվորների առաջատար դերի պահպանմանը։ ՍՄԿԿ անդամությանը նվիրված գլխում զետեղված աղյուսակները և դիագրամները հարուստ փաստական նյութ են պարունակում ՍՄԿԿ թվական ու սոցիալական կազմի, կոմու-*

---

1 *Կուսակցական շինարարություն* ուսումնական ձեռնարկ, «Հայաստան» հրատ., Երևան, 1973, 608 էջ: Հեղինակային կոլեկտիվ՝ Ն. Ա. Պետրովիչև (ղեկավար), Ն. Ա. Լոմակին (ղեկավարի տեղակալ), Ա. Ս. Կրավչենկո, Ն. Ֆ. Կուզմին, Ֆ. Ֆ. Պետրենկո, Պ. Վ. Սվեշնիկով, Ա. Ա. Սոլովյով, Գ. Ի. Շիտարյով: Թարգմանիչ՝ Ս. Վ. ՍՏԵՓԱՆՅԱՆ:

նիստների՝ ըստ կուսակցական ստաժի և կրթության բաշխման, կուսակցության ազգային կազմի, կանանց թվի վերաբերյալ և այլն:

Լուսաբանելով դեմոկրատական ցենտրալիզմի և ներկուսակցական հարաբերությունների հարցը՝ աշխատության հեղինակները ցույց են տալիս, որ դեմոկրատական ցենտրալիզմը կուսակցության կազմակերպական կառուցվածքի ղեկավար սկզբունքն է, որ այն կուսակցության գործունեության բոլոր փուլերում հանդես է եկել անբաժան, միասնաբար: Այստեղ բացահայտվում են դեմոկրատական ցենտրալիզմի հիմնական նորմերը— կուսակցական օրգանների ընտրովիության, հաշվետվության, ինֆորմացիայի, հրապարակայնության, կուսակցական ղեկավարման կոլեկտիվության, քննադատության և ինքնաքննադատության, կուսակցական կարգապահության կարևոր նշանակությունը ներկուսակցական կյանքի համար:

Ներկուսակցական դեմոկրատիայի հետևողական կիրառման շնորհիվ կանոնավոր գումարվում են ՍՄԿԿ Կենտկոմի պլենումները, քաղբյուրոյի և քարտուղարության նիստերը, ուր իշխում է գործարար, սկզբունքային մթնոլորտ, ստեղծագործական մոտեցում կուսակցության արտաքին ու ներքին քաղաքականության արմատական հարցերի քննարկման ընթացքում:

Գրքում շեշտվում է, որ ներկա պայմաններում խորացել, հարստացել է կուսակցական կարգապահություն հասկացության բովանդակությունը: Այժմ շեշտը դրվում է ՍՄԿԿ անդամների գաղափարական կոփվածության, ակտիվության ու նախաձեռնության զարգացման վրա: Կուսակցությունը պայքարում է պասսիվության, անտարբերության, ապոլիտիկության դրսևորումների դեմ: Յուրաքանչյուր կոմունիստ պետք է լինի գիտակից քաղաքական մարտիկ, միշտ և ամենուր հպարտությամբ կրի լենինյան կուսակցության անդամի բարձր կոչումը: Դա հավասարապես վերաբերում է ինչպես առանձին կոմունիստների, այնպես էլ կուսկազմակերպություններին: Ամենևին անուշադրության չպետք է մատնել այն կուսանդամների հարցը, որոնք չունեն քաղաքական մարտիկի հատկություններ, անցնում են դժվարությունների կողքով, արտահայտում հետամնաց տրամադրություններ: Կուսակցությունը գտնում է, որ կարգապահության ամրապնդման հիմնական մեթոդներն են՝ համոզելու և պարտադրելու զուգակցումը, վստահությունն ու սկզբունքային պահանջկոտությունը, հոգատարությունը կմունիստների նկատմամբ և անհաշտ պայքարը լիբերալիզմի, կուսակցական-պետական կարգապահությունը խախտողների դեմ:

Գրքում հատուկ ուշադրություն է նվիրված սկզբնական կուսկազմակերպությունների դերին, կուսակցության կազմակերպական ու գաղափարական աշխատանքում նրանց խնդիրներին ու նպատակներին: Հեղինակները իրավամբ գտնում են, որ ի վերջո սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությամբ, մասսաների շրջանում նրանց ծավալած կազմակերպական ու քաղաքական հմուտ ու բանիմաց աշխատանքով է պայմանավորված մեր առաջընթացը , կոմունիստական շինարարության, ՍՄԿԿ XXIV համագումարի նախատեսած վիթխարի պլանների կենսագործումը: Նրանք հատկապես անդրադարձել են սկզբնական կուսկազմակերպությունների այնպիսի կարևոր պարտականությանը, ինչպիսին է ադմինիստրացիայի նկատմամբ վերահսկողության իրավունքը:

Կադրերի ընտրության, կատարման ստուգման խնդիրների առնչությամբ հեղինակները մեծ ուշադրություն են նվիրել ՍՄԿԿ Կենտկոմի կադրային քաղաքականության կատարելագործման հարցերին: Մեր կուսակցությունն այժմ մեծ հնարավորություն ունի կուսակցական, պետական, տնտեսական, կուլտուր-դաստիարակչական և հասարակական աշխատանքի բոլոր տեղամասերը վստահելու քաղաքականապես հասուն, ազնիվ ու շիտակ, իրենց մասնագիտությանը գերազանց տիրապետող կադրերին: Ուստի և կուսակցական ղեկավար աշխատողի մեթոդը ո՛չ թե վարչարարությունն է, ո՛չ թե միայն հրամաններ արձակելն ու կարգադրություններ անելը, այլև բացատրական աշխատանքով, համոզման մեթոդով գործը ինչպես հարկն է կազմակերպելը:

Կուսակցությունը սովորեցնում է կադրերի ընտրության ժամանակ հաշվի առնել նրանց գաղափարական հասունության աստիճանը, անձնական հատկանիշները և, առաջին հերթին՝ պարտաճանաչությունը, ինքնավերահսկողությունը: Ղեկավարի գործունեության անհրաժեշտ պայմանը խոսքի ու գործի անխզելիությունն է, խոստումների ու պարտավորությունների ժամանակին կատարումը: Ղեկավար կադրերը, գործելով կոմունիստական բարոյականության նորմերի շրջանակներում, այսուհետև ևս պետք է պայքարեն դեռևս նկատվող այնպիսի բացասական երևույթների դեմ, ինչպիսիք են՝ պորտաբուծությունը, կաշառակերությունը, շահամոլությունը, զրպարտությունը և այլն:

ՍՄԿԿ գաղափարական գործունեությանը նվիրված է հատուկ գլուխ, որտեղ բացահայտվում են կուսակցության գաղափարական աշխատանքի գլխավոր ուղղությունները: Հեղինակները ցույց են տալիս կուսակցության տեսական աշխատանքի դերի և մասշտաբների աճը ժամանակակից պայմաններում, նշում այն մեծ ա-



վանդը, որ վերջին տարիներս ՍՄԿԿ-ն ներդրել է մարքսիզմ-լենինիզմի գանձարանը:

Ղեկավարվելով դիալեկտիկական մեթոդով՝ հեղինակները մեր երկրի կուսշինարարության վիթխարի փորձը ներկայացնում են պատմական զարգացման պրոցեսում: Անցյալի փորձը վերհանելու հետ մեկտեղ նրանք սևեռուն ուշադրություն են նվիրում կուսակցության, նրա Կենտկոմի, տեղական և սկզբնական կուսկազմակերպությունների ու նրանց ղեկավար օրգանների ժամանակակից փորձի վերլուծմանը:

Ուսումնական ձեռնարկն ունի տեսական ու գործնական մեծ նշանակություն: Այն կօգնի կուսակցական աշխատողներին, պրոպագանդիստներին, հասարակական գիտությունների դասախոսներին, մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանների և քաղուսցանցի ունկնդիրներին՝ սիստեմատիկ ու խորությամբ ուսումնասիրելու կուսշինարարության կարևորագույն հարցերը:

Երկու խոսք հայերեն հրատարակության մասին: Կցանկանայինք գրախոսականում նշել մեր նկատած և թարգմանչի ու խմբագրի ուշադրությունից վրիպած թարգմանական ու խմբագրական առանձին անհարթություններ, «բառացիությանը» տուրք տալու օրինակներ: Այսպես, «Բայց որպեսզի կատարել բանվորական շարժումը սոցիալիզմի հետ միացնելու խնդիրը...» (էջ 24): «Երկրում գնում էր դասակարգային սուր պայքար...» (էջ 107), «Կուսակցության մեջ տերերը կոմունիստներն են...» (էջ 131—132), «Թարմ տեսակետը իրերի վերաբերյալ...» (էջ 354), «Երկիրը կատարում էր կոմունիզմի ծավալուն շինարարություն...» (էջ 498), «Գնում է գիտա-տեխնիկական հեղափոխության բուռն զարգացման պրոցես...» (էջ 602) և այլն:

Վերջում չենք կարող մեր անհանգստությունը չարտահայտել գրքի անփույթ, անճաշակ, ցածրորակ պոլիգրաֆիական ձևավորման համար: Բավական է իրար կողքի դնել գրքի ռուսերենն ու հայերենը, և աչք են ծակում վերջինիս ցածրորակ թուղթն ու անփույթ ձևավորումը, անհոգի և անպատասխանատու վերաբերմունքը նման կարևոր քաղաքական գրքի հրատարակման նկատմամբ:

Ի դեպ, ձեռագիրը տպարանում է գտնվել գրեթե 7 ամսից ավելի, որի ընթացքում լույս է տեսել գրախոսվող ձեռնարկի ռուսերեն երրորդ հրատարակությունը: Հուսով ենք նոր հրատարակության թարգմանությունը տեսնել բարձրորակ պոլիգրաֆիական ձևավորմամբ, հնարավորին չափ մաքուր հայերենով:

Վ. Հ. ՂԱԶԱՆՋՅԱՆ
ՍՄԿԿ կից ՄԼԻ հայկական ֆիլիալի
կուսշինարարության սեկտորի վարիչ,
. դոցենտ

## ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

Ժամանակին և ըստ արժանվույն գնահատելով այս հույժ կարևոր ուսումնական ձեռնարկը, իմաստավորելով դրա նշանակությունը հայ ընթերցողների, մասնավորապես, կուսակցական գործիչների համար, գրախոսության հեղինակը թռուցիկ կերպով անդրադարձել է և թարգմանության լեզվին, նշելով մի քանի աղավաղումներ, սխալներ: Սակայն այդ հպանցիկ դիտողությունները լիովին չեն արտացոլում թարգմանված գրքի լեզվական կուլտուրայի իրական պատկերը: Խմբագրության ուսումնասիրության արդյունքները շատ հեռու են գոհացուցիչ լինելուց: Թարգմանության աղքատիկ լեզուն, դարձվածքների խճողվածությունը, ավելորդաբանությունները, անհաջող, սխալ ընտրված բառերն ամենուրեք լեզվամտածողության անբավարար մակարդակի վկայությունն են:

Ոմանք թերևս մտածեն. արժե՞, արդյոք, չգտնված բառի, խեղված դարձվածքի, համաձայնության, շարադասության խախտման համար այսքան անհանգստանալ, կուսակցական մամուլում էջեր հատկացնել դրան: Համոզված ենք՝ արժե, քանի որ խաթարված լեզվով հրատարակված գիրքը, տպագիր խոսքը, այդպիսով, կորցնում են իրենց չափանիշային հատկությունը (մեր հայացքները թարգմանական գրականության վերաբերյալ տե՛ս «Լենինյան ուղիով», 1973, № 9, էջ 17—30): Մեր միտքն ապացուցող օրինակները

## СОДЕРЖАНИЕ




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033 Ереван-33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 03803 Պատվեր 2105 Թղթի չափսը 70×108¹/₁₆: Տիրաժ 14.200 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 8/I-1974 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խաչակյան փող. № 28:





### ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի այցը Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն: *1973 թվականի մայիսի 18—22: Ճառեր ու փաստաթղթեր: Եր., «Հայաստան» հրատ., 1973, 98 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված են ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության անդամ՝ Լ. Ի. Բրեժնևի՝ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցի փաստաթղթերը, Լ. Ի. Բրեժնևի և ԳՖՀ կանցլեր Վ. Բրանդտի ճառերը, երկկողմ համաձայնագրերի տեքստերը և այլ նյութեր:*

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի այցը Ամերիկայի Միացյալ Նահանգներ: *1973 թվականի հունիսի 18—25: Ճառեր և փաստաթղթեր: Եր., «Հայաստան» հրատ., 1973, 162 էջ:*

*Ժողովածուում զետեղված են ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության անդամ Լ. Ի. Բրեժնևի Ամերիկայի Միացյալ Նահանգներ կատարած այցի մասին նյութերը, Լ. Ի. Բրեժնևի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Նիքսոնի ճառերը, այցի ժամանակ ստորագրված երկկողմ համաձայնագրերի տեքստերը և այլ նյութեր:*

ԲՐԵԺՆԵՎ Լ. Ի.— Կուսակցական շինարարության ակտուալ պրոբլեմների մասին *(ժողովածու): Եր., «Հայաստան» հրատ., 1973, 612 էջ:*

*Այստեղ ամբողջությամբ կամ մասնակիորեն զետեղված են ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար՝ Լ. Ի. Բրեժնևի 1964—1972 թվականների ճառերը, հոդվածները, ելույթները, որոնք ասույթներ են պարունակում կուսակցական շինարարության արմատական հարցերի վերաբերյալ:*

Տնտեսագիտական գիտելիքների հիմունքներ: *Բանվորների համար: Դասագիրք: Եր., «Հայաստան» հրատ., 1973, 406 էջ:*

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ. Մ.— Սոցիալ-տնտեսական փոփոխությունները Հայկական ՍՍՀ գյուղում: *Եր., «Հայաստան» հրատ., 1973, 304 էջ (ռուսերեն):*

ԽՍԱՅԱՆ Ա. Ա. *(պրոֆ.)*— Միջազգային իրավունքի դասընթաց: *Երկրորդ մաս, Եր. համալս. հրատ., 1973, 408 էջ:*

*Դասընթացի երկրորդ մասում հեղինակը շարադրել և վերլուծել է միջազգային հարաբերությունների առավել կարևոր օբյեկտների իրավական կարգավորման սկզբունքներն ու նորմերը, ինչպես նաև միջազգային իրավունքի առանձին բնագավառների բովանդակությունը կազմող իրավանորմերը:*

ՋՈՒՐԱԲՅԱՆ Ա. Ա.— Նորը կոլտնտեսության օրինակելի կանոնադրության մեջ: *Եր., «Հայաստան» հրատ., 1973, 50 էջ:*

ԼԵՄԵՇԵՎ Մ. ՅԱ., ՊԱՆՉԵՆԿՈ Ա. Ի.— Ժողովրդական տնտեսության պլանավորման կոմպլեքսային ծրագրերը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1973, 167 էջ:*

ԳՐԱՆԲԵՐԳ Ա. Գ.— Ժողովրդական տնտեսության համամասնությունների տերիտորիալ օպտիմալացումը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1973, 248 էջ:*

ԽՐՈՒՑԿԻ Ե. Ա.— Տնտեսական կապերի օպտիմալացումը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1973, 95 էջ:*

ՊՈԼԵՇՉՈՒԿ Ն. Գ.— Էներգազինվածությունը և աշխատանքի արտադրողականությունը: *2-րդ հրատարակություն: Մ.,* «Экономика» *հրատ., 1973, 175 էջ:*

ՇՉՈՒԿԻՆ Վ. Ն., ԱՐԽԻՊԵՆԿՈՎ Ա. Մ.— Ձեռնարկությունների արտադրության կառուցվածքի տնտեսա-մաթեմատիկական մոդելը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1973, 151 էջ:*

ԴԵՄԻԴՈՎ Ս. Ֆ., ՎԱՍԻԼԵՎ Պ. Ի.— Ժողովրդական տնտեսության պլանավորումը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1973, 231 էջ:*

ԲՈՒԼՈՉՆԻԿՈՎԱ Լ. Ա.— Տեխնիկական պրոգրեսը և բանվորական ուժի օգտագործումը գյուղատնտեսության մեջ: *Մ.,* «Экономика» *հրատ., 1973, 135 էջ:*

Գինը՝ 25 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## СЭУ-Ն ՏԱԼԻՍ Է ՋՈՒՐ

Երկրի տափաստանային, կիսաանապատային և անապատային շրջաններին էլեկտրաէներգիա մատակարարելու նպատակով սովետական ինժեներները վերջերս պատրաստել են СЭУ արևային էներգետիկ սարքը։ Այն կիրառվում է ջրհորների, ինչպես նաև արոտավայրերի ջրելատեղերում՝ պոմպային ագրեգատները շարժման մեջ դնելու համար։

Սարքը լրիվ ավտոմատացված է և մշտական սպասարկման կարիք չունի։ Դրա արտադրողականությունը մեծ է. 15 մ խորությամբ հորից օրական ստացվում է 30 մ$^3$ ջուր, որը բավական է 5000 ոչխարին մեկ օրում ջրով ապահովելու համար։

## ԱՊԱՀՈՎԻՉ ԲՌՆԱԿ

Աշխատանքի ընթացքում НВК սրբագրական հաստոցների վրա դժբախտ պատահարները կանխելու նպատակով Նովոմիրգորոդի տպարանի գիտատեխնիկական ընկերության անդամները պատրաստել են հատուկ ապահովիչ բռնակ։ Այդ հարմարանքը կառուցվածքով պարզ է, նյութական մեծ ծախսեր չի պահանջում։ Տպագրական կաղապարի վրա կողմնակի առարկաներ ընկնելու կամ բանվորի ձեռքը դիպչելու դեպքում, բռնակը բարձրանում է, ճնշում ձգաձողերը, սրանք էլ իրենց հերթին սեղմում են ունկերը (այդ պահին առանցքը շրջվում է)։ Երկու կանգնակները միացնում են «կանգառ» կոճակը և սայլակիկը վայրկենապես կանգնում է։

## ՊՆԵՎՄԱՏԻԿ «ՄԿԱՆՆԵՐ»

Ոտքի պրոտեզների նոր, ճապոնական կոնստրուկցիայում կիրառվել են «մկաններ» սինթետիկ կաուչուկից, որոնք գործում են պնևմատիկ շարժիչներով։ Այդ պրոտեզների օգնությամբ հաշմանդամն առաջին անգամ կարող է քայլել ոչ միայն հարթ տեղով, այլև բարձրանալ աստիճաններով։

## ԾԽՈՂՆԵՐԸ ՄԵՂԱՎՈՐ ԵՆ ՆԱԵՎ...

ոչ միայն իրենց, այլև չծխողներին վնասելու համար։ Լոնդոնի հիվանդանոցներից մեկի գիտնականների ուսումնասիրություններից պարզվել է, որ ժամ ու կես ծխողների հետ միևնույն սենյակում մնալուց հետո, չծխողների արյան մեջ եղել է այնքան ածխաթթվի օքսիդ, որքան մի լրիվ գլանակ ծխողի։ Ըստ գիտնականների, ծխողները շատ ավելի վնասում են փոքրահասակներին. Նրանց օրգանիզմը դեռևս զուրկ է պաշտպանիչ միջոցներից, ուստի և ավելի շատ է ենթակա ծխախոտի ծխի վնասակար նյութերի ազդեցությանը։

## «ՀԵԼԻՈՒՄ-ՆԵՈՆ»

Լազերի այս տեսակը չի կտրում երկաթաշերտեր, չի օգտագործվում վիրահատության մեջ։ Բայց այն անփոխարինելի է մեքենաշինության, շինարարության մեջ. օգնում է կամուրջներ, ավտոճանապարհներ կառուցելիս, թունելներ, խողովակաշարեր անցկացնելիս կատարելու ճշգրիտ չափանշումներ։ Դրանց օգնությամբ կարելի է կարգավորել ավտոմոբիլային անիվները, ստուգել՝ մեքենաների մոնտաժման ճշգրտությունը, խոշոր վրիզմաների և ոսպնյակների որակը։ Այն կարող է տեսականորեն փոստը, կարճ տարածության վրա հաղորդել վիթխարի ինֆորմացիա. օգտագործվում է և սպեկտրոսկոպիայում, գոլոգրաֆիայում, հաշվողական տեխնիկայում։

Այդ ամենը կատարում է ձեռքում տեղավորվող փոքրիկ ամերիկյան սարքը։

## ՆԻԿԵԼԸ ՎՏԱՆԳԱՎՈՐ Է

Ֆիլադելֆիայի բժշկական կենտրոնի հետազոտություններից պարզվել է, որ մարդկային հիվանդությունների առիթով, իրենց դիմողների առնվազն հինգ տոկոսի հիվանդության պատճառը շփումն է նիկել պարունակող առարկաների հետ։ Այդ մետաղը ԱՄՆ-ում լայնորեն օգտագործվել է ձեռքի ժամացույցների, ասեղների, վարսակալների, ինչպես և դրամների պատրաստման համար։

Ֆիլադելֆիայի տոքսիկոլոգները գտնում են, որ կենցաղառարկաների պատրաստման ոլորտից լրիվ պետք է բացառել նիկելի գործածությունը։